# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՇԱՐԺԱԿԱՆ ՏՈՒՆ ՊԼԱՍՏՄԱՍՍԱՅԻՑ

*ՌՍՖՍՌ Գյուղատնտեսության մինիստրության «Росгипросельхозстрой» ինստիտուտի ճարտարապետներն ու կոնստրուկտորները վերջացրել են պլաստմասսայից պատրաստվող շարժական բնակելի տան նախագծի մշակումը։*

*Նրա պատերն ու տանիքը հավաքվում են պլաստմասսայի դետալներից, արտաքինից ծեփվում ապակե տեքստոլիտով, իսկ ներսից՝ պենոպոլիստիրոլով։*

*Շարժական տունը նման է մարդատար վագոնի։ Նրա երկարությունը ինը մետր է, բարձրությունը՝ երեք։*

*Տունը բաղկացած է մի քանի սենյակից, որտեղ տեղավորված անաղմուկ օդափոխիչների օգնությամբ մշտապես պահպանվում է օդի կայուն ջերմաստիճան։ Տունը նախատեսված է ութ մարդու համար և հարմար է հեռավոր վայրերի անասնապահների, երկրաբանների, անտառանյութ մթերողների բնակության համար։ Հզոր ուղղաթիռների օգնությամբ տունը կարելի է փոխադրել հեռավոր և դժվարամատչելի տեղեր։*

## ՊԱՇՏՊԱՆԱԿԱՆ ԱԿՆՈՑՆԵՐ

*Մոսկվայի քաղաքային դեղատնային վարչության աշխատակիցները գազազոդողների համար հնարել են նոր պաշտպանական ակնոցներ։*

*Այդ ակնոցներն ունեն երկու ապակի. ներքին՝ մետաղյա արտացոլիչ ծածկ ունեցող լույսը ֆիլտրող ապակի, որն աչքերը պաշտպանում է շլացուցիչ լույսից և արտաքին՝ անգույն ապակի, որն ակնոցները պաշտպանում է մետաղի կտորներից և լրացուցիչ կերպով կլանում է վնասակար ուլտրամանիշակագույն ճառագայթները։ Ապակիների միջև դրված օղակաձև ներդիրը ստեղծում է օդային շերտ, որն աչքերը պաշտպանում է ջերմությունից։ Լույսը ֆիլտրող ապակին կարող է ունենալ կորդավորիչ՝ թույլ տեսողություն ունեցող գազազոդողների աշխատանքը հեշտացնելու համար։*

*Նոր ակնոցներն ունեն նաև այն առավելությունը, որ դրանց վնասված ապակիները կարելի է արագ և հեշտ փոխել։*

## ԱՆՐՈՋՈՂԻ ԲԱՐԻ ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Այն մարդիկ, որոնց վիճակվել է լինել տայգայում, լավ գիտեն, թե որքան դժվար է ազատվել մժեղների և մոծակների խայթոցներից։*

*Անիմաստ կլիներ պատկերացնել տայգայով անցնող մարդուն, առանց մժեղացանցի։ Պարզվում է, որ դա հնարավոր է։ Բավական է ցանել իր վրա անրոզոլի փնսեկտիցիդ, որպեսզի մոծակներն ու մժեղները կզալի հեռավորության վրա մնան։*

*Աէրոզոլների ծառայությունները չափազանց բազմազան են։ Դրանց օգնությամբ կարելի է բնակարանը ազատել ցեցից, ճանճերից, փայտոջիլից և այլ պարազիտներից, պայքարել կոռոզիայի, բորբոսման և օքսիդացման դեմ, մաքրել կոշիկները, հագուստը և այլն։*

*Աէրոզոլները լայնորեն կիրառվում․ են պարֆյումերային և կոսմետիկական արդյունաբերության մեջ։ Դրանք օգտագործվում են մազերը լվանալու ու ներկելու, սափրման, ատամները և մաշկը խնամելու համար։*

*Վերջին ժամանակներս դրանք ավելի լայն կիրառում են ստացել բժշկության մեջ՝ ռևմատիզմը, տարբեր մաշկային հիվանդությունները, ինչպես և ականջի, կոկորդի, քթի հիվանդությունները բուժելիս։*

*Մեր երկրում աէրոզոլների արտադրությունն սկսվել է անցյալ տարվանից․ դրանց ստացման մեթոդները մշակվել են Ռիգայի «Ձինտարս» պարֆյումերա-կոսմետիկական ֆաբրիկայում՝ ավագ ինժեներ Է. Գրիկիտիսի ղեկավարությամբ։*

## ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ՝ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆԸ

*Ռումինիայի Գյուղատնտեսության գիտահետազոտական ինստիտուտում ստացվել են ցորենի և եգիպտացորենի նոր տեսակներ։*

*Դրանց բերքատվությունը 10—30%-ով բարձր է շրջանացված ստանդարտ սորտերի բերքատվությունից։ Նոր սորտերը լավ են յուրացնում սննդարար նյութերը, լավ են դիմանում երաշտին, սառնամանիքին,*

(Շարունակությունը շապկի Երրորդ էջում)

---

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 6
ՀՈՒՆԻՍ
1962 Թ.



ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIX
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ








# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

*ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*

ՀԿՊ Կենտկոմի երկրորդ քարտուղար

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարն իր ընդունած որոշումների վեհությամբ առանձնահատուկ տեղ է գրավում մեր պարտիայի պատմության, ամբողջ համաշխարհային կոմունիստական և բանվորական շարժման պատմության մեջ։*

*Համագումարն ընդունեց պարտիայի նոր Ծրագիր, որը մարքսիստական-լենինյան մտքի մեծագույն նվաճումն է, ՍՄԿՊ-ի մեծ ու բազմակողմանի տեսական աշխատանքի վառ վկայությունը։ Նրա խոր գաղափարներն անմար փարոսի նման լուսավորում են մարդկության ուղին դեպի պայծառ ապագա։*

*Ներկայումս, երբ սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել կոմունիզմի ծավալուն կառուցմանը, է՛լ ավելի մեծ նշանակություն է ստանում գաղափարական աշխատանքը, մարքսիզմ-լենինիզմի հիման վրա հասարակության բոլոր անդամների գիտական աշխարհայացքի ձևավորումը։ Պարտիան արդի էտապում գաղափարական աշխատանքում գլխավորը համարում է բոլոր աշխատավորների դաստիարակումը բարձր գաղափարայնության, կոմունիզմի նկատմամբ նվիրվածության, աշխատանքի ու հանրային տնտեսության հանդեպ կոմունիստական վերաբերմունքի ոգով, բուրժուական հայացքների ու բարքերի մնացուկների լիովին հաղթահարումը, անհատի բազմակողմանի և ներդաշնակ զարգացումը, հոգևոր կուլտուրայի իսկական հարստության ստեղծումը։ Պարտիան առանձնահատուկ նշանակություն է տալիս աճող սերնդի դաստիարակությանը։*

*Աշխատավորների, երիտասարդության գաղափարական դաստիարակության, մարքս-լենինյան տեսության պրոպագանդման ու տարածման, սովետական մարդկանց մատերիալիստական աշխարհայացքը ձևավորելու գործում մեծ դեր է վերապահված* հասարակական գիտություններին:

*Պարտիայի Ծրագրում տրված է հասարակական գիտությունների դերի և նշանակության խոր բնութագիրը։ Այդ գիտությունները «... կազմում են հասարակության զարգացման ղեկավարման գիտական հիմքը»։ Այդ բնագավառում գլխավորը պարտիայի Ծրագիրը համարում է «... կոմունիստական շինարարության պրակտիկայի ուսումնասիրությունը և տեսական ընդհանրացումը,*

սոցիալիզմի տեսական, քաղաքական ու կուլտուրական զարգացման և նրա՝ կոմունիզմի վերաճելու հիմնական օրինաչափությունների հետազոտությունը, կոմունիստական դաստիարակության պրոբլեմների մշակումը»։



Ներկայումս բարձրագույն դպրոցների հասարակագիտական ամբիոնների գլխավոր խնդիրը ՍՄԿՊ XXII համագումարի որոշումների և պարտիայի Ծրագրի ուսումնասիրությունն ու պրոպագանդան է։

Ռեսպուբլիկայի բուհերի հասարակագիտական ամբիոնների դասախոսների պարտքն է, սրբազան պարտքը՝ պարտիայի XXII համագումարի որոշումներն ու ՍՄԿՊ Ծրագրի ռևոլյուցիոն ամբողջ բովանդակությունը հասցնել ուսանող երիտասարդությանը, նրան դաստիարակել կոմունիզմի ոգով, այնպես, որ նա խորապես ըմբռնի համաշխարհային պատմության ընթացքն ու հեռանկարները, ճիշտ կողմնորոշվի երկրի ներքին և արտաքին իրադրության մեջ, գիտակցաբար պայքարի կոմունիզմի՝ մարդկության պայծառ ապագայի համար։

Հասարակագիտական ամբիոնների աշխատողները կոչված են ձևավորել ուսանող երիտասարդության մարքսիստական-լենինյան աշխարհայացքը, նրա մեջ ամրապնդել խոր հավատ կոմունիզմի հաղթանակի նկատմամբ, նրան դաստիարակել սոցիալիստական հայրենասիրության, ժողովուրդների բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հումանիզմի ոգով։

Ուսանող երիտասարդության դաստիարակության գործում առաջնակարգ նշանակություն ունի աշխատանքային դաստիարակությունը։ Հարկավոր է յուրաքանչյուր ուսանողի հասցնել այն պարզ ճշմարտությունը, որ ոչ մի հասարակարգ չի կարող գոյություն ունենալ և զարգանալ, եթե նրա անդամներն ակտիվորեն չմասնակցեն հասարակական հանրօգուտ աշխատանքի. առանց աշխատանքի չի կարող լինել ծաղկուն հասարակություն, մարդու բարօրություն, երջանկություն։ Կոմունիզմն ու աշխատանքը անբաժանելի են։ «Ով չի աշխատում՝ նա չի ուտում» մեծ սկզբունքը գործելու է նաև կոմունիզմի օրոք, դառնալու է սրբազան սկզբունք բոլորի համար։ Հասարակության բարօրության համար կատարվող աշխատանքը,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— յուրաքանչյուր մարդու սրբազան պարտականությունն է։

Անհրաժեշտ է, ուրեմն, որ բարձրագույն դպրոցի սաներն արդեն դպրոցներում պատրաստվեն հանրօգուտ գործունեության, սոցիալիստական պետության զարգացման համար անհրաժեշտ արժեքների ստեղծման։ Մինչդեռ բարձրագույն դպրոցից քիչ չեն դուրս գալիս այնպիսիները, որոնք խուսափում են հանրօգուտ աշխատանքից, չեն հարգում աշխատանքը։ Նորմա՞լ է արդյոք. Պետական համալսարան, Մանկավարժական ինստիտուտ ավարտած բազմաթիվ երիտասարդներ հրաժարվում են աշխատանքի գնալ գյուղական շրջանները։ Միայն Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության կոմիտեի ենթակայության բուհերի 1960—1961 ուսումնական տարվա շրջանավարտներից աշխատանքի մեկնելու համար նշանակումներ ստացած 1063 հոգուց աշխատանքի են գնացել 634-ը։

Մենք պայքարում ենք վեհ նպատակի համար։ Մեզ մոտ բոլոր հնարավո-



րությունները կան առաջիկա երկու տասնամյակների ընթացքում իրականություն դարձնել մարդկության դարավոր երազը՝ կառուցել կոմունիստական հասարակարգ։ Սակայն սխալ կլիներ կարծել, թե կոմունիզմի կառուցումը տեղի կունենա առանց դժվարությունների հաղթահարման։ Ոչ, իհարկե. կոմունիստական շինարարության պլանների իրագործումը անհնար է առանց դժվարությունների, որոնց հաղթահարումը, սակայն, անհամեմատ հեշտ է, քան այն դժվարությունները, որոնք մեզ մոտ կային անցյալում։ Այս ամենը պետք է խորապես գիտակցի մեր ուսանող երիտասարդությունը։

Նոր մարդու դաստիարակությունը բարդ և տևական պրոցես է։ Անհրաժեշտ է վճռական պայքար մղել մարդկանց գիտակցության մեջ եղած կապիտալիզմի մնացուկների դեմ։ Լոդրությունը և պորտաբուծությունը, հարբեցողությունը և խուլիգանությունը, ժուլիկությունն ու շահամոլությունը, մեծապետական շովինիզմը և տեղական նացիոնալիզմը, բյուրոկրատիզմն ու քաշքշուկը անհարիր են մեր սովետական սոցիալիստական հասարակարգի համար և նրանց դեմ պետք է վճռական պայքար մղել։ Մեր մարդկանց գիտակցությունը պետք է ազատել կրոնական նախապաշարմունքներից և սնահավատություններից, որոնք խանգարում են նրանց՝ դրսևորելու իրենց ստեղծագործական ուժերը։ Այսպիսով, ուսանող երիտասարդության կոմունիստական դաստիարակության հարցերը պետք է լինեն մեր հասարակագիտական ամբիոնների, մեր բոլոր դասախոսների, բուհական յուրաքանչյուր պարտիական կազմակերպության ուշադրության ու գործունեության կենտրոնում։



Պարտիայի XXII համագումարից հետո որոշ տեղաշարժ կատարվել է բուհերի հասարակագիտական ամբիոնների աշխատանքում։ ՍՄԿՊ նոր Ծրագրին համապատասխան վերանայվել են ուսումնական պլանները։ Բոլոր բուհերում ձեռնամուխ են եղել համագումարի նյութերի ուսումնասիրությանը։ Ուսանող երիտասարդությունը հսկայական հետաքրքրություն է ցուցաբերում XXII համագումարի որոշումների և պարտիայի նոր Ծրագրի նկատմամբ։

Հասարակագիտական ամբիոնների դասախոսների ուժերով անց են կացվում բազմաթիվ միջոցառումներ՝ պարտիայի XXII համագումարի նյութերը, որոշումները, պարտիայի Ծրագիրն ու Կանոնադրությունը ուսանողության սեփականությունը դարձնելու նպատակով։ Հաճախակի են կազմակերպվում դասախոսություններ ու զրույցներ, հարց ու պատասխանի երեկոներ և այլն։ Ուժեղացել է ուսանողության կապն արտադրության հետ։ Որոշ բուհերում կանոնավոր կերպով կազմակերպվում են էքսկուրսիաներ, կուլտուրական միջոցառումներ։ Ավելի հաճախակի են դարձել ուսանողների այցելություններն արվեստի, գրականության, պատմության և կուլտուրայի օջախները։

Սակայն ոչ բոլոր բարձրագույն ուսումնական հաստատություններում է կազմակերպված ՍՄԿՊ XXII համագումարի նյութերի և պարտիայի Ծրագրի խոր ուսումնասիրությունը։ Համագումարի փաստաթղթերի պրոպագանդման գործում շատ են դեկլարատիվությունն ու ընդհանուր կոչերը, ուսումնասիրվող նյութը վատ է զուգակցվում մեր առջև դրված կոնկրետ խնդիրների հետ։ Այդ պատճառով շատ ուսանողներ պարզ պատկերացում չունեն համագումարի առաջադրած խնդիրների մասին։

Բուհերի հասարակագիտական շատ ամբիոններ, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի պատմության և տնտեսագիտության ինստիտուտներն ու փիլիսոփայության սեկտորը դեռ անբավարար են կապված պարտիական կազմակերպությունների կյանքի հետ, ակտիվորեն, ստեղծագործաբար չեն օգնում գաղափարական աշխատանքի կազմակերպմանը։ Որոշ ամբիոններ դեռևս չեն հասել այն բանին, որ ուսանողության մեջ ստեղծեն ջերմ հետաքրքրություն դեպի հասարակական գիտությունները։ Ուսանողների փոքրաթիվ մասն է միայն նյութն ուսումնասիրում սկզբնաղբյուրներով, ակտիվորեն մասնակցում սեմինար պարապմունքներին։

Անհրաժեշտ է ՍՄԿՊ XXII համագումարի որոշումների և պարտիայի Ծրագրի տեսական նոր դրույթների ու հետևությունների ոգով վերակառուցել և կատարելագործել բուհերի ուսումնական ծրագրերը և դասագրքերը։ Առանց դրան չի կարելի բարձրացնել հասարակագիտական առարկաների դասավանդման տեսական և գաղափարական մակարդակը։



Այժմ բուհերում կատարվող գիտահետազոտական աշխատանքների և գիտական կադրերի պատրաստման մասին։ Ռեսպուբլիկայի բուհերի հասարակագիտական ամբիոնների դասախոսների ուժերով վերջին տարիներին ստեղծվել են մի շարք աշխատություններ՝ նվիրված ինչպես ընդհանուր տեսական, այնպես էլ Հայաստանի փիլիսոփայական, տնտեսագիտական մտքի, ռևոլյուցիոն շարժման պատմության հարցերին։ Այդ ուղղությամբ պետք է նշել հատկապես Պետական համալսարանի ամբիոնների աշխատանքը։

Բայց միշտ չէ, որ դասախոսական աշխատանքը զուգակցվում է գիտական արդյունավետ գործունեության հետ։ Կան դասախոսներ, որոնք տարիներ շարունակ գիտական ոչ մի արտադրանք չեն տալիս։ Լուրջ թերություն է այն, որ գիտնականների մի զգալի մասը միակողմանիորեն տարվելով անցյալի հարցերի լուսաբանմամբ, դեռևս լուրջ աշխատություններ չի ստեղծել ժամանակակից ակտուալ պրոբլեմների շուրջ։ Ավելին՝ որոշ բուհերի ամբիոնների թողտվությամբ երբեմն լույս աշխարհ են գալիս իրենցից ոչ մի արժեք չներկայացնող «գիտական աշխատություններ», ոչ բոլոր դեպքերում անհրաժեշտ պահանջկոտություն է դրսևորվում դիսերտացիոն աշխատանքների նկատմամբ։

Գիտական աշխատողները մեր երկրում շրջապատված են պարտիայի և կառավարության հոգատարությամբ։ Այդ հոգատարության շնորհիվ աճել է գիտնականների մի մեծ բանակ, որն ակտիվորեն մասնակցում է կոմունիզմի կառուցմանը և աշխարհը զարմացնում իր գործերով, իր անօրինակ սխրագործություններով։

Գիտության զարգացման նկատմամբ պարտիայի և կառավարության հոգատարության և հսկայական ուշադրության նոր, վառ ապացույց է «Գիտական կադրերի ընտրության և պատրաստման հետագա բարելավման միջոցառումների մասին» ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի վերջերս ընդունած որոշումը։

Սովետական իշխանության տարիներին գիտությունը մեծ զարգացում ստացավ Հայաստանում։ Ներկայումս ռեսպուբլիկայում աշխատում են 2611



գիտնական, այդ թվում՝ գիտությունների 1557 թեկնածու և 175 դոկտոր։

Պետք է, սակայն, խոստովանել, որ գիտական կադրերի ընտրության և պատրաստման մասին ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշման մեջ նշված թերությունները վերաբերում են նաև մեր ռեսպուբլիկային։ Գիտական աշխատողների պատրաստման տեմպերն անբավարար են։ Երիտասարդ գիտական աշխատողներին դանդաղորեն են առաջ քաշում ինքնուրույն աշխատանքի և ղեկավար գիտա-կազմակերպչական պաշտոնների։ Մխիթարական չէ վիճակն ասպիրանտների պատրաստման գործում։ Տարեցտարի թերակատարվում են ասպիրանտուրայի ընդունելության պլանները, ասպիրանտների զգալի մասը ժամկետին չի ավարտում դիսերտացիոն աշխատանքը։ Բավական է ասել, որ վերջին չորս տարում նրանցից ոչ մեկը սահմանված ժամկետին չի պաշտպանել դիսերտացիան։ Գիտական ղեկավարներից շատերը պահանջված ղեկավարություն և հսկողություն չեն իրականացնում ասպիրանտների նկատմամբ։ Ասպիրանտուրայի հարցը չի գտնվում նաև Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության կոմիտեի և բուհերի ղեկավարների ուշադրության կենտրոնում։

Չի կարելի չնշել նաև գիտական կադրերի պատրաստման պլանավորման գործում եղած լուրջ թերությունները։ Դեռ մինչև վերջերս էլ ռեսպուբլիկայում գիտական աշխատողներ էին պատրաստվում, առանց լրջորեն հաշվի առնելու գիտության զարգացման հեռանկարներն ու տենդենցները, հաշվի չէին առնըվում բուռն կերպով զարգացող գիտության ու տեխնիկայի իսկական պահանջները։

Կադրերը գիտության գլխավոր շարժիչ ուժն են և լուրջ ուշադրություն են պահանջում։ Հարկավոր է գիտության դռները լայնորեն բաց անել մեր ընդունակ և տաղանդավոր երիտասարդության առջև, նրանց առջև, ովքեր օժտված են անհրաժեշտ ընդունակություններով ու հակումներով և պատրաստ են իրենց բոլոր ուժերը նվիրաբերել մեր հայրենական գիտության զարգացմանը։

Որո՞նք են մեր հիմնական խնդիրները գիտահետազոտական աշխատանքների բնագավառում, ինչի վրա պետք է իրենց ուշադրությունը բևեռեն մեր հասարակական գիտությունների աշխատողները։

Այժմ, ինչպես երբեք, նպաստավոր պայմաններ են ստեղծվել հասարակական գիտությունների զարգացման համար։ ՍՄԿՊ XXII համագումարը բոլշևիկյան սկզբունքայնությամբ վերջ տվեց անհատի պաշտամունքի վնասակար հետևանքներին, գաղափարապես ջախջախեց և դեն շպրտեց հակապարտիական խումբը՝ լայն ասպարեզ բաց անելով պարտիայի գաղափարական գործունեության հետագա ծավալման համար։

Անհատի պաշտամունքն իր արտահայտությունն է գտել նաև մեզ մոտ։ Հայտնի է, որ որոշ աշխատություններում, տուրք տալով անհատի պաշտամունքին, խեղաթյուրվում էր Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմությունը, անսահմանորեն մեծարվում էր Ստալինը, նրան վերագրվում էր հայ ժողովրդի փրկչի դերը, պատմական փաստերը ներկայացվում էին հակագիտական և սխոլաստիկ ոգով։ Անտեսվում և սխալ էին գնահատվում հայ ժողովրդի ռևոլյուցիոն անցյալի ականավոր շատ գործիչների ծառայությունները։

Հասարակական գիտությունների բնագավառում աշխատողների խնդիրն

է՝ մինչև վերջ բացահայտել և հաղթահարել անհատի պաշտամունքի ժամա-
նակաշրջանում ծագած հակագիտական կոնցեպցիաները և դրանց դրսևո-
րումները, պայքարել մարքսիստական-լենինյան տեսության անաղարտության
համար։ Անհրաժեշտ է, միաժամանակ, վճռական հակահարված տալ բոլոր
այն փորձերին, որոնք այդ պայքարն օգտագործում են տրոցկիզմի, նացիո-
նալ-ուկլոնիզմի և հակալենինյան այլ հոսանքների արդարացման նպատա-
կով, ինչպես նաև չի կարելի հանդուրժել, որ անհատի պաշտամունքի դեմ
պայքարի պատրվակով որոշ մարդիկ փորձում են նսեմացնել մեր պարտիա-
յի, նրա Կենտրոնական Կոմիտեի հսկայական պրակտիկ և տեսական գործու-
նեությունը, կոմունիստական շինարարության գործում մեր երկրի ձեռք բե-
րած վիթխարի հաջողությունները։ Անհատի պաշտամունքի հետևանքներից
մեր կյանքի բոլոր ոլորտների մաքրումը ռևոլյուցիոն պրոցես է, առանց որի
հնարավոր չէ լուծել այն խնդիրները, որոնք դրված են մեր երկրի առջև։

Պարտիայի պատմության մասնագետների պարտքն է ստեղծել լուրջ մե-
նագրություններ՝ նվիրված Հայաստանում ռևոլյուցիոն շարժման, կոմունիս-
տական կազմակերպությունների առաջացման ու պայքարի, բանվոր դասա-
կարգի ձևավորման և նրա ունեցած դերի, սոցիալիստական շինարարության
գործում մեր երկրի և ռեսպուբլիկայի աշխատավորների մասնակցությանը և
այլ ակտուալ պրոբլեմների։

Ռեսպուբլիկայի փիլիսոփաները պետք է բազմակողմանիորեն ուսումնա-
սիրեն կապիտալիզմից դեպի սոցիալիզմ մարդկային հասարակության անցման
և կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի հաստատման
օրինաչափությունները։ Անհրաժեշտ է խորապես ուսումնասիրել և լուսաբանել
այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ պրոլետարական դիկտատուրայի պետության
վերածումը համաժողովրդական սոցիալիստական պետության և սոցիալիս-
տական պետականության վերաճումը կոմունիստական ինքնավարության, սո-
ցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործումը և
նրանց վերաճումը կոմունիստական հարաբերությունների, քաղաքի և գյուղի,
ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած տարբերությունների լիկվի-
դացումը, կոմունիստական հասարակարգի մարդու ձևավորումը, կոմունիզմ
կառուցողների բարոյական կոդեքսը, սոցիալիզմից կոմունիզմին անցնելու
ժամանակաշրջանում սոցիալիստական ազգերի զարգացումը և մերձեցումը։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում մարքսիստա-
կան-լենինյան տնտեսագիտությունը կոչված է ակտիվորեն օգնելու պարտիա-
յին՝ մեր հասարակության տնտեսական զարգացման արմատական պրոբլեմ-
ների մշակման և լուծման գործում։ Ռեսպուբլիկայի տնտեսագետների խնդիրն
է՝ ժողովրդա-տնտեսական կարևոր պրոբլեմների, մասնավորապես կոմունիզ-
մի նյութատեխնիկական բազայի ստեղծման հետ կապված պրոբլեմների գի-
տական մշակումն ու վերլուծումը։ Նրանք կոչված են իրենց ուսումնասիրու-
թյուններով օգնելու ռեսպուբլիկայի պարտիական, պետական ու տնտեսական
օրգաններին՝ այդ կարևոր հարցերի լուծման գործում։

Այժմ, երբ պարտիայի և ժողովրդի առջև կանգնած է գյուղատնտեսական
արտադրության արագ վերելքի և մթերքների առատություն ստեղծելու
կարևորագույն խնդիրը, մեր տնտեսագետները պետք է առանձնահատուկ ու-
շադրություն դարձնեն գյուղատնտեսության էկոնոմիկայի և արտադրության
կազմակերպման, գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականության



բարձրացման և ինքնարժեքի իջեցման, կոլտնտեսային անբաժանելի ֆոնդերի
և հասարակական մյուս ֆոնդերի ստեղծման ու ամրապնդման, բաշխման
ձևերի կատարելագործման և այլ հարցերի լուսաբանմանը։ Առանձնապես մեծ
դեր ունեն Գյուղատնտեսական, Անասնաբուծական-անասնաբուժական ինս-
տիտուտների քաղաքատնտեսության և կոնկրետ էկոնոմիկայի ամբիոնները,
որոնք հիմք ընդունելով պարտիայի XXII համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի
1962 թվականի Մարտյան պլենումի որոշումները, պետք է լրջորեն վերակա-
ռուցեն իրենց աշխատանքը։

Հասարակական գիտությունների բոլոր ճյուղերի աշխատողների խնդիրն
է՝ գաղափարապես ջախջախել հակակոմունիզմը, որպես ժամանակակից իմ-
պերիալիզմի ամենառեակցիոն գաղափարական զենքի, հետևողականորեն
մերկացնել բուրժուական-ռեֆորմիստական և ռևիզիոնիստական գաղափա-
րախոսությունը։ Միաժամանակ անհրաժեշտ պայքար մղել դոգմատիզմի բո-
լոր դրսևորումների դեմ, դոգմատիզմ, որն իր ամենաարտառոց և զազրելի
դրսևորումը գտավ Ալբանիայի Աշխատանքի պարտիայի ղեկավարության գոր-
ծունեության մեջ։

«Հասարակական գիտությունները,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— այ-
սուհետև ևս պետք է վճռականորեն հանդես գան բուրժուական գաղափարա-
խոսության դեմ, աջ սոցիալիստական տեսության և պրակտիկայի դեմ, ռևի-
զիոնիզմի և դոգմատիզմի դեմ, պաշտպանելով մարքսիզմ-լենինիզմի սկզ-
բունքների անաղարտությունը»։

***

Ռեսպուբլիկայի բուհերի պարտիական, արհմիութենական և կոմերիտա-
կան կազմակերպությունների, հասարակագիտական ամբիոնների խնդիրն է
արմատապես բարելավել ուսանողության շրջանում տարվող քաղաքական-
դաստիարակչական աշխատանքը, կատարելագործել նրա ձևերն ու մեթոդնե-
րը։ Դաստիարակչական ամբողջ աշխատանքը պետք է ներծծված լինի ՍՄԿՊ
XXII համագումարի, պարտիայի Ծրագրի գաղափարներով, սերտորեն կապ-
ված լինի կոմունիստական շինարարության գործնական խնդիրների հետ։

Պետք է նշել, որ համագումարից հետո բուհերի հասարակագիտական
ամբիոնները, պարտիական և կոմերիտական կազմակերպություններն ավելի
մոտիկից են զբաղվում ուսանողության կոմունիստական դաստիարակության
հարցերով։ Սակայն փաստ է նաև այն, որ մի շարք բուհերում իրենց զգաց-
նել են տալիս այնպիսի արատավոր երևույթներ, ինչպիսիք են՝ խուլիգանու-
թյունը, սոցիալիստական համակեցության կանոնների և բարոյական նորմա-
ների այլ կարգի խախտումները։

Պարտիայի Երևանի քաղկոմի, Սպանդարյանի և Օրջոնիկիձեի շրջկոմ-
ների, Լենինականի քաղկոմի, բուհական պարտիական, արհմիութենական և
կոմերիտական կազմակերպությունների, բոլոր դասախոսների պարտքն է
վճռական պայքար մղել ուսանող երիտասարդության շրջանում եղած հակա-
հասարակական երևույթների դեմ, ուսանողության գաղափարական-կուլտու-
րական մակարդակը բարձրացնել ներկա էտապի պահանջներին համապա-
տասխան։

Գաղափարայնությունը հիմնականն է մեր դաստիարակչական աշխա-

տանքում։ ՀամԼԿԵՄ XIV համագումարում արտասանած իր ճառում ընկեր Խրուշչովն ասաց. «Եթե մարդը գաղափարապես համոզված է, եթե նա զինված է մարքսիզմ-լենինիզմի առաջավոր տեսությամբ, եթե նա իսկական մարտիկ է, եթե նրա համար պարզ է այն նպատակը, որին մենք ձգտում ենք, ապա այդպիսի մարդը կյանքում բարոյական ու քաղաքական մեծ բավականություն է ստանում»։

Հասկանալի է, իհարկե, որ ուսանողների գաղափարական-բարոյական կերպարը չի ձևավորվում միայն բարձրագույն դպրոցի շրջանակներում։ Երիտասարդ մարդու հոգեկան աշխարհի վրա բացասաբար են ազդում մեր կյանքում, դժբախտաբար, դեռևս գոյություն ունեցող այնպիսի այլանդակ երևույթներ, ինչպիսիք են՝ հանրային ունեցվածքի հափշտակումը, սպեկուլյացիան, կաշառակերությունը, գողությունը, աչքակապությունը, բյուրոկրատիզմն ու քաշքշուկը։

Մեր խնդիրն է՝ երիտասարդությանը դաստիարակել լենինյան անհաշտության ոգով սոցիալիստական հասարակարգին խորթ և վնասակար բարքերի նկատմամբ, հասնել այն բանին, որ կոմունիզմ կառուցողների բարոյական կոդեքսի սկզբունքները դառնան մեր երիտասարդության վարքի սովորական նորմաները։

Բարձրագույն դպրոցի աշխատողների ուշադրության կենտրոնում պետք է գտնվի երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակությունը։ Բուհական պարտիական կազմակերպությունները և հասարակագիտական ամբիոնները, ելնելով մեր պարտիայի ծրագրային պահանջներից, պետք է անհաշտ պայքար ծավալեն «ամեն տեսակ նացիոնալիզմի ու շովինիզմի դրսևորումների և մնացուկների դեմ, ազգային սահմանափակության և բացառիկության, անցյալի իդեալականացման և ժողովուրդների պատմության մեջ սոցիալական հակասությունների սքողման տենդենցների դեմ, այն սովորույթների ու բարքերի դեմ, որոնք խանգարում են կոմունիստական շինարարությանը»։

Պարտիան սովորեցնում է, որ որքան սերտ լինի ազգերի շփումը և որքան ճիշտ լինի մեր առջև դրված խնդիրների ըմբռնումը, այնքան հաջողությամբ կհաղթահարվեն տեղայնության և ազգային էգոիզմի դրսևորումները։

Ուսանողության ինտերնացիոնալ դաստիարակության հիմքում պետք է դրվի հայ և ռուս, հայ և Սովետական Միության եղբայրական մյուս ժողովուրդների դարավոր բարեկամության տրադիցիաների հետագա պահպանումը, ամրապնդումը և զարգացումը։ Կենդանի, պատկերավոր, համոզիչ փաստերով պետք է ցույց տալ ՍՍՌՄ ժողովուրդների, ինչպես նաև սոցիալիստական լագերի մյուս ժողովուրդների տնտեսական, կուլտուրական կապերն ու անշահախնդիր օգնությունը միմյանց։ Պետք է սիստեմատիկ բնույթ տալ ուսանողների ուսումնա-գիտական գործուղումներին, էքսկուրսիաներին և փորձի փոխանակման կարգով կատարվող փոխադարձ այցելություններին, կիրառել երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակության ավելի բազմազան ձևեր ու մեթոդներ։

Ուսանողության գաղափարական դաստիարակության գործում մեծ անելիքներ ունեն ռեսպուբլիկայի ստեղծագործական կազմակերպությունները՝ Գրողների, Կոմպոզիտորների, Նկարիչների միությունները։ Յուրաքանչյուր լիարժեք գեղարվեստական ստեղծագործություն, կենսուրախ և ոգեշունչ երգ,



գեղարվեստական ռեալիստական կտավ նպաստում է երիտասարդության ճիշտ դաստիարակությանը։

Մեծ դեր ունեն կատարելու մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը։ Չժխտելով նրանց կատարած աշխատանքը այդ ուղղությամբ, միաժամանակ պետք է նշել, որ երբեմն մամուլի էջերում տպագրվում, ռադիոյով հաղորդվում են այնպիսի նյութեր, որոնք ոչնչով չեն նպաստում աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը։

Այդ առումով լուրջ քննադատության է արժանի «Գրական թերթ»-ը, որի էջերում առանձին դեպքերում տպագրվում են գաղափարազուրկ ստեղծագործություններ և ապակողմնորոշող հոդվածներ։



Բարձրագույն դպրոցում ուսումնական, գիտահետազոտական և դաստիարակչական աշխատանքների հաջողությունը վերջին հաշվով որոշում են մեր դասախոսական կադրերը. ռեսպուբլիկայի բուհերի հասարակագիտական ամբիոնները հատկապես վերջին տասնամյակում համալրվել են շնորհալի երիտասարդ ուժերով։ Այժմ պարտիայի պատմության, փիլիսոփայության և քաղաքատնտեսության դասախոսների մեծ մասն ունի գիտական աստիճան և կոչում։

Մենք ունենք իրենց գործն իմացող շատ հմուտ դասախոսներ, որոնք լայն ճանաչում են գտել և վայելում են մեր ուսանող երիտասարդության սերն ու համակրանքը։ Բայց բոլոր դասախոսները չէ, որ արժանի են իրենց կոչմանը։ Եվ դա է պատճառը, որ շատ դասախոսություններ կարդացվում են տեսական և գաղափարական ցածր մակարդակով։

Ահա շատ փաստերից մեկը. այս տարվա մարտի 3-ին Երևանի ֆիզկուլտուրայի ինստիտուտի՝ պարտիայի պատմության դասախոս ընկեր Այվազյանը կարդաց՝ «Պարտիայի խնդիրները պետական շինարարության և սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման բնագավառում։ Պարտիայի խնդիրները ազգային հարաբերությունների բնագավառում» թեմայով դասախոսությունը։ Պետք է նշել, որ այն, ամբողջովին վերցրած, հրամցվեց գիտական ու մեթոդական ցածր մակարդակով։ Նյութի շարադրման մեջ չկար տրամաբանություն, զգացվում էր, որ դասախոսը թեման բազմակողմանիորեն չէր ուսումնասիրել ու յուրացրել։ Թեպետ նա բավականաչափ երկար խոսեց կոմունիզմի մասին, բայց ուսանողներից մեկը վերջում հարց տվեց, թե ի՞նչ բան է կոմունիզմը։ Դասախոսը խոսում էր ի միջի այլոց, անհետաքրքիր և պատահական չէ, որ ուսանողների մեծ մասը չէր լսում դասախոսությունը։

Այդ նույն թեմայով կարդացված դասախոսության մեջ նա ասում է. «Առաջին համաշխարհային պատերազմը և Հայրենական պատերազմն ապացուցեցին այն, որ մեր ժողովուրդն ուներ փառապանծ բանակ, որը պատվով կատարեց այն խնդիրները, որոնք կանգնած էին նրա առաջ»։ Դասախոսն իրեն հաշիվ չտալով, ցարական բանակը նույնացնում է Սովետական Բանակի հետ։

Կամ, ինչպե՞ս հասկանալ դասախոսի հետևյալ արտահայտությունը. «Էնգելսն ասել է, որ ռուսական պետությունը կհաղթանակի, քանի որ նա իր հիմքում ունի տնտեսական բազա՝ ֆեոդալական սեփականությունը»։

Լուրջ քննադատության է արժանի նաև նույն ինստիտուտի դոցենտ ընկ.

Հ. Տոնոյանի՝ ՍՄԿՊ պատմության 16-րդ թեմայի (1945—1953 թթ.) վերաբերյալ կարդացած դասախոսությունը։ Նպատակ ունենալով արդիականացնել այն, ընկ. Տոնոյանը փաստորեն տվեց ժամանակակից միջազգային տեսության շարադրանքը, այն էլ մակերեսային։ Անհանդուրժելի է ընկ. Տոնոյանի անիրազեկությունը, երբ նա կարծում է, թե մինչև այժմ շարունակվում է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երկրորդ էտապը։ Այս օրինակները, որոնք, դժբախտաբար, բացառություն չեն կազմում, վկայում են, որ ոչ ամենուրեք է մեր ուսանող երիտասարդության դաստիարակության գործը գտնվում կարող ձեռքերում, որ հարկավոր է հասարակագիտական առարկաների դասավանդումը վստահել միայն նրանց, ովքեր ունեն մարքսիստական-լենինյան բարձր պատրաստականություն, խորապես գիտեն նյութը, ընդունակ են այն մատչելի և հասկանալի ձևով հասցնել ուսանողներին։

Դասախոսը պետք է պատրաստ լինի ամեն դեպքում բավարարող պատասխան տալ ուսանողների հարցերին, նամանավանդ սուր հարցերին։ Մեր պարտիան աճեցրել ու դաստիարակել է Հայրենիքին և Կոմունիստական պարտիային անսահմանորեն նվիրված մի սքանչելի սերունդ։ Բայց, գաղտնիք չէ, որ երիտասարդության մեջ կան և այնպիսիները, որոնք ունեն մանրբուրժուական անկումնային տրամադրություններ, այնպես շուտ ընկնում են մոմենտի ազդեցության տակ, արագորեն ենթարկվում են իրենց աչքի առջև տեղի ունեցող մասնավոր պատահականությունների տպավորությանը։

Դասախոսը վարպետորեն և համբերատարությամբ պետք է կարողանա պատասխան տալ ուսանողների հարցերին, օգնել նրանց՝ ճիշտ կողմնորոշվել իրադրության մեջ, համոզել նրանց մեր գործի արդարության մեջ։ Բարձրագույն դպրոցը երիտասարդությանը պետք է պատվաստի սովետական մարդկանց լավագույն հատկությունները՝ առույգություն, անվեհերություն, հավատ՝ մեր գործի հաղթանակի նկատմամբ, ամեն տեսակ դժվարություններ և խոչընդոտներ հաղթահարելու պատրաստակամություն։



Դասախոսական աշխատանքն արվեստ է. այդ արվեստին տիրապետում է նա, ով ընդհանուր և քաղաքական անհրաժեշտ պատրաստականության հետ միասին լավ է իմանում այն լեզուն, որով նա ավանդում է առարկան, կատարելագործում, կիրառում է նրա արտահայտչական ձևերն ու միջոցները։ Եթե դասախոսը չի կարող գրագետ կերպով, ճիշտ շարադրել մտքերը, կնշանակի նա նույնպես անսիստեմ, քաոսային կերպով էլ մտածում է։ Դժբախտաբար մենք ունենք դասախոսներ, որոնք հնարավոր են համարում դասախոսություն կարդալ առանց քերականությունը լավ իմանալու, առանց ոգևորության և կրքի, առանց գեղարվեստական վեհապանծ, պաթետիկ կերպարներ օգտագործելու, որոնք հզոր ուժ են տալիս դասախոսությանը։

Ճշմարտության ամենահաղթ ուժով, բոլշևիկյան կրքոտությամբ և անթերի ոճով էին աչքի ընկնում Վլադիմիր Իլյիչ Լենինի դասախոսություններն ու ճառերը, որոնք ունեին համոզելու արտասովոր ուժ, փաստարկման պարզություն և հստակություն, հակիրճ էին ու հասկանալի։ Մաքսիմ Գորկին հիշում է, թե ինչպես էր կերպարանափոխվում Լենինն իր ելույթների ժամանակ,



առանձնապես նրա աչքերը, որոնք անդադար փոխվում էին՝ մերթ հեգնանքի, մերթ ցասման ճառագայթների։

«Այդ աչքերի փայլը,— ասում էր Գորկին,— նրա ճառը դարձնում էր ավելի ևս այրող և հստակ։ Երբեմն թվում էր, թե նրա հոգու անզուսպ էներգիան ցայտում էր նրա աչքերից իբրև կայծեր և նրանով հագեցած խոսքերը փայլում էին օդի մեջ։ Նրա ճառը մշտապես հարուցում էր անդիմադրելի ճշմարտության ֆիզիկական զգայություն»։

Մենք ունենք դասախոսներ, դժբախտաբար, ոչ քիչ թվով, որոնք անպատասխանատվության հասնող անտարբերություն են դրսևորում դեպի լեզուն։ Իր ժամանակին Լև Նիկոլաևիչ Տոլստոյն ասել է. «Եթե ես թագավոր լինեի, ապա օրենք կհրատարակեի, որ այն գրողը, որը չի կարող բացատրել իր գործածած բառի նշանակությունը, զրկվում է գրելու իրավունքից և ստանում է մտրակի հարյուր հարված»։

Դա ասված է գրողի մասին։ Բայց դա սազում է ասել նաև դասախոսի մասին։ Եվ ի՞նչ կլիներ մեր որոշ դասախոսների վիճակը, եթե Տոլստոյի այս ցանկությունն իրականանար և այդպիսի օրենք գոյություն ունենար լեզուն չիմացողների համար։

Պարզություն, հստակություն, քաղաքական նպատակասլացություն և հագեցվածություն,— ահա այն պահանջները, որոնք ներկայացվում են դասախոսի լեզվին և ոճին։ Ամենապարզ նյութի մասին կարելի է խոսել հետաքրքիր, այնպես, որ ուշադրություն գրավի, հասկանալի լինի մարդկանց, սնունդ տա նրանց ուղեղին։

Այո՛, լեզուն դասախոսի զենքն է։ Նա պետք է շարունակ, անխոնջ կերպով սրի այդ զենքը, ուսումնասիրի մեր ժողովրդի անսպառ հարուստ, կոկիկ, գեղեցիկ լեզուն։

Մեծ նշանակություն ունի դասախոսի վերաբերմունքը դեպի ուսանողը, նրա գիտելիքների գնահատումը։ Մենք, դժբախտաբար, ունենք այնպիսի «բարի» դասախոսներ, որոնք քննությունների ժամանակ հանգիստ խղճով տալիս են անարժան, միտումնավոր, բարձր գնահատականներ, ձգտելով «մի կերպ փրկել» անբավարար գիտելիքներ ցուցաբերած ուսանողներին։ Նման լիբերալիզմը կարող է միայն վնասել գործին։ Մյուս կողմից, գործին վնասում է և այն, որ որոշ դասախոսներ իրենց բծախնդրությամբ և չափից ավելի խստությամբ նյարդային վիճակ են ստեղծում քննությունների ժամանակ, դրանով իսկ դժվարացնելով ուսանողների իրական գիտելիքների դրսևորումը։ Քննությունների ժամանակ պետք է ապահովվի բարձր, բայց արդարացի պահանջկոտություն։ Դրանք չի կարելի հանգեցնել ուսանողների ձևական հարց ու պատասխանի. պետք է որոշել, թե որքան խոր, ստեղծագործաբար է յուրացրել ուսանողը տվյալ նյութը։ Քննությունները պետք է ցույց տան ոչ միայն ուսանողների գիտելիքների մակարդակը, այլև տեսական գիտելիքները պրակտիկայում կիրառելու, դրանց կենսական նշանակությունը պարզ պատկերացնելու նրանց կարողությունը։

Ուսանողության կոմունիստական դաստիարակության գործում դասախոսին վճռական դեր է պատկանում։ Ամբողջ հարցը կախված է նրանից, թե որպիսին է դասախոսի գիտական և կուլտուրական մակարդակը, նյութի մատուցման նրա հմտությունը։ Մարքսիզմ-լենինիզմի դասավանդումը հասարակագիտական ամբիոնների դասախոսներից պահանջում է՝ առարկայի խորի-

մացություն և բազմակողմանի զարգացում, իսկական վարպետություն, դասավանդումը կատարյալ արվեստի մակարդակին բարձրացնելու հմտություն։ Դասախոսը պետք է վարակի ուսանողին իր անբիծ վարքագծով, լենինյան գաղափարներին իր անսահման նվիրվածությամբ, մեր գործի հաղթանակի նկատմամբ խորին համոզվածությամբ։

Անհրաժեշտ է միաժամանակ հոգալ դասախոսների մասին, նորմալ պայմաններ ստեղծել նրանց հաջող գործունեության համար։ Յուրաքանչյուր ամբիոնում պետք է լինի ստեղծագործական առողջ մթնոլորտ, որը հնարավորություն տա միավորելու մեր դասախոսների ջանքերը՝ բեղմնավոր աշխատանք կատարելու, բևեռի նրանց ուշադրությունը հրատապ, կարևոր խնդիրների վրա։ Մինչդեռ գիտական աշխատանքում հաճախ բացակայում է փոխադարձ բարեկամական օգնությունը։ Ցավով պետք է նշել, որ այդ օգնությունը, որի կարիքը բոլորն էլ զգում են, երբեմն վերածվում է փոխադարձ անտարբերության, անբարյացակամության և նույնիսկ անսկզբունք պայքարի։

Վերջին տարիների ընթացքում մեզ մոտ հրապարակ են եկել մի շարք արժեքավոր պատմական, տնտեսագիտական և փիլիսոփայական աշխատություններ ու մենագրություններ։ Սակայն այդ աշխատությունների գնահատման հարցում հաճախ թույլ են տրվում ծայրահեղություններ։ Ոմանք աշխատության լուրջ և սկզբունքային վերլուծության փոխարեն ղեկավարվում են հեղինակի հետ ունեցած բարի-դրացիական հարաբերություններով և անզուսպ գովերգում, դիֆերամբներ նվիրում թույլ ու ցածրորակ գրքին, դրանով իսկ արջի ծառայություն մատուցում քննադատության կարոտ հեղինակին։

Լինում են և այնպիսիները, որոնք ոչ մի լավ բան, լուսավոր կետ անգամ չեն ուզում տեսնել նույնիսկ ընդհանուր առմամբ հաջողված գրքում. ասես խոշորացույցով պրպտում, որսում են մասնակի թերությունները և դրանք ուռճացնելով՝ գրչի մի հարվածով սևացնում գիտնականի տարիների աշխատանքը։

Եվ մեկը, և մյուսն անթույլատրելի են։ Սկզբունքայնության պայմաններում և ստեղծագործական առողջ մթնոլորտում միայն կարող են դրսևորվել ձիրքերն ու տաղանդները։ Յուրաքանչյուր նոր, հաջողված աշխատություն, անկախ այն բանից, թե ում գրչին է պատկանում, պետք է ուրախություն պատճառի բոլորին և, հակառակը, այս կամ այն անհաջող աշխատությունը պետք է անկեղծորեն մտահոգի բոլորին։



Մեր պարտիան, նրա Կենտրոնական Կոմիտեն առանձնակի ուշադրություն են դարձնում հասարակական գիտությունների զարգացմանը։ 1962 թվականի փետրվարին Մոսկվայում տեղի ունեցավ բարձրագույն ուսումնական հաստատությունների հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցություն, որը քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի Նախագահության անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկեր Մ. Ա. Սուսլովի զեկուցումը՝ «ՍՄԿԿ XXII համագումարը և հասարակական գիտությունների ամբիոնների խնդիրները»։ Խորհրդակցությունն ամփոփեց ուսանողների շրջանում տարվող գաղափարական-դաստիարակչական աշխատանքի արդյունքները, վեր հանեց այդ գործում եղած թերությունները և միջոցներ նշեց հասարակական գիտությունների դասավանդումը բարելավելու ուղղությամբ։



Այդ հարցի քննարկմանն էր նվիրված ռեսպուբլիկայի բուհերի հասարակագիտական ամբիոնների դասախոսների՝ վերջերս տեղի ունեցած խորհրդակցությունը, որը համագումարի որոշումների լույսի տակ քննարկեց հասարակագիտական առարկաների դասավանդման վիճակը և այն բարելավելու միջոցառումները։ Խորհրդակցությունը ցույց տվեց, որ հասարակագիտական բնագավառի աշխատողները ճիշտ են հասկացել իրենց առջև դրված խնդիրները և ի վիճակի են հասարակագիտական առարկաների դասավանդումը բարձրացնել նոր խնդիրների մակարդակին։ Հարկավոր է, որպեսզի բարձրագույն դպրոցների ռեկտորատները և պարտիական կազմակերպությունները լայն օգնություն ցույց տան մեր դասախոսներին իրենց պատասխանատու և շնորհակալ աշխատանքում։ Անժխտելի է այն աշխատանքը, որ կատարում են մեր ռեսպուբլիկայի բուհերի հասարակագիտական ամբիոնների դասախոսները երիտասարդության մարքսիստական-լենինյան դաստիարակության ուղղությամբ։ Սակայն մեր ապրած պատմական ժամանակաշրջանը նոր, ավելի բարձր պահանջներ է ներկայացնում հասարակական գիտությանը, նրա աշխատողներին։

Պարտիայի, երկրի առջև իր ամբողջ հասակով կանգնած է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պատմական խնդիրը։ Գաղափարական աշխատանքն ինքնանպատակ բան չէ, այլ կոմունիստական շինարարության խնդիրների լուծման կարևորագույն միջոց, մեր ամբողջ պրակտիկ գործունեության հաջողության անհրաժեշտ պայմանը։ Ինչքան բարձր լինի սովետական մարդկանց, մեր երիտասարդության գաղափարական մակարդակը, այնքան ավելի արդյունավետ կլինի կոմունիզմի համար կատարվող նրանց ամենօրյա աշխատանքը։

Կասկածից դուրս է, որ ռեսպուբլիկայի պատմաբանները, փիլիսոփաները և տնտեսագետները՝ երկրի հանդեպ պարտքի և պատասխանատվության բարձր զգացումով համակված, այսուհետև ևս իրենց ուժն ու եռանդը ի սպաս կդնեն երիտասարդ սերնդի՝ կոմունիզմի ակտիվ և գիտակից կառուցողների դաստիարակության մեծ և պատասխանատու գործին։

---

# ՍՈՒԲՅԵԿՏԻՎ ԳՈՐԾՈՆԻ ԴԵՐԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

ՀՐ. ՇԱՔԱՐՅԱՆ

Մարդը, աշխատավոր ժողովուրդը հասարակական կյանքի զարգացման սուբյեկտն ու կրողն է, սոցիալական կյանքի հեղինակը։ Ինչպես առանց մատերիայի ակտիվության կբացառվեր բնության մեջ փոփոխությունն ընդհանրապես, այնպես էլ հասարակական կյանքի զարգացումն անհնար է առանց աշխատավոր մարդկության ստեղծարար գործունեության։ Բայց մատերիան բնության հրաշալիքներն ստեղծում է կուրորեն, նրան ներհատուկ զարգացման անհրաժեշտության ուժով։ Մինչդեռ հասարակության պատմությունը կերտվում է գիտակցությամբ, ինքնաճանաչման ունակությամբ օժտված սուբյեկտի՝ մարդու միջոցով։ Այդ պատճառով Մարքսի հայտնագործած հասարակական կյանքի զարգացման օբյեկտիվ օրենքների գոյությունը ոչ միայն չի մերժում, այլ ընդհակառակը՝ ենթադրում է մարդկանց սուբյեկտիվ ակտիվության անհրաժեշտությունը։

Սակայն ողջ հասարակական կյանքի պատմության մեջ սուբյեկտիվ ջանք գործադրելու ունակության առկայությունը դեռևս բավարար չէ՝ սոցիալական երևույթների էությունն ընկալելու համար։ Մարդիկ միշտ չէ, որ ամբողջությամբ գիտակցել են իրենց գործունեության սոցիալական բովանդակությունը, նրա անմիջական ու վերջնական հետևանքները։ Դարեր շարունակ մարդկությունը կերտել է իր պատմությունը. կատարելագործել արտադրության գործիքները, ստեղծել նոր, ավելի հզոր մեքենաներ. կուլտուրական արժեքները հաջորդել են մեկը մյուսին։ Բայց այդ ամենը, որպես կանոն, կատարվել է մարդուն անհայտ մնացած տնտեսական ուժերի ճնշման ներքո, անմիջական նյութական շահի պահանջից դրդված։ Օրինակ՝ նախնադարյան համայնական հասարակարգում մարդիկ իրենց տնտեսական դրությունը բարելավելու նըպատակով, կատարելագործում էին արտադրության գործիքները, բոլորովին չզգալով, որ դրանով սկիզբ էին դնում հասարակության դասակարգային շերտավորմանը և մարդու կողմից մարդու շահագործմանը։ Կամ՝ եվրոպական երիտասարդ բուրժուազիայի գաղափարախոսները անկեղծորեն հավատում էին, թե ֆեոդալիզմի կործանմամբ իրոք վրա կհասնի հավասարության, եղբայրության ու ազատության թագավորությունը։ Այլ կերպ ասած՝ երկար ժամանակ մարդիկ գիտակցել են միայն իրենց գործունեության անմիջական, պրակտիկ, շահագիտական կողմը, իսկ նրա հեռավոր սոցիալական հետևանքները՝ հասարակական կյանքի զարգացման ներքին օրենքները, մարդկանց



անհայտ են մնացել։ Միայն այս վերջին իմաստով հասարակական պատմությունը նույնպես իր զարգացման որոշակի էպոխայում կերտվել է կուրորեն, տարերայնորեն ու անգիտակցաբար։ Յուրաքանչյուր նոր սերունդ ընդունել է նախորդների ստեղծած նյութական ու հոգևոր կուլտուրայի արժեքները, հարմարվել այդ արժեքներին համապատասխան գոյություն ունեցող հարաբերություններին, և ինքն էլ, ավելին ստանալու ձգտումով, ավելի է կատարելագործել արտադրության գործիքները, պայմաններ ստեղծել՝ հասարակական աշխատանքի կազմակերպման հետագա ավելի բարձր ձևերի համար։

Մարդկանց պրակտիկ գործունեության սոցիալ-տնտեսական իմաստի ու հետևանքների չըմբռնման այս պրոցեսը շարունակվել է ընդհուպ մինչև սոցիալիստական ռևոլյուցիայի դարաշրջանը։ Կապիտալիզմի էպոխայում պատմության հիմքում ընկած կույր ուժերն իրենց գիտակցել են տալիս. պատմական անհրաժեշտությամբ ծնունդ է առնում մի դասակարգ, որն իր տնտեսական դրության շնորհիվ ազատ է մինչ այդ գործած բոլոր հասարակական խավերին հատուկ նեղ, դասակարգային նախապաշարմունքներից, մի դասակարգ, որի համար մասնավոր սեփականությունն այլևս շղարշ չէ պատմության զարգացման ներքին օրինաչափությունները քողարկելու համար։ Այդ դասակարգը պրոլետարիատն է՝ արտադրության միջոցների մասնավոր սեփականատիրության թշնամին։ Պրոլետարիատի շնորհիվ և նրա օգնությամբ է միայն պատմությունը կերտող աշխատավոր ժողովուրդն սկսում գիտակցել իր գործունեության սոցիալական իմաստը։ Այս գիտակցումից է սկիզբ առնում կապիտալիստական հասարակարգի մայրամուտը։ Կապիտալիզմի կործանման էպոխան միաժամանակ դառնում է մարդու՝ գիտականորեն ինքնաճանաչման հասնելու և կոմունիստական հասարակարգի կառուցման դարաշրջանը։ Ֆ. Էնգելսի արտահայտությամբ դա որոշ իմաստով կենդանական աշխարհից մարդու վերջնականապես բաժանման, մարդկության նախապատմությունն ավարտելու և իսկական մարդկային պատմության ստեղծման էպոխան է, երբ աշխատավորական մասսաները դադարում են պատմության կույր ուժերի գերին լինելուց և սկսում են իրենց կյանքը տնօրինել գիտակցված կերպով։

Պատմության մեջ սուբյեկտիվ գործոնը ստանում է նոր բովանդակություն ու նոր նշանակություն։ Սոցիալական կյանքում տեղի ունեցող տեղաշարժերը ձեռք են բերում նպատակադրված գործունեության ձև. եթե ժամանակին դասակարգերի առաջացումը տեղի է ունեցել տարերայնորեն, այժմ դասակարգերի ու դասակարգային տարբերությունների վերացումը դառնում է պրոլետարիատի գիտակցված, նպատակասլաց գործունեություն։ Նույն ձևով հասարակական կյանքի զարգացման անհրաժեշտության հետևանք հանդիսացող պետությունը և իրավունքը ժամանակի ընթացքում օրինաչափորեն, բայց արդեն հասարակական լայն խավերի կողմից իմաստավորված ձևով, կդադարեն գոյություն ունենալուց՝ կմեռնեն իբրև գիտակցված օրինաչափություններ, իբրև ճանաչված անհրաժեշտություն։ Էնգելսի բառերով ասած՝ պատմությունը թռիչք է կատարում անհրաժեշտության թագավորությունից դեպի ազատության թագավորությունը։ Այդ գիտակցման մեջ պետք է փնտրել այն պատճառներից մեկը, որոնք պատմությունն ավելի արագընթաց են դարձնում սոցիալիզմի և կոմունիզմի էպոխայում, իսկ հիմնական պատճառը, իհարկե,

մնում է սոցիալական նոր սիստեմը, ռեակցիոն, պահպանողական դասակարգերի բացակայությունը։

Ժողովրդական մասսաների գործունեության մեջ տեղի ունեցող այս շրջադարձը, ամենից առաջ, կապվում է հասարակական կյանքի զարգացման մասին գիտական ուսմունքի ստեղծման հետ։ Արդեն կապիտալիզմի պայմաններում ծնունդ է առնում պատմությանը հայտնի միակ գիտական, պրոլետարական աշխարհըմբռնումը՝ մարքսիստական-լենինյան տեսությունը։ Համաձայն մարքսիստական գաղափարախոսության՝ պատմությունն իր առաջընթացի ներքին տրամաբանությամբ կապիտալիզմի էպոխայում պայմաններ է ստեղծում անդասակարգ, կոմունիստական հասարակարգի ստեղծման համար։ Մարքսիզմը դարձավ աշխատավոր ժողովրդին իր սեփական աշխատանքի տերը դարձնելու, նրան շահագործումից ու հարստահարումից ազատելու միակ հուսալի և ամենազոր զենքը։ Պրոլետարիատը գիտակցեց իր պատմական կոչումը, գլխավորեց իմպերիալիզմի դեմ ուղղված շահագործվող դասակարգերի բոլոր ուժերի պայքարը և երկրագնդի նշանակալից մասում մարդկանց միջև ստեղծեց նոր, սոցիալիստական հարաբերություններ։

Գիտական սոցիալիզմի ու գիտական կոմունիզմի ուսմունքը դադարեց սոսկ տեսական սկզբունքների մի տրամաբանական ամբողջություն լինելուց։ Այն իր կենդանի մարմնացումը գտավ նաև առարկայական աշխարհում՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմի ձևով. իսկ մեր երկրում արդեն մարմնավորվում են նաև կոմունիզմի սկզբունքները։ Սոցիալիզմը ոչ միայն իդեական, այլև նյութական փաստ դարձավ։ Այն այլևս ամփոփված չէ միայն գրքերում կամ մարդկանց գիտակցության մեջ, այլև դրսևորվել է իբրև կենդանի իրողություն, որը, ինչպես ընկեր Խրուշչովն է ասում, կարելի է շոշափել, տեսնել, զգալ։ Կապիտալիզմի և սոցիալիզմի միջև ընթացող «պայքարը սոսկ գաղափարախոսական ոլորտից փոխադրվեց նաև նյութական արտադրության ոլորտը»։ Կոմունիզմի իդեաների այս մարմնավորման ու առարկայացման պրոցեսն անհնար է առանց աշխատավոր մասսաների կողմից իրականացվող պրակտիկ գործունեության խոր գիտակցման։ «Սոցիալիզմի և կոմունիստական հասարակարգի կառուցման պայմաններում,— ասվում է ՍՄԿՊ Նոր Ծրագրում,— երբ տարերային տնտեսական զարգացումն իր տեղը զիջել է արտադրության և ամբողջ հասարակական կյանքի գիտակցական կազմակերպմանը, երբ տեսությունն ամեն օր կենսագործվում է պրակտիկայում, առաջնակարգ նշանակություն է ստանում սովետական հասարակության բոլոր աշխատավորների գիտական աշխարհայացքի ձևավորումը մարքսիզմ-լենինիզմի... հիման վրա»։

Կոմունիզմը միլիոնների ստեղծագործությունն է, նրանց գիտակցված ու նպատակադրված գործունեության արդյունքը։ Կոմունիզմի կառուցման էպոխայում սոսկ գործելն ու աշխատելը չի կարող բավարար ճանաչվել։ Անհրաժեշտ է նաև գիտակցել տվյալ գործի կամ աշխատանքի սոցիալական արժեքը՝ իբրև հասարակական կյանքի արմատական վերափոխման մեծ գործի մի անհրաժեշտ ու պատվավոր մաս։ Միաժամանակ «Որքան ավելի բարձր է հասարակության անդամների գիտակցականությունը, այնքան ավելի լրիվ ու լայնորեն է ծավալվում նրանց ստեղծագործական ակտիվությունը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, աշխատանքի կոմունիստական ձևերի և մարդկանց միջև նոր հարաբերությունների զարգացման մեջ և, հե-



տևապես, այնքան ավելի արագորեն ու հաջողությամբ են լուծվում կոմունիզմի կառուցման խնդիրները» (ՍՄԿՊ Ծրագիր)։

Պատահական չէ այն հանգամանքը, որ սոցիալիստական ռևոլյուցիան բոլոր երկրներում իբրև իր անհրաժեշտ կողմ ունի կուլտուրական ռևոլյուցիան, մի պայման, առանց որի կբացառվի նոր հասարակարգի կառուցումը։ Լենինը գտնում էր, որ սոցիալիստական պետությունը ուժեղ է մասսաների գիտակցականությամբ. սա է հաղթած սոցիալիստական սիստեմի էությունը, ինչպես տգիտությունն ու խավարամոլությունը բխում են կապիտալիստական հասարակարգի էությունից։ Կապիտալիստը հասկանում է, որ բանվորը որքան շատ իմանա, այնքան խոր կըմբռնի բուրժուական հարաբերությունների հակամարդկային էությունն ու իր սոցիալական խնդիրները, այնքան քիչ կըհավատա կապիտալիստական պրոպագանդային։ Ընդհակառակը՝ կոմունիստական հասարակարգում որքան լուսավորված է անհատը, այնքան մեծ է հավատն իր արդար գործի նկատմամբ, այնքան մեծ եռանդ է նա ներդնում իր ստեղծարար աշխատանքի մեջ։

Կոմունիզմի կառուցման մեծ գործը մեր կյանքի բոլոր բնագավառներում, մեր երկրի բոլոր անկյուններում իրականացնում են մարդիկ, անհատները, ինդիվիդուալ այս կամ այն հատկանիշներով օժտված սուբյեկտները։ Ամենուրեք մենք գործ ունենք միևնույն օբյեկտիվ օրինաչափությունների՝ կոմունիստական հասարակության լինելիության հետ։ Բայց մեր կյանքի ոչ բոլոր օղակներն են հավասարաչափ լավ կամ գերազանց գործում. մեկ բնագավառում պլանները կատարվում են, մյուսում՝ գերակատարվում, իսկ մի երրորդում գործ ենք ունենում թերակատարման փաստերի հետ։ Օբյեկտիվ կարգի պատճառների հետ միասին այստեղ վճռական նշանակություն է ձեռք բերում նաև սուբյեկտիվ գործոնը՝ մարդկանց գործնական ու քաղաքական հատկանիշները, այն անհատների ինդիվիդուալ գծերը, որոնք ղեկավարում են այդ բնագավառը կամ իրականացնում տվյալ գործը։ Ընդ որում, որքան բարձր ու պատասխանատու է այս կամ այն անհատի պաշտոնը, այնքան մեծ են նրա անհատականության նկատմամբ ներկայացվող պահանջները, որքան բարձր է անհատի դիրքը, այնքան զգալի է նրա ինդիվիդուալ հատկանիշների ազդեցությունը հասարակական կյանքի առաջընթացի վրա։ Օրինակ, Լենինի անհատական հատկանիշները՝ երևույթները խոր ընկալելու հանճարեղ ունակություններն ու բնավորության բյուրեղյա մարդկային գծերը պայմանավորել են նոր հասարակական հարաբերությունների ավելի հեշտ ու անցավ ծնունդը մեր երկրում։ Մինչդեռ Ստալինի անհատական բացասական գծերը մեծագույն դժվարություններ են ստեղծել մեր երկրի առաջընթացի համար, տեղիք տվել սոցիալիստական օրինականության կոպիտ խախտումների և սոցիալիզմի էությանը խորթ այլ կարգի երևույթների,— չնայած այն բանին, որ Ստալինը գործել է ո՛չ այնքան բարդ ու հակասական էպոխայում, ինչպիսին վիճակվել էր ռևոլյուցիայի մեծ առաջնորդ Լենինին։

Ստալինի անհատական գծերի բացասական հետևանքները պրակտիկայում մեծ չափով են իրենց արտահայտությունը գտել հատկապես այն պատճառներով, որ ստեղծվել էր նրա անձի պաշտամունքը։ Իսկ անձի պաշտամունքի պայմաններում տվյալ անհատի բնավորության բուն գծերն ու հատկանիշները, նրա սուբյեկտիվ որակները ստանում են շոշափելի նշանակու-

թյուն և մեծ չափով արգելակում են երկրի տնտեսական ու գաղափարական կյանքի առաջընթացը։

Մարքսիզմը գտնում է, որ սոցիալական սիստեմը, որքան էլ այն դրական բովանդակություն ունենա, հասարակական կյանքի առաջընթացի միակ համապատասխանող ուժը լինի, այնուամենայնիվ, չի կարող երաշխավորել իր բոլոր օղակների կատարյալ և անթերի գործունեությունը, առավել ևս՝ բոլոր քաղաքացիների հասարակական ու պետական պարտքի բավականաչափ գիտակցումը։ Հասարակական հարաբերությունների և ընդհանրապես արտադրության իրականացնողը մարդիկ են, սուբյեկտները, այդ պատճառով հասարակական կյանքի յուրաքանչյուր օղակ հիմնականում օբյեկտիվ բովանդակություն ունենալով հանդերձ, չի կարող իր վրա չկրել այն անհատների ինդիվիդուալ հատկանիշների դրոշմը, որոնք իրականացնում են տնտեսության, հասարակական կյանքի կողմից թելադրվող հնարավորությունները։ Միևնույն օբյեկտիվ պայմաններում գտնվող արդյունաբերական ձեռնարկությունների կամ կոլեկտիվ տնտեսությունների արտադրական տարբեր ցուցանիշները արդեն կենդանի կերպով վկայում են աշխատավորներին կազմակերպելու, մոբիլիզացնելու գործում գոյություն ունեցող տարբերությունների մասին։

Կոմունիստական հասարակարգը կարող է իր բոլոր հնարավորություններն իրականություն դարձնել, բացահայտել իր ողջ պոտենցիալ հարստությունը միայն այն ժամանակ, երբ մասսան, ժողովուրդը, յուրաքանչյուր անհատ գտնվում են նրա օբյեկտիվ պահանջների բարձրության մակարդակին, երբ նոր սոցիալ-տնտեսական սիստեմի տված օբյեկտիվ հնարավորությունները լրացվում են դրանք իրականություն դարձնելու սուբյեկտիվ ջանքերով։ Հենց այդ պատճառով էլ կոմունիստական հասարակարգի կառուցումը չի սահմանափակվում միայն նրա օբյեկտիվ կողմով՝ նյութական բազայի ստեղծումով։ Օբյեկտիվ աշխարհում իրականացվող հեղաշրջումն անհրաժեշտ է զուգակցել նաև սուբյեկտիվ աշխարհի՝ մարդկանց գիտակցության արմատական հեղաշրջման հետ։ Մարքսիստական դիալեկտիկային խորթ է գռեհիկ «էկոնոմիկական» մատերիալիզմի այն պատկերացումը, թե իբր կեցության փոփոխությանն ինքնաբերաբար հաջորդում է գիտակցության փոփոխությունը։ Նման նլակետն, ըստ էության, հանգեցնում է այն եզրակացության, թե տնտեսականը հասարակության առաջընթացի համար ոչ միայն որոշիչ, այլև միակ պատճառն է։ Այս կարծիքը մարքսիստական տեսության կողմից վաղուց է հաղթահարված, չնայած առանձին դեպքերում, պրակտիկայում, այն դեռևս շարունակում է իրեն զգացնել տալ։ Եթե իրոք այդպես լիներ, ապա կբացառվեր ամեն մի գաղափարական ու դաստիարակչական աշխատանքի անհրաժեշտությունը։

Գիտակցությունն իրոք կեցության հետևանքը, արդյունքն է, բայց այն հեռու է ամենուրեք և ամեն դեպքում հլու հնազանդ կեցությանը հետևելուց։ Գիտակցությունը հետևանք է միայն իր ծագման պրոցեսում, իր լինելիության մեջ, բայց ծնվելով ու կազմավորվելով՝ այն ձեռք է բերում հարաբերական ինքնուրույնություն, որի շնորհիվ իդեաները ունակ են դառնում ակտիվ կերպով ազդելու շրջապատի, միջավայրի, կեցության վրա։ Միաժամանակ այդ հարաբերական ինքնուրույնությունն է կեցության նկատմամբ գիտակցության պահպանողական լինելու գլխավոր պատճառն ու արմատը հանդիսանում. Հարաբերական ինքնուրույնությունն է սահմանափակում տնտեսա-



կան փոփոխությունների ներգործությունը հոգևոր աշխարհի վրա։ Անցյալը սովորաբար գիտակցության մեջ շատ ավելի կենսունակ է, քան էկոնոմիկայում։ Հեղաշրջումը տնտեսության բնագավառում ավելի արմատական ձևով ու կարճ ժամանակամիջոցում կարող է տեղի ունենալ, քան մարդկանց գիտակցության մեջ։ Մասնավոր սեփականությունը, օրինակ, վաղուց է վերացվել սոցիալիստական իրականության մեջ, մինչդեռ մասնավոր սեփականատիրական զգացմունքները դեռ շարունակում են պահպանվել սովետական որոշ մարդկանց գիտակցության մեջ։ Այստեղ է, որ վճռական նշանակություն է ստանում գաղափարական-դաստիարակչական աշխատանքը, իդեաների վրա անմիջապես իդեաներով ազդելը։

Գաղափարները ծնվում են հասարակական կեցությունից, բայց դուրս են մղվում նոր կեցության հետ միասին նաև նոր գաղափարների ակտիվ գործունեության շնորհիվ միայն։ Կոմունիստական գիտակցության մշակումը հնարավոր է դառնում ոչ միայն կոմունիստական շինարարության բազայի վրա, այլև ամենօրյա ու նպատակասլաց գաղափարական աշխատանքի շնորհիվ։ Անցյալի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ որոշ սահմաններում իմունիտետ են ձեռք բերում տնտեսական փոփոխությունների նկատմամբ։ Նրանք իրենց ծնող հողը չունեն մեր տնտեսության մեջ, այդ իսկ պատճառով նրանց հաղթահարումը կապվում է ոչ այնքան հետագա տնտեսական տեղաշարժերի, որքան դաստիարակչական գործունեության հետ։ Վերջինիս նշանակությունը հասկանալի է հատկապես մեր պայմաններում, երբ բուրժուական աշխարհն իր իսկ գոյությամբ, մթնոլորտը թունավորող իր հսկայական պրոպագանդիստական ապարատով ամեն կերպ աշխատում է թարմացնել ու կենսունակ դարձնել սովետական մարդկանց գիտակցության մեջ պահպանվող անցյալի մնացուկները։ «Իմպերիալիզմի գաղափարախոսները,— ասում է ընկեր Խրուշչովը ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ,— ամեն ինչ անում են պահպանելու և աշխուժացնելու բուրժուական բարքերն ու նախապաշարմունքները սովետական մարդկանց գիտակցության մեջ, որպեսզի արգելակեն մեր առաջընթացը դեպի կոմունիզմ»։

Գիտակցության հարաբերական ինքնուրույնության մասին է խոսում նաև այն փաստը, որ, երբեմն, մեր իրականությանն անհարիր հայացքներ ու տրամադրություններ են ունենում ոչ միայն հին սերնդի առանձին ներկայացուցիչներ, մարդիկ, որոնք ապրել են մասնավոր սեփականության իշխանության պայմաններում, այլև բուրժուական հասարակարգի հետ անմիջական ոչ մի առնչություն չունեցած որոշ երիտասարդներ։ Իրականում իդեաները զանազան պատճառներով ու ճանապարհներով ընդունակ են ոչ միայն անմիջապես մի սերնդից մյուսին փոխանցվելու, այլև կարող են գաղափարական սնունդ ծառայել տարբեր էպոխաների ու տարբեր սերունդների համար։ Ֆ. Էնգելսը, օրինակ, գտնում է, որ կրոնական պատկերացումները նույնիսկ նախապատմական բովանդակություն ունեն։ Բայց նրանք, իհարկե, ձևափոխվում, հարմարվում են ստեղծված նոր իրադրություններին ու պայմաններին։

Մեր սոցիալիստական իրականության մեջ տնտեսական ի՞նչ լուրջ հիմքեր կարող են ունենալ, ասենք, երբեմն նկատվող բյուրոկրատիզմը կամ խուլիգանությունը, կրոնական հավատալիքները կամ մասնավոր սեփականատիրական տրամադրությունները։ Սոցիալիզմը երբեք հող չի կարող ստեղծել խուլիգանության համար։ Կապիտալիզմի կործանման հետ միասին խուլիգանու-

թյունը դադարում է սոցիալական բովանդակություն ունենալուց: Մեր պայ-
մաններում խուլիգանը զուրկ է տնտեսական կամ սոցիալ-քաղաքական որևէ
նպատակից: Նրան նորմալ մարդկային կերպարանք տալը կապվում է ոչ թե
տնտեսական հետագա փոփոխությունների, այլ կոլեկտիվի, շրջապատի դաս-
տիարակչական գործունեության հետ՝ լինի դա համոզման, թե հարկադրման
մեթոդներով: Այդ տիպի երևույթները հող չունեն մեր պայմաններում, բայց
անզոր չեն: Նրանց ուժը տրադիցիայի և սովորույթի մեջ է, այն էլ բացասա-
կան տրադիցիայի ու բացասական սովորույթի մեջ, որոնք, ցավոք սրտի, դեռ-
ևս բավական կենսունակ են:
Կոմունիզմի կառուցման գործում սուբյեկտիվ գործոնի ակտիվացման
անհրաժեշտ օղակներից է հասարակական լայն շրջաններում միասնական
կոմունիստական բարոյական նորմերի արմատավորումը՝ իրավական նոր-
մերը աստիճանաբար ավելորդ դարձնելու ճանապարհով: Նախնադարյան
համայնքի քայքայումն ու դասակարգերի առաջացումը երկճեղքում առաջաց-
րին բարոյական աշխարհում: Իբրև հասարակության բոլոր անդամների հա-
մար հարկադիր ու պարտադիր նորմեր, շահագործողներն օրենքի աստիճանի
բարձրացրին իրենց բարոյական որոշ սկզբունքները:
Այս իմաստով դասակարգային հասարակարգում իրավունքի գոյությունը
խոստովանություն է նաև այն մասին, որ տվյալ հասարակությունը զուրկ է
ներքին բարոյական միասնությունից, որ աշխատավորների բարոյականու-
թյունը հակադրված է ոչ միայն շահագործողների բարոյականությանը,
այլև տիրապետող իրավական սիստեմին: Տարբեր բարոյական նորմերի
գոյությունը և բարոյականի ու իրավականի հակադրությունը վերա-
նում է միայն սոցիալիստական հասարակարգում, երբ իրավունքը նույն չա-
փով է դառնում ժողովրդի կամքի արտահայտությունը, որքան որ բարոյականը:
Իսկ կոմունիստական հասարակարգում մարդկանց հարաբերությունները
կարգավորող ղեկավար ուժ է դառնում բարոյական մոտիվը: Մարդկանց
ներքնաշխարհն այնքան է հարստանում, և անհատներն այնքան գիտակից են
դառնում, որ նրանց հասարակական պարտքի կատարման համար այլևս կա-
րիք չի լինում գործադրել օրենքը, կամ որևէ այլ արտաքին հարկադրիչ գործոն:
Ահա թե ինչու մեր պարտիան դաստիարակչական աշխատանքի խնդիրն է
համարում կոմունիստական բարոյական սկզբունքները դարձնել «սովետական
բոլոր մարդկանց ներքին պահանջմունքները»:
Բարոյական նորմերի կողմից իրավունքի դուրս մղման հետ միասին հար-
կադրանքի միջոցներն իրենց տեղը զիջում են հասարակական կարծիքին: Հա-
սարակական կարծիքը բարոյական կարգի գործոն է, էթիկայի նորմերի, այդ
չգրված օրենքների պահպանման ամենահիմնական լծակը: Հետևաբար այն
ուժեղ է այնտեղ և այն ժամանակ, ուր և երբ մարդկանց հարաբերությունները
կարգավորող ուժը բարոյական ազդակն է՝ անհատների պարտքի զգացումը
հասարակության առաջ, ուր բացակայում կամ երկրորդական նշանակություն
են ստանում իրավական հարաբերությունները, կամ երբ իրավունքի ֆունկ-
ցիան փոխարինվում է հասարակության կողմից համոզելու ու դաստիարակե-
լու ֆունկցիայով: Դա հնարավոր չէ մասնավոր սեփականատիրության ու նրա
անհրաժեշտ հետևանքի՝ ինդիվիդուալիզմի պայմաններում, երբ անհատի հա-
մար հոգ չէ, թե շրջապատն ինչ կարող է մտածել իր մասին, երբ կարևորը
անհատի անձնական բարեկեցությունն է: Իսկ այնտեղ, ուր սկզբունքորեն հաղ-



թահարված են ինդիվիդուալիզմն ու էգոիզմը, ուր անձնական կյանքը կոլեկ-
տիվից դուրս կորցնում է իր դրական բովանդակությունը, երբ էգոիզմի միջ-
նորումների փլատակների վրա կառուցվել կամ կառուցվում է ընդհանուր հե-
տաքրքրություններով շնչող կոլեկտիվի կենդանի օրգանիզմը, հասարակա-
կան կարծիքը ձեռք է բերում վճռական նշանակություն: Միայն այս պայման-
ներում է անհատը, շրջապատի կողմից մերժված լինելու դեպքում, կանգնում
իր խղճի դատաստանի առաջ: Սա մի դատաստան է, որից շատ ավելի դրա-
կան հետևանքներ կարելի է սպասել, քան ամենախիստ օրենքների կիրառու-
մից: Այդ նշանակում է, որ բարոյականը բարձր է իրավականից, որովհետև
առաջինն իր հիմքում ունի գիտակցումը, համոզմունքը, իսկ երկրորդը՝ ար-
տաքին հարկադրանքը, բռնությունը:
Արդեն կոմունիստական հասարակարգի կառուցման ժամանակակից
լտապում աստիճանաբար ջնջվում են իրավականի և բարոյականի սահման-
ները, անհատի գործունեության բարոյական վերլուծությունը, նրա գնահա-
տումը հասարակական նշանակության տեսանկյունից, մարդկանց հարաբե-
րություններում առավել մեծ չափերով գիտակցության ապավինելը ստանում
է վճռական նշանակություն: Իսկ մարդկային գործունեության մեջ անհատին
բնութագրող ամենակարևոր բնագավառը աշխատանքն է, ավելի ճիշտ՝ վերա-
բերմունքը աշխատանքի հանդեպ:
Մասնավոր սեփականության ու մարդու շահագործման վերացումով սո-
ցիալիզմը ռեալ հիմքեր է ստեղծում աշխատանքին վերադարձնելու այն վեհ,
ստեղծագործական բովանդակությունը, որին պարտական է մարդն իր մարդ-
կային էությամբ ու կուլտուրայի ողջ նվաճումներով: Մարդու մեջ վերստին
զուգակցվում են աշխատանք կատարելու երկու օրգանները՝ մկաններն ու
ուղեղը: Անհատը մեկընդմիշտ ազատվում է կապիտալիստական հասարա-
կարգին հատուկ «պրոֆեսիոնալ ապշացումից»:
Իր և ժողովրդի համար աշխատելու գիտակցումը, արտադրության գոր-
ծիքների կատարելագործման և աշխատանքային օրվա կրճատման շնորհիվ
աշխատանքի թեթևացումը, աշխատավորների նյութական դրության բարե-
լավումը, աշխատանքային պրոցեսի մեջ ստեղծագործական մոմենտ մտցնելը
և նման այլ գործոններ սովետական մարդկանց մոտ նոր վերաբերմունք են
դաստիարակում աշխատանքի նկատմամբ: Մարդիկ աշխատում են ոչ միայն
իրենց համար նյութական բարեկեցիկ վիճակ ապահովելու նպատակով, այլև
սկսում են աշխատել «հասարակության օգտին», «առանց վարձատրության
պայմանների»: Այդ նշանակում է, որ աշխատանքի նյութական խթանների
կողքին ձևավորվում են նոր, ավելի հզոր խթաններ՝ բարոյական, գիտակցական
խթանները, երբ մարդիկ աշխատում են ոչ միայն գրպանի, այլև հոգևոր բա-
վարարության համար. աշխատանքն աստիճանաբար դառնում է նյութական
շահից ազատ, առողջ օրգանիզմի կենսական պահանջ: Այս կարգի խթանների
հետ էր կապում Վ. Ի. Լենինը կոմունիստական աշխատանքի գաղափարը: Նը-
ման աշխատանքի, իբրև նոր, սոցիալական երևույթի, սկզբնավորողներն են
կոմունիստական աշխատանքի հարվածայինները: Նյութական շահագրգռվա-
ծության և բարոյական խթանների զուգակցումը աշխատանքային գործունե-
ության մեջ կոմունիզմի կառուցման էպոխայի կողմից առաջադրված պրոբ-
լեմ է, նոր մարդու, աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի ակնառու
վկայությունը: «Պարտիան,— ՍՄԿՊ XXII համագումարին տված զեկուցման

մեջ ասում է ընկեր Խրուշչովը,— Նյութական ու գաղափարական ազդակների զուգորդման մեջ է տեսնում այն հաստատ ուղին, որը տանում է և մեզ անպայման կտանի դեպի առատության ստեղծումը և ըստ պահանջմունքների բաշխումը, դեպի կոմունիստական աշխատանքի հաղթանակը»։ Նյութականը չի հանդիսանա կոմունիզմի քաղաքացու գործելակերպի շարժառիթն ու ելակետը, այլ, ինչպես նշվում է մեր պարտիայի նոր Ծրագրում,— «հասարակական բարօրության համար հոժարակամ կերպով և ըստ հակումների աշխատելու ներքին պահանջը» այդպիսին կդառնա։ Կոմունիստական հասարակարգում անձնական նյութական շահագրգռվածությունն իր տեղը կզիջի բարոյական խթաններին, իսկ հասարակական նյութական շահագրգռվածությունը միշտ կմնա։ Այս, անկասկած, ավելի զորեղ ազդակ է և այդ պատճառով աշխատանքի ավելի բարձր արտադրողականություն է ենթադրում, քան կարող է ապահովել անմիջական նյութական վարձահատույցի հետ կապվող մղումը։

Բայց ճիշտ չի լինի, արդեն մեր պայմաններում, անտեսել նյութական խթանը և ապավինել միայն բարոյական կարգի ֆակտորներին։ «Նյութական շահագրգռվածության սկզբունքն անտեսելը նշանակում է գործը վարել, ղեկավարվելով սուբյեկտիվ նկատառումներով, թռչել մի էտապի վրայով...»,—ՍՄԿՊ XXII համագումարում նշեց Ն. Ս. Խրուշչովը։ Կոմունիստական բրիգադների սկզբնավորման ժամանակ կատարվեցին նման հավասարարական փորձեր, նկատվեցին նյութական շահագրգռվածության անտեսման և հավասար վարձատրման դեպքեր։ Բայց պրակտիկան շուտով ցույց տվեց այդպիսի միջոցառումների վաղահասությունը։ Մեր պարտիան, ելնելով կոմունիստական շինարարության ժամանակակից ռեալ պայմաններից, սովետական քաղաքացիների գործունեության հիմքում դնում է նյութական շահագրգռվածության սկզբունքը։ Անհատի աշխատանքը դեռևս կապված է նյութական վարձահատույցի հետ, սակայն առաջինի բովանդակությունը երկրորդով չի սպառվում։ Այժմ մեր երկիրն ապրում է իր վերընթացի այն էտապը, երբ նյութական շահագրգռվածությունը պետք է զուգակցել բարոյա-գիտակցական խթանների հետ՝ առաջինը միջոց ծառայեցնել երկրորդի արմատավորման համար: Միաժամանակ բարոյական խթանների առաջացումը բաշխման բնագավառում փոխհատուցվում է համապատասխան սիստեմով։ Հայտնի է, որ մեզ մոտ ըստ կատարած աշխատանքի քանակի ու որակի բաշխման սկզբունքի հետ միասին, և նրա կողքին, ձևավորվում ու զարգանում է նաև ըստ պահանջի բաշխման սկզբունքը, որն արտահայտվում է ընդհանուր ու անվճար կրթության, ձրի բուժսպասարկման և այլ ձևերով։

Մարդու գիտակցական-բարոյական առաջադիմության այսպիսի նվաճումների պայմաններում ավելի սնանկ է հնչում ժամանակակից բուրժուական մըտածողների այն կարծիքը, թե իբր գիտա-տեխնիկական պրոգրեսը զուգակցվում է մարդու բարոյա-հոգեբանական ռեգրեսի հետ։ Ամերիկյան սոցիոլոգ Օգբորնի և նրա գաղափարակիցների կողմից հորինվել է, այսպես կոչված, «տեխնիկայից կուլտուրայի ետ մնալու» մասին տեսությունը, ըստ որի մարդկության առաջադիմությունը միակողմանի բնույթ ունի, իբր այն չի ընդգրկում կուլտուրայի, էթիկայի և ընդհանրապես հոգևոր աշխարհի բնագավառը։ Նրանց կարծիքով մարդու մեջ իշխում է նույն կենդանական բնազդային վարքը. մարդու «կենդանական բնության» ու «արդյունաբերական քաղաքակրթության» բացասական ազդեցության հետևանքով, իբր, մարդկությունը կանգնել է «բարոյական դեգրադացիայի» կամ «բարոյական ճգնաժամի» առաջ։ Նման սոցիոլոգներն ու բարոյագետները գտնում են, որ մարդկությունն այժմ էլ գտնվում է նույն նախնադարյան հորդայի վիճակում։ Տարբերությունը միայն այն է, որ, եթե նախամարդկանց մոտ գործ ունենք հասարակ ու ոչ մեծ հորդայի հետ, ապա ժամանակակից հորդան ավելի մեծ է ու մեքենայացված։ Բուրժուական մտածելակերպին անհասկանալի է մնում այն ճշմարտությունը, որ միակողմանի ու հակասական է ոչ թե ընդհանրապես մարդկության պրոգրեսը, այլ սոսկ նրա դասակարգային, մասնավորապես կապիտալիստական էտապը, այն հասարակարգը, ուր փողի կեղտոտ իշխանությունն անսահմանափակ կերպով տիրում է հասարակության անդամների մտքերին ու զգացմունքներին, ուր մարդկանց ամենանվիրական ու ինտիմ զգացմունքներն անգամ թարգմանվում են դոլարի լեզվով, ուր ամեն ինչի չափանիշը հարստությունն է, կապիտալը։ Այդ իսկ պատճառով այժմ կապիտալիզմը ապրում է ոչ միայն իր սոցիալ-տնտեսական, այլև գաղափարական ու բարոյական պարտության էպոխան։ Եվ հակառակը, կոմունիզմի հաղթանակը ոչ միայն ամենաառաջավոր ու ամենաարդարացի սոցիալ-տնտեսական հարաբերությունների հաղթանակն է, այլև մարդկանց լավագույն գիտակցական և բարոյական որակների հաղթանակը հետադիմականի, իր դարն ապրածի նկատմամբ։

Կոմունիզմը գիտակցական, բարոյական նորմերով ղեկավարվող հասարակարգ է։ Այսպիսի հասարակարգի ծավալուն կառուցման սկզբնավորումը վկայում է նոր մարդու, իբրև նոր սոցիալական երևույթի, ձևավորման մասին։ Ինչպես ասվում է պարտիայի XXII համագումարին Կենտրոնական Կոմիտեի հաշվետվության մեջ, սոցիալիստական հասարակարգի ստեղծած բոլոր արժեքներից ամենամեծ արժեքը նոր մարդը՝ կոմունիզմի ակտիվ կառուցողն է։ Այդ նոր մարդու կազմավորմամբ է սկսվում կոմունիստական բարոյականության, կոմունիստական գիտակցության, կոմունիստական քաղաքակրթության դարաշրջանը։

---

# ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՆՀԱՏԸ

Ա. ԱԴՈՅԱՆ

Սովետական մարդկանց հոգևոր պահանջմունքները բազմազան են։ Ի
թիվս այլ հարցերի, նրան հետաքրքրում է նաև անհատի ու հասարակության;
կոմունիզմի և անհատի առնչության հարցը։ Կոմունիստական և բուրժուական
գաղափարախոսությունների միջև մղվող պայքարում այսօր առանձնակի սրու-
թյամբ է շոշափվում անհատի ազատության և ինքնության հարցը։

Դեռ այն տարիներին, երբ նոր էր ձևավորվում գիտական կոմունիզմը,
բուրժուական աշխարհի վահանակիրներն ի միջի այլոց կոմունիստներին մե-
ղադրում էին այն բանում, թե իբր նրանք ոչնչացնում են անհատին՝ հանուն
հասարակության։ Հերքելով ռուտինայի ժրագլուխ պաշտպանների այդ լու-
տանքը, Մարքսն ու Էնգելսը գրել են. կոմունիստները երբեք չեն կամենում
ոչնչացնել «մասնավոր մարդուն», հօգուտ «ընդհանուրի» զոհել նրան։ Դա ղտա-
գույն ֆանտազիա է։ Կոմունիստներն առաջինն են բացահայտել անհատների
«ընդհանուր շահերի» առաջացման փաստը (Соч. том 4, стр. 227)։

Եվ բնավ զարմանալի չէ, երբ հակակոմունիզմի երդվյալ հրահրողներից
մեկը՝ Ջ. Ֆ. Դալեսը, նմանապես բարբաջում էր, թե ՍՍՌՄ-ում «առանձին ան-
հատի իրավունքը սրբազան չէ։ Էական է միայն նյութական բարեկեցությունը»
և այլն։ Սովետական ընթերցողը վաղուց գիտե այս կրկներգերի բուն նպա-
տակը՝ ամեն ինչ անել, վարկաբեկելու սոցիալիզմի նվաճումները։ Չէ՛ որ կա-
պիտալիստական աշխարհի ջատագովների դրոշին վաղուց գրված է՝ նպատակն
արդարացնում է միջոցը։

## ԱԿՈՒՆՔՆԵՐԻՑ

Ուտոպիական սոցիալիզմի նախակարապետ Թովմաս Մորը (1478—
1535 թթ.) համոզված էր, որ հասարակության բոլոր անդամների երջանկու-
թյան գրավականը մասնավոր սեփականության վերացումն է։ Քանի այն կա,
ո՛չ ճշմարտություն և ո՛չ էլ արդարություն կարող է լինել։

Իրավացի էր Սեն-Սիմոնը (1760—1825 թթ.), երբ հորդոր էր կարդում իր
աշակերտներին, շեշտելով, որ կապիտալիզմի փոխարինումը սոցիալիզմով՝
օրինաչափ երևույթ է։ Միայն վերջինիս հաստատումով մարդիկ կարող են եր-
ջանիկ ապրել։ Նա չէր տատամսում, որ նոր հասարակարգում բացառվելու են
պատերազմները և աշխարհում իշխելու է «խաղաղությունը, կարգ ու կանոնը,
սերը»։

Փութանցիկ զննելով իր ժամանակի մարդկանց առտնին կապերը, սկեպ-



տիկ Միշել Մոնթեն (1533—1592 թթ.) հստակորեն նշմարեց նրանց կենսավի-
ճակների հեղհեղուկ բնույթը, եզրակացնելով, թե որևէ անհատի ստացած
օգուտն այլ անձնավորություններին վնասելու գնով է ձեռք բերվում։

Ասպարեզ եկան և բուրժուական մտքի ականավոր ներկայացուցիչներ
Թովմաս Հոբսը (1588—1679 թթ.), Ջոն Լոկը (1632—1704), Ժան Ժակ Ռուսսոն
(1712—1778 թթ.), որոնք տեսականորեն «հիմնավորեցին» անհատի բացար-
ձակ ազատությունը կապիտալի աշխարհում, այն դիտելով որպես «բնական
ազատության» մի ներդաշնակ սիստեմ։ Սա արդեն քաղաքական ինդիվիդուա-
լիզմի թեորիական սրբագործումն էր ի պաշտպանություն հավելյալ արժեքի։

Սրանց հաջորդեցին XVIII դարի տնտեսական ինդիվիդուալիզմի՝ ֆիզիո-
կրատիզմի ներկայացուցիչները՝ Ֆրանսուա Քենեն (1694—1774 թթ.), Ժան
Կլոդ Հուրնեն (1712—1759 թթ.) և Դյուպոն դե Նեմուրը (1739—1817 թթ.),
որոնք պրոպագանդում էին այն միտքը, թե սեփականությունը մարդու օրգա-
նիզմի անտրոհելի մասն է, և որ ազատությունը կոչված է նպաստելու մարդու
հարստացմանը։ Սրանք մոլեռանդի կրքոտությամբ պաշտպանում էին իրենց
փայփայած նշանաբանը՝ Laissez faire, laissez passer. (Թողեք անեն, ազատ թո-
ղեք)։ Հետևաբար, նորություն չէ ամերիկյան հրապարակախոս Սուլցբերգերի
այն պնդումը, թե ազատություն՝ նշանակում է ինդիվիդուալիզմ։

Եվ ի՞նչ։ Կիրառելով անհատի «ազատության» դեղատոմսը, կապիտալիզ-
մի պաշտպանները չէին կարող չնկատել, որ հարստության և աղքատության
անդունդը խորացավ անհատի ազատության դրոշի ներքո։ Սակայն դա չէր
խանգարում ինդիվիդուալիզմի մոլի քարոզիչ Մ. Շտիրներին, հարձակվելով կո-
լեկտիվիզմի վրա, ասել. «Թող որ կորչի այն ամենը, ինչ որ իմը չէ։ Դուք կար-
ծում եք, թե ինձ առնվազն մտահոգում է «բարի՞քը»։ Արժե՞ խոսել բարու և
չարի մասին։ Ինքս եմ իմ մտահոգության առարկան, իսկ ես ոչ բարի եմ և ոչ
էլ չար։ Թե՛ մեկը և թե մյուսն ինձ համար անիմաստ են... ինձ համար ինձ-
նից բացի ոչինչ չկա» (М. Штирнер, Единственный и его собственность,
том I, стр. 203, 1907 г.)։

Մեր դարի բուրժուական ինդիվիդուալիզմի երկրպագուների բազմահատոր
գրքերի նման կետը՝ անտածին շահագործման վրա հիմնված հարաբերու-
թյունների հավերժացումն է, թեև բավականին նուրբ ձևերով։ Հարկավ, այժմ
այնքան էլ հարմար չէ ասել, թե աստված մարդկանց ստրկության է դատա-
պարտել նրանց գործած մեղքերի համար և ստրկության դեմ պայքարողները
պայքարում են աստծու դեմ։ Քրիստոնեական եկեղեցու հայր Ավգուստինի այս
խոսքերից որքա՞ն հեռու են գնում արդի էկզիստենցիալիզմի* ներկայացուցիչ
Ժ. Պ. Սարտրը, երբ ասում է. «Մարդն այն է, ինչ որ ինքն է իրեն դարձնում»։
Այստեղից հետևում է այն սխալ ըմբռնումը, որ մարդը հասարակական հարա-
բերություններից զերծ մի բան է. բանվորը շահագործվում է իր մեղքով, որ
միլիոնատերն իր անձնական ջանքերով է հասել այդ բարձրությանը։

Անջատելով անհատին հասարակությունից, «ԵՍ»-ը «ԴՈՒ»-ից, վերոհիշյալ
հոսանքի նախահայր Քյորկեհորը ուսուցանում է սոցիալական անարդարու-
թյան դիմադրողներին, թե. «Միայն մահվան մեջ մենք իսկական կեցություն

---

* էկզիստենցիալիզմ (լատիներեն՝ գոյություն ունենալ). բուրժուական փիլիսոփայության
խիստ ռեակցիոն ուղղություններից մեկը, որը ջանում է մասսաներին վարակել ունայնության,
բարոյազրկության և անկումայնության ախտով, հեռու պահել նրանց ռևոլյուցիոն պայքարից։

ձեռք կբերենք»: Իսկ սրա աշակերտ Կամյուն, ծաղկեցնելով անկումայնության և
հասարակական փակուղու այդ ողորմելի շիլաշփոթը, աշխատավորության հա-
մառ պայքարը երջանիկ կյանքի համար որակում է սիզիֆյան (ապարդյուն)
ջանքեր և փիլիսոփայության միակ պրոբլեմը ինքնասպանությունն է համա-
րում:

Ուշագրավ է, որ արդի բուրժուական ռեակցիոն, անարխիստական, նիցշե-
լիստական, հակադեմոկրատական, հակահասարակական դպրոցիկները խո-
սում են վերացական անհատի անունից, ուզում են «փրկել» կործանումից ան-
հատին: Իրենց ընթերցողներին օրորելով կյանքի ունայնության էկլիզիաստ-
յան հնամենի ճոճքում, իմպերիալիզմի պաշտպանները միաժամանակ մի մո-
լություն ունեն՝ վարկաբեկելու մարքսիստական հումանիզմը, կոլեկտիվիզմը,
որն անհատի փրկության միակ ուղին է:

## ԱՆՀԱՏԻ ՈՂԲԵՐԳՈՒԹՅԱՆ ԲՈՒՆ ԻՄԱՍՏԸ

Լինել արմատական,— ասում էր երիտասարդ Մարքսը,— նշանակում է
իրը ճանաչել իր հիմքում: Սակայն մարդուն ճանաչելու համար պետք է գիտե-
նալ նրա կյանքի հասարակական օրրանը, որի պայմաններում նա հենց հասա-
րակական հարաբերությունների կենդանի մարմնացումն է: Եվ ահա, զննելով
հասարակական անհատին հավելյալ արժեքի աշխարհի բազմաթիվ կապերում,
նա գտավ, որ հասարակական-տնտեսական հանգամանքների ճնշման ներքո
անհատը ծվատվում է, մասնատվում, դադարում ամբողջական լինելուց: Քանի
որ մասնավոր սեփականության օրենքով աշխատանքի արդյունքը և նրա վա-
ճառքից ստացված գումարը պատկանում են կապիտալիստին, ապա ուրեմն
փողը, հարստության այդ հզոր ուժը նրա ձեռքին դառնում է բանվորների կե-
ղեքման միջոց: Բանվորի արտադրած ապրանքներն ու արժեքները (կապիտա-
լը) իրականում դիմակայում են նրան որպես օտար ուժ:

Այսպիսով, սոցիալական հարատեւ հակամարտությունների սկզբնաղ-
բյուրը մասնավոր սեփականության վրա հիմնված «օտարված աշխատանքն»
է, որի էությունն այն է, որ «...բանվորը որքան շատ է արտադրում, այնքան
քիչ կարող է սպառել. նա որքան շատ արժեքներ է ստեղծում, այնքան ինքն է
արժեզրկվում և կորցնում իր արժանիքները: Որքան նրա արդյունքը լավ է
ձևավորված, այնքան բանվորը շատ է խեղված: Նրա ստեղծած իրը որքան
կուլտուրական է, այնքան նա նմանվում է բարբարոսի: Որքան հզոր է աշխա-
տանքը, այնքան անզոր է բանվորը: Որքան իմաստալի է նրա աշխատանքը,
այնքան նա շատ է ենթարկվում մտավոր ամայության և բնության գերու-
թյան» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранных произведений, стр. 562):

Ահա թե որտեղ պետք է որոնել անհատի, որպես կոնկրետ մարդու, պատ-
մական ողբերգության հիմքերը: Բանվորն իր արտադրանքին վերաբերվում է
որպես օտարին պատկանող առարկայի կամ արժեքի: Մինչդեռ կապիտալիս-
տը բանվորին դիտում է որպես իր կապիտալը գործադրող կենդանի շարժիչի,
որի տնօրենն ինքն է: Իրականում բանվորը պատկանում է կապիտալիստին,
նախքան նրան իր աշխատուժը կվաճառի, գրում է Մարքսը: Հարստությունն
արտադրվում է բանվորի աշխատանքով, սակայն այն յուրացնում է իրավա-
կանորեն ազատ բանվորին վարձողը: Այս պարագաներում է, որ «բանվորի
տնտեսական ազատությունը միաժամանակ թե՛ իրագործվում է և թե ազոզ-



վում նրա ինքնավաճառքի պարբերական նորոգման շնորհիվ» (Կ. Մարքս, Կա-
պիտալ, հ. I, էջ 545—546):

Ինչպես տեսնում ենք, բանվորի ձևական ազատությունն այն օբյեկտիվ
քողն է, որը մթագնում է օտարված աշխատանքի հասարակական բովանդա-
կությունը կապիտալի օրոք: Այստեղ է, որ փողը հանդիսանում է մարդկու-
թյան հզորության օտարված կատարյալ ձևը, որն իբրև հասարակական վիթ-
խարի ուժ, «դառնում է մասնավոր ուժ»: Այժմ այդ բնույթի սակավաթիվ մաս-
նավոր ուժերն ագահորեն կեղեքում են անհատականությունից ձերբազերծված
միլիոնավոր վարձու մարդկանց:

Անհատի դժբախտության կարևորագույն պատճառների հիմքում ընկած
է և աշխատանքի բաժանումը, որը հասարակական պրոգրեսի խոշորագույն
խթաններից մեկն է եղել: Պատմական այն մոմենտից սկսած, երբ տեղի ու-
նեցավ աշխատանքի բաժանումը մարդկանց միջև, սկիզբ առավ նրանց միա-
կողմանի անձնավորություն դառնալու հազարամյա պրոցեսը:

Աշխատանքի բաժանման դեպքում մեկի նախաձեռնությունը մյուսին է
վնասում, մեկի թշվառությունը մյուսին է հարստացնում:

Այսպես է կապիտալի աշխարհում անհատների իրական վիճակը: Մրցման
քաոսում ոմանք շահում են, իսկ շատերը կորցնում: Կորցնելով արժեքներ, ան-
հատը կորցնում է այն հասարակական ուժը, որը փողի ձևով մեկ ուրիշն է
գրպանում: Անողոք մրցումը մեկուսացնում է անհատներին, բորբոքում նրանց
ատելությունը և կռվի հանում իրար դեմ: Անհատների ձգտումները փոխա-
դարձաբար դառնում են ճնշող և վանող ազդակներ: Ով կարողանում է մեծ չա-
փերով առինքնել ուրիշների ստեղծածը, նա էլ թելադրում է իր կամքը բոլորին:
Հասարակական ու անհատականորեն շեշտված տաղանդները են ստիպված
դառնում են կապիտալի սպասավորներ: Սոցիալ-պատմական այս պայման-
ներում է, որ մեկն ուտելով կրմեռնի, մեկն՝ աշելով: Այսպես կոչված «ազատ
աշխարհում» է, որ ժողովուրդը հյուսել է իր արտասրալի հառաչանքը՝
աշխարհը ծով, մեզ համար սով:

Իրոք, երբևէ տնտեսական անհրաժեշտության, ֆինանսական կապիտալի
շահարկումներով հագեցած բիրտությունն այնպես չի ճզմել անհատին, ինչպես
դա կատարվում է այժմ կապիտալի աշխարհում: Բերենք մեր միտքը հաս-
տատող լոկ մի փաստ: Այս տարվա ապրիլի 1-ի համարում «Известия»-ն
տպագրեց Մարտի Լառնիի «Գաստոն և Բամբո» ճշմարտացի ակնարկը: Ամե-
րիկյան տաղանդավոր նկարիչ Գաստոն Դյուրան (որը հանճարեղ Վան Գոգի
համոզված հետևորդն է), տարիներով ապրում է թշվառության մեջ, որովհետև
նրա ճշմարտացի արվեստը քամահարվում է իր ժամանակակիցների կողմից:
Եվ ահա, մի անգամ նրա Բամբո կոչված կապիկը ձեռքը գցելով տիրոջ վրձինը՝
սկսում է այլանդակորեն ծեփել մաքուր կտավները: Վրա է հասնում Գաստոնի
«երջանկությունը»: Ամերիկացի քաղքենիներն այժմ մեծ գումարներ են վճա-
րում Գաստոնին, Բամբոյի «շեդևրների» համար: Կապկի խզբզանքներով բա-
վարարելով իր գնորդներին, նա, համենայնդեպս, համառորեն շարունակում է
ռեալիստական արվեստի կտավներով լցնել իր արվեստանոցը:

Այս կարգի արատներ ի նկատի ուներ Մարքսը, երբ նշում էր. բուրժուական
աշխարհում անհատը հանդես է գալիս որպես «իրեն լրիվ կորցրած» մարդ,
որպես ոսկու սորկության բարդ մեխանիզմի մի օղակ: Սրա փայլուն ապա-

ցույցն է թեկուզ Չարլի Չապլինի «Նոր ժամանակներ» հոյակապ կինոնկարը,
որի հերոսը կապիտալիզմի զոհ-անհատն է։
Իր ապրած և տեսած ողորմելի ազատության դեմ ծառացավ Կ. Մարքսը և
ազատագրական մեծ մարտերի իր ճանապարհով տարավ պրոլետարիատին։
Նա բանվոր դասակարգին սովորեցրեց ոչնչացնել այն իրավակարգը, որտեղ
բանվորն իր աշխատանքում ժխտում է իրեն իբրև մարդ-անհատի, ուր նա
դժբախտ է, որովհետև հյուծում է իր ֆիզիկական և մտավոր եռանդը։ Նրա
աշխատանքը հարկադրական է, զոհաբերություն, ինքնազոհում, հօգուտ կա-
պիտալի ազատ զարգացման։ Լինելով իր դարի մեծագույն և կատարյալ ան-
հատականություն, Մարքսը կոչ արեց բոլոր ճնշվածներին տապալելու էգոիզմի
այդ աշխարհը։
Վարձվելու ու վարձելու ազատությունը կամավոր սարկություն է։ Որքան
շատ են կրկնվում վարձվելու հարաբերությունները, այնքան շատ է զրկվում
բանվորն իր բուն ազատությունից։ Այստեղ չի կարելի անտեսել և հարցի մյուս
կողմը։ Այն, որ աշխատանքի բաժանումը մեծապես խթանեց կապիտալիզմի
արտադրողական ուժերի զարգացմանը։ Կապիտալիզմը «...պոկելով անհա-
տին ճորտատիրական բոլոր կապանքներից՝ նրան դրեց շուկայի վերաբերմամ
ինքնուրույն հարաբերությունների մեջ, դարձնելով նրան ապրանքատեր (և որ-
պես այդպիսին՝ նրան հավասար դարձնելով ամեն մի այլ ապրանքատիրոջ), և
ստեղծեց անձնական զգացմունքի բարձրացում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 1,
էջ 527։ Ընդգծումը մերն է.—Ա. Ա.)։
Անհատների բողոքը կեղեքման բոլոր ձևերի դեմ, նրանց կազմակերպվե-
Անհատների բողոքը կեղեքման բոլոր ձևերի դեմ, նրանց կազմակերպվե-
լու և քաղաքականապես լուսավորվելու հնարավորությունները ստեղծվեցին
կապիտալի գերիշխանության պայմաններում։ Սակայն նույն այդ պայմաննե-
րում է, որ անհատը, հուսալքված անհավասար կռվում, պոետի շուրթերով
ասում է.

Մարդկանց մոտ պետք է աչալուրջ լինես, միշտ ոտքի վրա և սուրը՝ ձեռիդ,
Որ քեզ չլկեն, քեզ չճոշոտեն թե՛ բարեկամդ և թե՛ թշնամիդ։

«Անձնատի զգացմունքի բարձրացումը» մինչև դասակարգային շահերի ըմ-
բռնումը և կապիտալի տապալման անհրաժեշտության գիտակցումը, նմանա-
պես լինում են բուրժուական կարգերի շրջանակներում։ Լենինը քանիցս ընդ-
գծել է այն հույժ կարևոր միտքը, որ «Կապիտալիզմի առաջադիմական նշա-
նակությունը հենց այն է, որ նա խորտակեց մարդու կյանքի նախկին նեղ պայ-
մանները, որոնք մտավոր բթություն էին ծնում և հնարավորություն չէին տա-
լիս արտադրողներին իրենց բախտն իրենց ձեռքն առնելու...» (Վ. Ի. Լենին,
Երկեր, հ. 1, էջ 525։ Ընդգծումը մերն է.—Ա. Ա.)։
Հետևաբար, կապիտալիզմի պրոգրեսիվ կողմը, նախորդ ֆորմացիայի հա-
մեմատությամբ, այն է, որ ծնելով մարդկության ազատարար բանվոր դասա-
կարգին, միլիոնավոր անհատներին ճզմելով իր կաթսայում, միաժամանակ
բերում է այն համոզման, որ ճզմված անհատները մեծ ու վճռական ուժ են,
երբ կազմակերպված են։ Եվ միայն այդ կոլեկտիվ ուժով անհատը կարող է
երբևէ ազատագրվել։ Նրա միայնակ, անարխիստական, բլանկիստական փոր-
ձերը մատնվել են պարտության։ Երբ այսպես ենք ըմբռնում անհատի ու հա-
սարակության փոխհարաբերության հարցը, դժվար չէ դուրս հանել այնպիսի
մի տարրական հարցից, ինչպիսին կամքի ազատությունն է։





Ազատության հասկացությունն իր էվոլյուցիան ունի։ Ամեն դասակարգ
այն ըմբռնում է իր շահերի համեմատ։ Պոմպեոսի ու Սպարտակի, ավատի ու
ճորտի, Ռոքֆելլերի ու բանվոր Ջոնսոնի մոտ այդ ըմբռնումները ծայրաթեեր
են, մեկը մյուսին հերքող։ Սակայն որքան մարդկությունը թևակոխում է սո-
ցիալական հանրակեցության ավելի բարձր աստիճան, այնքան ազատության
ըմբռնումը մոտենում է օբյեկտիվ ճշմարտության ավելի բարձր մակար-
դակի։ Անհերքելի է, որ «...կուլտուրայի ասպարեզում արված յուրաքանչյուր
առաջխաղացում դեպի ազատություն տանող մի քայլ էր հանդիսանում»,—
ասում է Ֆ. Էնգելսը։ Այսպիսով, ազատությունը պատմական անխուսափելի
զարգացման հետևանք է։
Բանն այն է, որ ազատության բուրժուական ըմբռնումը պայմանավորված
լինելով հավելյալ արժեքի ու շահույթի հարաբերություններով, իր էությամբ
հանդիսանում է դրանց արդարացումը, մանավանդ, որ այստեղ մարդկանց
անձնական կապերն իսկապես կտրված են և դրսևորվում են առնվազն իբրև
անձնական հարաբերություններ։ Ահա թե որն է բուրժուական դեմոկրատիայի
պատրանքի նյութական հիմքը։
Մարքսիստական հասկացությամբ, ազատությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ
բնության և հասարակության օբյեկտիվ օրենքների իմացություն ու դրանք
հանրային նպատակներին ծառայեցնելը։ Կամ, ինչպես Ֆ. Էնգելսն էր ասում,
կամքի ազատությունը՝ գործիմացությամբ որոշումներ կայացնելու մեր ընդու-
նակությունն է։ Պատմության հարուստ փորձով միլիոն անգամ ապացուցված
է սա։
Որքան տարածվում է և խորանում կոմունիզմի հմայքը կապիտալի երկըր-
ների աշխատավորության շրջաններում, այնքան բուրժուական գաղափարա-
խոսները նենգամտորեն են չարաշահում ազատություն հասկացությունը։ Ազատ
ձեռնարկատիրության հավատարիմ ծառաները ազատություն են համարում՝
անազատագրված Կուբայում դեսանտ իջեցնելը, սևամորթներին լինչահարելը,
ԱՄՆ-ի կոմպար-
տիան օրենքից դուրս հայտարարելը և նրա պարագլուխներին բանտերում
տանջահար անելը։
Շատերն են այժմ հասկանում, թե ինչպիսի հրեշային «բարիքներ» է իր
հետ բերել իմպերիալիստական մարդակուլների փառաբանած ազատությունը։
Իսկ որ շատերն էլ չեն հասկանում, դա իր օբյեկտիվ պատճառներն ունի
կյանքում։ Բանն այն է, որ «...բուրժուազիայի տիրապետության ժամանակ
անհատներն ավելի ազատ են երևում, քան նրանք անցյալում էին, որովհետև
նրանց կենսապայմանները իրենց համար պատահական են. իրականում
նրանք... նվազ ազատ են, որովհետև ավելի շատ են ենթակա իրային ուժին։
Անարգել օգտվելու այդ իրավունքը, որոշակի պայմանների շրջանակներում,
մինչև օրս պատահականությունը կոչել է անձնական ազատություն»։
(К. Маркс, Ф. Энгельс, Сочинение, том III, стр. 76—77):
Բուրժուական իրականության այս դիպուկ բնորոշումը լիովին արտացո-
լում է այն թեական և խաբուսիկ ազատությունը, որն այժմ իբրև հաշիշ հրամցը-
նում են աշխատավորներին կապիտալի գաղափարախոսները։
Հանրահայտ է, որ ահա երկու դար է, ինչ բուրժուական մտածողները խը-

ճղճված են ազատության և անհրաժեշտության, հասարակության և անհատի
աղաղակող հակասության ոստայնում և չեն կարողանում դուրս հանել այն
փաստից, որ ազատությունը վերացական «մարդու» ատրիբուտը չէ։
Փոխանակության ծայրահեղ զարգացման հետևանքով արդի կապիտա-
լիստական երկրներում մարդկանց անձնական կախման կապերը առաջ-
վանը չեն, որովհետև փողը, որպես հասարակական իշխող ուժ և կապ,
թաղված է տիրոջ գրպանում որպես բանկի չեկ։ Բուժնետիրական ընկե-
րությունների խաբուսիկ դեմոկրատիզմը հազարավոր մարդկանց թվում
է իրական. նրանք կարծում են, որ իրենք իբրև փոխանակողներ (գնող-
ներ ու վաճառողներ) հավասար են ու անկախ։ Չէ՞ որ նրանց գրպաններումն
էլ կա դույզն այն կապիտալից, որն իր ահռելի ուժով հիմարացրել է մարդ-
կանց։ Հոգ չէ, որ դա պատրանք է, բայց և այնպես մարդն ազատ է երազելու,
թե մի օր կհասնի Մորգանին կամ Մելոնին։ Հարցն այն է, որ մարդկանց անձ-
նական անկախությունը, կապիտալի իշխանության ոլորտում, խարսխված է
նրանց մեծապես աճող իրային կախվածության վրա։ Ահա թե ինչու Մարքսը
մարդկային պատմությանը մոտենալով այդ տեսանկյունից, այն դիտում էր
իբրև անցում անհատի անձնական և իրային կախումից՝ լիակատար ազատ
անհատականության:
Ընդգծելով ազատության գաղափարի հսկայական դերը պատմության մեջ,
մարքսիզմն այն միշտ դիտել է իբրև դասակարգային ոգորումների ու պայքա-
րի քաղաքական դրսևորում։ Այդ հասկացության քննարկումը ժամանակից
և պատմական կոնկրետ միջավայրից դուրս՝ ֆիկցիա է։ Ինչո՞ւ, որովհետև
դրա բովանդակությունը միշտ էլ առնչվում է մարդկանց նյութական շահերի
շտեմարանից։ Մենք բուրժուական աշխարհի ազատությունը կեղծ ենք համա-
րում այն պատճառով, որ նրա բուն հիմքը կապիտալի մենաշնորհն է: Երբ
անգլիական բուրժուազիայի շահերը պահանջում էին, նա զինված ինտերվեն-
ցիայով ջանում էր խեղդել ամերիկյան ռևոլյուցիան։ Իսկ այսօր, երբ նրա շա-
հերն են թելադրում, նա միջազգային ռեակցիայի պարագլուխ ԱՄՆ-ի մոնո-
պոլիստների պարտնյորն է։ Սա ևս «ազատության» յուրովի կիրառում է։
Յուրաքանչյուր անհատ ո՛չ միայն հայրենի բնության և հասարական
հարաբերությունների սինթեզն է, այլև իր գաղափարներով ու տրադիցիաներով
կապված է և անցյալի հետ։ Ուրեմն, անհատը լոկ իր արդի միջավայրի հասա-
րակական հարաբերությունների մեխանիկական պարզ հանրագումարը չէ,
այլև դրանից բավականին տարբեր մի բան։ Եվ, եթե այդ անհատը գիտակցում
է ազատության նվաճման անհրաժեշտությունը, նա ի վերջո կարիք է զգում
միանալու իր նմաններին սոցիալական անարդարության դեմ մաքառելու հա-
մար։
Վեր է կասկածից, որ անհատի հոգեկան հարստությունը պայմանավոր-
ված է նրա հասարակական հարաբերությունների հարստությամբ։ Մարքսյան
այս թեզը վաղուց հաստատվել է ռևոլյուցիոն փորձով և ողջ կուլտուրայի
զարգացմամբ։
Ըմբռնելով իր պատմական միսիան, ռուսական պրոլետարիատը լենինյան
պարտիայի կոչով կանգնեց ամբողջ աշխարհի կեղեքվողների ազատագրա-
կան պայքարի գլուխ։ Պատմության մեջ առաջին անգամ անհատն այստեղ ճա-
շակեց ազատության քաղցրությունը։ Ասում ենք առաջին անգամ, որովհետև իր
գոյության արշալույսին ևս մարդը ենթարկվել է բնության ահալի ուժերին։



Դարերով մաքառելով բնության և սոցիալական կաշկանդումների դեմ, մարդը
քայլ առ քայլ անհրաժեշտությունը վերածել է ազատության։ Փաստորեն պատ-
մությունը հանդիսանում է անհրաժեշտության և ազատության մի կծիկ, որի
հանգույցների քանդումը հասարակական պրոցեսի մեծ աստիճաններն է նշա-
նավորում։
Թախծող, երազող, բողոքող, խորհող և կեղեքվող անհատին միայն պրո-
լետարիատն է ի վիճակի ամոքելու։ Ուստի պատահական չէ, որ բուրժուական
կարգերում հազարավոր ազնիվ, խոր և ճիշտ մտածողներ հարում են կոմու-
նիզմին։ Ինչո՞ւ։ Որովհետև սեփական փորձով և ՍՍՌՄ օրինակով համոզվում
են, որ անհատի ստեղծագործական ուղիները տանում են դեպի կոմունիզմ։
Բնականոն պետք է համարել, որ կոլեկտիվի թագավորությանն են ձգտել և ձգ-
տում են այնպիսի համաշխարհային մեծություններ, որպիսիք են՝ Անատոլ
Ֆրանսը, Պաբլո Պիկասսոն, Ժոլիո Կյուրին, Դավիդ Սիկեյրոսը և ուրիշներ։
Այժմ արդեն շատ ականավոր անհատներ կապիտալի աշխարհում ըմբռ-
նում են անհատի ողբերգության պատճառը և հարում են Մարքսի ու Էնգելսի
ավելի քան մեկ դար առաջ արտահայտած մտքին՝ միայն պրոլետարիատն է ի
վիճակի (որը զրկվել է ինքնագործունեությունից) լիովին ապահովելու իր ան-
սահմանափակ ինքնագործունեությունը: Անցյալում բոլոր առաջխաղացում-
ների ժամանակ անհատների մասսան ենթակա է եղել արտադրամիջոցներին։
Իսկ երբ պրոլետարիատն է տեր դառնում արտադրաուժերին, վերացնելով մաս-
նավոր սեփականությունը, փոխվում է պատմության ընթացքը։ Միայն զար-
գացման այդ աստիճանի վրա անհատների ինքնագործունեությունը համընկ-
նում է նյութական կյանքին, որը համապատասխանում է ամբողջական ան-
հատների բարգավաճմանը։ Պատմության մեջ առաջին անգամ աշխատանքը
վերածվում է ինքնագործունեության (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч.
том IV, стр. 58):
Ամբողջ մարդկության աչքի առաջ ՍՍՌՄ-ում փայլուն կերպով լուծվեց
անհատի պրոբլեմը, լուծվեց ճիշտ այնպես, ինչպես մարքսիզմի հիմնադիրնե-
րը գրել են. մասնավոր սեփականության վերացումը ռեալ հիմքեր է ստեղծում
աշխատավորների միավորման համար։ «Անհատը միայն կոլեկտիվում կա-
րող է ձեռք բերել այն միջոցները, որոնք հնարավորություն են ընձեռում նրա
ունակությունների զարգացման համար, և, հետևաբար, միայն կոլեկտիվում է
հնարավոր անհատի ազատությունը» (Նույն տեղը, էջ 65։ Ընդգծումը մերն է.—
Ա. Ա.)։
Թե ինչի է ունակ ազատագրված անհատը, երևում է սոցիալիզմի կառուց-
ման մեր պրակտիկայից։ Ձուլվելով կոլեկտիվի ընթացքին, սովետական քա-
ղաքացին ազատությունը գործադրում է թե՛ իր և թե կոլեկտիվի երջանկության
համար։ Իր կոլեկտիվի օգնությամբ և նրա հետ դաշն, նա ստեղծում է իր զար-
գացման հարուստ բազան։ Գիտության, տեխնիկայի, կուլտուրայի մեր մեծ
նվաճումները այդ են ապացուցում։

## ԻՆԴԻՎԻԴՈՒԱԼԻԶՄ, ԹԵ՞ ԱՆՀԱՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Բուրժուական երկրների պրակտիկան ցույց է տալիս՝ որքան շատ է ոտ-
նահարվում մարդկանց անհատականությունը, այնքան շատ են խոսում ան-
հատի «սրբազան իրավունքի», «բարձրագույն արժանիքների», «անտրոհելի

կամքի» մասին: Մեզ համար անկասկած է, որ այդ օվսանաններն ի փառս վերացական անհատի, մատնում են կոնկրետ անհատի ծանր վիճակը, նրա հոգու տագնապալի փակուղին: Բուրժուական անկումայնության և ունայնամտության մոլի պրոպագանդիստ Հեյտեգերը սանձարձակ էգոիզմին «տեսական» հիմքեր է տալիս, ասելով. «լինել աշխարհում... նշանակում է լինել միշտ ճանուն սեփական անձի»: Եթե ամեն ինչի հիմքում սեփական անձի օգուտն է դրվում, դա արդեն բուրժուական ինդիվիդուալիզմի խնկարկումն է:

Էկզիստենցիալիզմի մեկ այլ ներկայացուցիչը՝ Կ. Յասպերսը, որն իր միսիան է համարում արևմտյան աշխարհի հուսալքվածների վերքերին սպեղանի գնելը, հետևյալ կերպ է քարոզում էգոիստի ու լքվածի հավատո հանգանակը. «Որքան կատարյալ եմ ընկալում աշխարհը, այնքան ավելի միայնակ եմ զգում ինձ այս աշխարհում, որը օտար լինելով, չի կարող սփոփանք բերել»: Ուրիշ ի՞նչ պիտի ասեր այս փիլիսոփան, որը սոցիալիզմի համաշխարհային երթից խուճապահար խոստովանում է, որ եթե Արևմտյան Գերմանիայից «ամերիկացիք հեռանան, մենք կորած ենք»: Հիրավի, նա սփոփվելու հիմքեր չունի «օտար աշխարհում»:

Թող որ իմպերիալիզմի տրուբադուրները ինքնասպանության մեջ որոնեն անհատի փրկությունը, թող որ սոցիալիզմի վիթխարի հասումները «սիզիֆյան ճիգեր» հորջորջեն նրանք. միևնույն է, կապիտալի և ամեն կարգի կեղեքման շղթաները փշրած սովետական ժողովուրդն աշխատանքը վերածում է ինքնագործունեության և դրանով իսկ իր ուղիով տանում աշխարհի մարդկությանը:

Անհրաժեշտ է նշել, որ ֆեոդալական հասարակության կապանքների դեմ պայքարելիս բուրժուական ինդիվիդուալիզմը հանդես եկավ որպես պրոգրեսիվ բողոք իր դարն ապրածի ու կրածի դեմ: Սակայն իշխանությունը նվաճելուց հետո այն հետզհետե դարձավ շահագործման արդարացման թեորիական հիմնավորման, մասսաների ռևոլյուցիոն նախաձեռնության և նրանց սոցիալական դիմազրկման միջոց: Լինելով սոցիալիստական շարժման թշնամի, այն սրբազան է համարում մի բան՝ մասնավոր սեփականության և կեղեքման ազատությունը: Ահա թե ինչու ինդիվիդուալիզմը իմպերիալիզմի պաշտպանության զենքերից մեկն է բուրժուազիայի ձեռքին:

Ճիշտ էր Գ. Վ. Պլեխանովը, երբ ասում էր, թե «Ինդիվիդուալիզմ ասելով հասկանում ենք «Ես»-ի այն ձգտումը, որն իր վրա բուրժուական հարաբերությունների կնիքն է կրում: Ինդիվիդուալիզմը նեղ է ու միակողմանի, ինչպես նեղ է ու միակողմանի բուրժուական հայացքը մարդկային «Ես»-ի զարգացման նկատմամբ» (Литературное наследие сбор. III, стр. 207): Այդ նեղության, միակողմանիության, աբսուրդի հասնող ինդիվիդուալիզմի վարակով տոգորված Նիցշեն կարող էր ասել, թե պատմության նպատակը մեծ մարդկանց ստեղծումն է, որին իբր թե խանգարում են ժողովրդական զանգվածները: Պատմության առանցքը համարելով գերմարդուն, հիվանդոտ ինդիվիդուալիզմի այդ կարկառուն պատգամախոսը Զրադաշտի շուրթերով հուսալքված քաղքենու զառանցանքներն էր հրամցնում մարդկությանը: Այսօր էլ բուրժուական մտքի սնանկության լավագույն վկայականն այն է, որ այն կրկին իր խարիսխն է նետում ինքնանպատակ «Ես»-ի ունայն ներքնաշխարհում:

Ի դեպ, ուշագրավ է, որ շատ վաղուց հայ ժողովուրդը սրամտորեն կռահել է ինդիվիդուալիզմի փիլիսոփայության աչք ծակող էգոիզմը, բանաձևելով դա



պարզ ու խոր կերպով. իր մի շամփուր խորովածի համար, հարևանի եզը կմորթեն: Լա՛վ է ասված: Հասարակական բուրժուական հարաբերությունների մթնոլորտում է, որ մարդկանց փոխադարձ ատելությունն իր գագաթնակետին է հասնում, որը խոր զգալով, մեծ պոետը գրում էր.

Մարդիկ ի՞նչ են որ... դիմակված դևեր, ժանիքներ ունեն, անտես
ճիրաններ,
Սմբակներ ունեն և որոճող են և նրանց լեզուն թունավոր սուսեր:

Ինդիվիդուալիզմի քաղաքական պրակտիկ արտահայտության ձևերից է անարխիզմը, որն իբրև մանր բուրժուական հոսանք, միշտ խանգարել է ռևոլյուցիոն պրոլետարիատի առաջընթացին և իր ավանտյուրիստական գործելակերպով իրեն վարկաբեկել որպես պրոլետարական շարժման վտանգավոր թշնամու: Մինչև այսօր էլ ինդիվիդուալիզմի գաղափարակիրները չեն կարողանում կամ չեն ցանկանում հասկանալ այն ճշմարտությունը, որ մարդն իր ծննդից մինչև մահ հազարավոր թելերով կապված է իր նմանների հետ, ազդում և ազդվում է, պայքարում կամ գործակցում է, ձևավորվում է միայն մարդկային միջավայրում: Անհատի աստվածացումը, նրա սոցիալական էության արհամարհումը սուբյեկտիվիզմի անզորության դրսևորումն է և ուրիշ ոչինչ: Այժմ պատմության կողմից անկման դատապարտված բուրժուազիան է, որը մարդու հանդեպ տածած անտարբերության իր այնքան վնասակար պրոպագանդով, մարդկանց իմպերիալիստական կարգերի կամակատարներ է դարձնում:

Անհատի ու հասարակության գժտությունն իր գագաթնակետին է հասել կապիտալիզմի օրոք, երբ ամեն մարդ ձգտում է իր անհատականությունը պահպանել ուրիշների անհատականության ոչնչացման գնով: Այստեղ փաստորեն անհատների մշտական կործանում է տեղի ունենում, որից օգտվում են տնտեսական մենաշնորհի տերերը միայն: Գնալով մարդիկ սկսում են հասկանալ, որ կապիտալի անազատ երկրներում, ազատություն հասկացությունն ամերիկյան ռետինե ծամոնին համազոր մի բան է դարձել:

Ձուկը ջրում է ձուկ. նրանից դուրս այն մի քանի վայրկյան կարող է թպրտալ, բայց ոչ սուրալ: Ռոբինզոններ իրականում չկան: Մասնավոր սեփականության վրա հիմնված բոլոր հասարակություններում ապրող անհատները, կոնկրետ գործող, պայքարող, ապրող մարդիկ են՝ օժտված ժամանակաշրջանի ոգով ու վարքով: Ուստի չկա ավելի փուչ և սնանկ պրիոմ, քան խոսել առհասարակ մարդու անհատականության և ազատության մասին՝ անկախ նրա գոյավիճակից ու ժամանակից: Եվ ինդիվիդուալիզմի խոտելի հայացքների պրակտիկ մարմնավորումով պետք է բացատրել այն երևույթը, որ մասնատված մարդը տվյալ առարկան իրենն է համարում լոկ այն դեպքում, երբ տիրապետում է նրան:

Գազազած ինդիվիդուալիզմի ցայտուն օրինակ չե՞ն ֆրանսիական ՕԱՍ-ականների արյունոտ խժդժությունները Ալժիրում:

Սակայն չպետք է շփոթել անհատականությունը ինդիվիդուալիզմի հետ: Վերջինս կարող է լինել միայն միլիոնավոր անձերի անհատականության սահմանափակման, խեղման և ոչնչացման պայմաններում: Անհատականությունը որպես ինքնություն, ուրույնություն, ինքնատիպություն, մասսայաբար կարող է

լինել միայն սոցիալիզմի-կոմունիզմի պայմաններում։ Իրական, լիակատար և անվերջ ծաղկող անհատականություն կարող է զարգանալ միայն այն հասարակության մեջ, որի դրոշին գրված է՝ մեկն ամենքի, ամենքը մեկի համար։ Կոմունիզմի քաղաքացու ծաղկուն անհատականությունը կոլեկտիվի հզորության կոնկրետ դրսևորումն է ազատ մթնոլորտում։ Կոմունիստները ինդիվիդուալիզմից զերծ, բայց գունեղ անհատականությամբ օժտված մարդիկ են։ Այլ կերպ չի էլ կարող լինել։ Սոցիալիստական մեր Հայրենիքի վիթխարի նվաճումները գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի բնագավառներում լինելով միլիոնավոր ազատ անհատների անարգել զարգացման արդյունք, միաժամանակ հանդիսանում են այն հարուստ ակունքները, որոնք առատորեն սնուցում են բոլոր աշխատավորների մտավոր ծաղկումը։

ՍՍՌՄ-ն իր հարուստ փորձով վաղուց է ապացուցել, որ անհատի նորմալ զարգացման ու երջանկության ուղին կոմունիզմն է։

## ԿՈՄՈՒՆԻԶՄՆ ՈՒ ԱՆՀԱՏԻ ՎԵՐԱԳՏՆՈՒՄԸ

Անհատների ճնշումն ու կեղեքումը կապիտալիզմի օրոք, նրանց առջև հասարակությունը կոմունիստորեն կազմակերպելու խնդիր է դնում, ասում էր Մարքսը։ Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթությամբ մարդիկ, անհրաժեշտության կապանքներից ազատված, ստեղծում են իրական ազատության թագավորություն։ Արտադրամիջոցների հանրայնացմամբ վերանում է և ինդիվիդուալիզմի տնտեսական հիմքը, ստեղծվում են ռեալ պայմաններ բոլոր անհատների ներդաշնակ զարգացման համար։ Այդ զարգացման սահմանները պարփակված են ողջ հասարակության բարգավաճման ոլորտում։ Այլևս անհատի կյանքն ու բախտը կապված է մյուս անհատների կյանքի ու բախտի հետ։ Եվ միայն կոլեկտիվի իշխանությունն է հաստատում անհատի ինքնությունը, ապահովում նրա անհատականության ծաղկումը։

Արտադրամիջոցների հանրայնացումը, սոցիալիզմի լիակատար կառուցումը վկայում են, որ սովետական մարդկանց զարգացման ուղին ճիշտ է։ Որովհետև «...մասնավոր սեփականությունը կարող է ոչնչացվել միայն անհատների բազմակողմանի զարգացման պայմաններում, քանի որ հաղորդակցության և արտադրողական ուժերի առկա ձևերը բազմակողմանի են և միայն բազմակողմանիորեն զարգացող անհատները կարող են դրանք յուրացնել՝ վերածել իրենց կենսական ազատ գործունեության» (К. Маркс, Ф. Энгельс, Соч. том *IV*, стр. 427):

ՍՄԿԿ Ծրագիրն ամբողջովին տոգորված է մարքսիզմի հիմնադիրների այս դրույթի լիակատար կենսագործման ոգով։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմամբ պայմաններ կստեղծվեն անհատի ու կոլեկտիվի նյութական բարօրության և հոգևոր կարողությունների ծաղկման համար։

Հայտնի է, որ Ստալինի բնավորության բացասական գծերի և վտանգավոր վարքագծի վերաբերյալ Վ. Ի. Լենինը ժամանակին զգուշացրել էր պարտիային, այդպիսիք համարելով ինդիվիդուալիզմի դրսևորումներ։ Հիրավի, Ստալինը անչափ գերագնահատելով իր ծառայությունները, ինքն զինքը համարում էր անսխալական։ Սուբյեկտիվիստական այդ մտածելակերպի հետևանքով նա կոպիտ կերպով խախտեց կոլեկտիվ ղեկավարության լենինյան սկզբ-



քունքները, թույլ տվեց կամայականություն և իշխանության չարաշահում, ոտնահարեց սոցիալիստական օրինականությունը։

Ինդիվիդուալիզմը խորթ է կոմունիզմի ոգուն։ Ահա թե ինչու պարտիան անողոքաբար դատապարտեց անձի պաշտամունքը՝ որպես ինդիվիդուալիզմի դրսևորում։

Իր ծրագրում հիմնավորելով կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը, ՍՄԿՊ-ն ձգտում է ստեղծել նոր մարդու անկաշկանդ զարգացման, ամբողջ հասարակության բարոյական կատարելագործման, մարդկանց հոգին ինդիվիդուալիզմից մեկընդմիշտ ձերբազերծելու լավագույն նախադրյալներ։

Իսկ ինչպե՞ս է լուծում կոմունիզմն անհատի ազատության հարցը։ Այնտեղ, ուր բոլորն են իրոք ազատ, ազատության հարց չկա։ Կիրառելով ով աշխատի, նա կուտի արդար սկզբունքը, հաղթանակած աշխատանքի մարդիկ վերացնում են շահագործման ազատությունը։ Միաժամանակ վերացնելով այլ ժողովուրդների շահագործման բուրժուական պրակտիկայի ազատությունը, ՍՍՌՄ-ը ապահովում է ժողովուրդների ինքնուրույնությունը, հավասարությունը և փոխադարձ օգնության վրա հիմնված՝ եղբայրությունը։ Օգտվելով խոսքի, խղճի, մամուլի, ժողովների, ընտրելու և ընտրվելու, կրթության, հանգստի, սոցիալական ապահովության, ձրի բուժման իրավունքներից, սոցիալիզմը պատմության մեջ առաջին անգամ իրականացրեց մարդու ազատության երազը։ Ապահովելով կնոջ և տղամարդու իրավունքների հավասարություն, սովետական ազատությունը մեծապես սատարում է անհատի բարոյական կատարելագործմանը և նոր մարդու նորմալ աճմանը։ Ապահովելով իր քաղաքացիներին աշխատանքով, սոցիալիզմի երկիրը բոլորին ազատում է գործազրկության և զրկանքի ծանր մղձավանջից։ Արգելելով պատերազմի պրոպագանդան, մարդկանց ռասայական խտրականությունը, Սովետական մեր Հայրենիքն իր քաղաքացիների բարօրության պայմանն է համարում ժողովուրդների համագործակցությունը և խաղաղության ապահովումը։

Իր գոյության ընթացքում ՍՍՌՄ-ը սովետական մարդուն բարձրացրել է մինչ այդ չեղած աստիճանի։ Նրա տրամադրության տակ են դրված տնտեսության, տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր օջախները։ Սովետական մարդը մեծահոգի է ու բարի, սիրող ու կարեկցող, մարտնչող և որոնող, պահանջկոտ և բարեխիղճ, խիզախ և երազող։ Նրա իդեալը հումանիզմն է։ ՍՄԿՊ Ծրագիրը ոչ այլ ինչ է, եթե ոչ ողջ ժողովրդի ու քաղաքացիների անձնական զարգացման և երջանիկ կյանքի ստեղծման մի փայլուն վկայագիր։ Հետևաբար, կոմունիզմի կառուցումը մեր երկրում նշանավորում է անհատի ազատության բարձր աստիճան։

Ո՞րոնք են անհատի ֆիզիկական և մտավոր զարգացման նախադրյալները մեր երկրում։ Ստեղծելով կոմունիզմի նյութատեխնիկական բազան, սովետական ժողովուրդը կապահովի իր համար աշխարհում ամենաբարձր կենսամակարդակը և ամենակարճ աշխատանքային օրը։ Նոր սերնդին պոլիտեխնիկական կրթությամբ ապահովելը, արտադրության պրոցեսների ավտոմատացումը մեծապես կնպաստեն անհատի համակողմանի զարգացմանը։ Նոր տեխնիկան հիմնովին փոխում է աշխատանքի բնույթը և նեղ մասնագետն իր տեղը զիջում է բազմակողմանի աշխատողին։ Կրճատվում է պրոֆեսիաների թիվը, իսկ նորին տիրապետելու համար համեմատաբար քիչ ժամանակ է պահանջվում։ Սովետական քաղաքացին, դառնալով բազմակողմանի ինքնագործ անհատ,

հնարավորություններ է ստանում իր ունակությունները կիրառելու մի շարք բնագավառներում։ Իր տրամադրության տակ նա կունենա այնքան ժամանակ, որը հորդ աղբյուր կլինի նրա հոգեկան սննդի համար։ Ահա այս պայմաններում է, որ յուրաքանչյուր անհատի ազատ զարգացումը դառնում է բոլոր անհատների բուռն զարգացման կարևորագույն պայմանը։

Որքան հասարակությունը քիչ ժամանակ գործադրի արդյունքների արտադրության վրա, այնքան շատ ազատ ժամանակ կմնա հոգևոր զարգացման համար։ Այդ առնչությամբ էլ Մարքսը գրում է, թե աշխատանքը որպես արտադրողական գործունեություն՝ պոտենցիալ հարստություն է։ Այդ հարստությունը տարի առ տարի իր գանձերն է ի սպաս բերում աշխատավորների բարօրության գործին։ Ստեղծարար աշխատանքի կոլեկտիվ տնտեսության մեջ խաղացած մեծագույն դերին անդրադառնալով, Մարքսը գրել է. «Ինչպես առանձին անհատի, այնպես և հասարակության բազմակողմանի զարգացումը, սպառումը և գործունեությունը կախված են ժամանակի խնայողությունից։ Ամբողջ խնայողությունը վերջին հաշվով հանգում է ժամանակի խնայողությանը... Ուստի ժամանակի խնայողությունը, ինչպես և աշխատաժամանակի պլանաչափ բաշխումը արտադրության տարբեր ճյուղերում, մնում է կոլեկտիվ տնտեսության առաջին տնտեսական օրենք։ Դա մինչև իսկ դառնում է ավելի քան բարձր աստիճանի օրենք» (Архив Маркса и Энгельса, том IV, стр. 119։ Ընդգծումները մերն են.—Ս. Ս.)։

Ինչ խոսք, որ առաջիկայում ևս մեր տնտեսության զարգացումը ընթանալու է այս հանճարեղ կանխատեսության համեմատ, և մարդն ավելի մեծ չափերով կօգտվի այդ պոտենցիալ հարստությունից։ Արդեն հիմա ակներև են այն տեղաշարժերը տեխնիկայի զարգացման ոլորտում, որոնք հնարավորություն կստեղծեն հաղթահարելու աշխատանքի բաժանման բացասական հետքերը։ Այս ամենի հետևանքով ավելի ցայտուն են երևում սովետական մարդու ինքնաճանաչման, ինքնագործունեության, ինքնակառավարման և ինքնազարգացման առավելությունները։

Զարգացող սովետական նոր մարդը մի անհատ է, որը զերծ լինելով էգոիզմի արատներից, կհանդիսանա իրոք ամբողջական անհատ, որի երկունքն ու աճը լինելու են երկարատև պայքարի ու աշխատանքի շնորհիվ։ Մեր օրերի հերոսները, աշխատանքային փարոսներն ու կոմունիստական աշխատանքի բրիգադների անդամներն իրենց ողջ հոգով մոտենում են բազմակողմանի ազատ անհատի կերպարին։ Իրականում, մեր վիթխարի հաջողությունների գործում խոշոր է իրոք տաղանդավոր, ազնիվ ու բարեխիղճ, ձեռներեց ու կազմակերպիչ միլիոնավոր անհատների դերը։ Պատմության մեջ չի եղել մի շրջան, երբ այդքան թվով մեծ տաղանդներ ծառայեն հանուրի բարօրությանը, ինչպես մեզ մոտ է։

Զինված անհրաժեշտության կույր օրենքների խոր իմացությամբ, սովետական քաղաքացիք կռթնած կոլեկտիվի ուսերին, համարձակորեն վեր են խոյանում դեպի գալակտիկայի անհունները, թափանցում են ատոմի անտեսանելի ծալքերը, սուզվում օվկիանոսի հատակը՝ հանուն կոլեկտիվի ու իրենց անհատական երջանկության։

Այն հանգամանքը, որ մեզ մոտ յուրաքանչյուր անհատ աշխատում է ըստ իր ունակությունների, ինքնին հսկայական առավելություն է և հենց դա է նրա ձիրքերի, ինքնուրույնության անխափան զարգացման միակ ռեալ ուղին։ Առաջիկա երկու տասնամյակում, երբ աշխատանքն արագորեն կվերածվի կենսական անհրաժեշտության ու ինքնագործունեության, անհատի իրական երջանկության մշտական հիմքերը կդրվեն։



Սակայն նոր ու համակողմանի մարդու զարգացումը դժվարին և բարդ մի պրոցես է, որը պահանջում է մանկավարժական, վարչական երկարատև պայքար։ Գաղտնիք չէ, որ դեռևս մեր շատ քաղաքացիների գիտակցության ծալքերում մնում է մասնավոր սեփականության, ընչաքաղցության բորբոսը, որը խանգարում է մեզ հաջողությամբ պսակելու մեկը՝ բոլորի, բոլորը՝ մեկի համար կոմունիստական նշանաբանը։ Ինդիվիդուալիզմի տիղմում տակավին թավալվող եսամոլները տարբեր ձևերով, ամբարտավանորեն և հաճախ վայրագորեն ոտնահարում են նոր հասարակության սրբազան սկզբունքը՝ մարդը մարդուն բարեկամ է, ընկեր և եղբայր։

Մեր խնդիրն է,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— նոր բարոյական պահանջները դարձնել բոլոր սովետական մարդկանց ներքին պահանջմունքը։ Մենք դեռ անելու շատ բան ունենք անցյալի մնացուկներին վերջ տալու համար։ Հասարակական կյանքում առաջավորը ցանկապատված չէ հնից, հետամնացից։ Առաջավորը վերջիվերջո հաղթանակում է, բայց հնի մնացուկները արգելակում են առաջընթաց շարժումը։ Լավ օրինակի ուժն աճում է, դրա վրա է մեզ մոտ կառուցվում դաստիարակությունը։ Բայց, ինչպես հայտնի է, մոլախոտերն արագ աճում են, եթե դրանք ժամանակին չվնասազերծվեն (ՍՄԿԿ Ծրագրի մասին, էջ 117)։

Եթե չլիներ անհատների այն կուռ բանակը, որը լենինյան գվարդիա է կոչվում, եթե մեծ գաղափարներով զինված նրա մարտիկները օժտված չլինեին վառ անհատականությամբ, խոր իմացությամբ, անձնվիրությամբ, կարգապահությամբ՝ մնացած բոլոր անհատների ազատագրման գործը գլուխ չէր գա։ Այսօր էլ ողջ աշխարհի կոմունիստները ակնառու անհատականություններով, մտավոր ունակություններով և ջերմ զգացումներով օժտված անձնավորություններ են, որոնք իրենց կյանքը զոհաբերում են մարդու վերջնական վերածնության մեծ գործին։

Վերացնելով գյուղի ու քաղաքի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունները, սովետական քաղաքացիք վերացնում են և անհատի ներդաշնակ զարգացման վերջին արգելքները։ Ահա թե ինչպես է լուծում կոմունիզմը անհատի ազատության հնամյա պրոբլեմը, որը ոչ թե մտածական կամ էթիկական ծագում ունի, այլ սոցիալ-պատմական։

Այսպիսով, միայն կոմունիստական հասարակության մեջ անհատը կարող է զարգանալ համակողմանիորեն և հետևաբար վերագտնել իրեն։ Միայն կոմունիստական կարգերում է, որ «անհատների ինքնատիպ և ազատ զարգացումը դադարում է ֆրազ լինելուց»։ Առողջ ֆիզիկականով, մտավորապես հուժկու, միակողմանիությունից, խեղումներից, ազգային սահմանափակությունից զերծ մարդը ծնվում ու կոփվում է կոմունիզմի կառուցման մեր առօրյայում։ Կոմունիզմի կառուցումը ևս անհատի հոգեկան ներքնաշխարհի վերակառուցումն ու կատարելագործումն է։

# ԱՄՍԱԳՐԵՐԻ ԷՋԵՐԻՑ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

Գ. ՕՐԻՋԿԻՆ, Գ. ՇԱՆՇԻԵՎ, Լ. ՇԱՀՈՒՄՅԱՆ

КОММУНИСТ
ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ
ЦЕНТРАЛЬНОГО КОМИТЕТА
КОММУНИСТИЧЕСКОЙ ПАРТИИ СОВЕТСКОГО СОЮЗА

Վերջին տարիների պատմա-պար-
տիական գրականության համար բնո-
րոշ է գիտական-տեսական մակարդա-
կի բարձրացումը, աղբյուրագիտական
բազայի և պրոբլեմատիկայի ընդ-
լայնումը։

Սովետական գիտնականների հատուկ ուշադրությունն է արժանավոր կեր-
պով գրավում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պատմու-
թյունը, որը նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ։ Հետազո-
տական մեծ աշխատանքի շնորհիվ ստեղծված է ծավալուն գրականություն
Հոկտեմբերի պատմության վերաբերյալ։ Այդ գրականության մեջ կարևոր տեղ
են գրավում նախկին ցարական Ռուսաստանի ազգային շրջաններում Սովե-
տական իշխանության հաղթանակի համար Կոմունիստական պարտիայի մղած
պայքարին նվիրված աշխատությունները։ Տեղական պարտիական կազմակեր-
պությունների՝ որպես միասնական Կոմունիստական պարտիայի բաղկացուցիչ
մասերի, ջոկատների պատմության ուսումնասիրությունն ունի քաղաքական,
գիտական և գործնական մեծ նշանակություն։ Առանց նրանց գործունեությու-
նը ցուցադրելու անհնարին է լրիվ և համակողմանի լուսաբանել Կոմունիստա-
կան պարտիայի բազմակողմանի փորձը, նրա կազմակերպական ու դաստիա-
րակչական վիթխարի աշխատանքը մասսաների մեջ։ Ոչ ռուս բնակչություն ունե-
ցող շրջաններում Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մասսաների
մղած ռևոլյուցիոն պայքարի փորձը մեծ նշանակություն ունի միջազգային կո-
մունիստական ու բանվորական շարժման համար։ Միևնույն ժամանակ այդ
փորձի գիտական լուսաբանությունը մերկացնում է պատմության արտասահ-
մանյան զանազան բուրժուական կեղծարարների այն սուտ պնդումները, թե
սոցիալիստական ռևոլյուցիան մեր երկրում եղել է «անօրինաչափ», «պատա-
հական», այն չարամիտ հերյուրանքները, թե Սովետական իշխանությունը Ռու-
սաստանի ազգային շրջաններում իբր թե հաստատվել է մասսաների կամքին
հակառակ։

Սովետական իշխանության հաղթանակի համար մղված պայքարի պատ-



մության ուսումնասիրությանը վերջին տարիներս մեծ ուշադրություն է հատ-
կացվել նաև Հայաստանում։ Հրատարակված են յոթ մենագրություն, մի շարք
աշխատություններ, որոնց մեջ այդ ժամանակաշրջանի հետազոտությունը
կենտրոնական տեղ է գրավում, և մի քանի գրքեր ու բրոշյուրներ, որոնք նվիր-
ված են առանձին հարցերի՝ 1920 թվականի Մայիսյան ապստամբությանը,
1921 թվականին Հայաստանում տեղի ունեցած դաշնակցական ավանտյուրա-
յին և այլն։ Սակայն 1917—1920 թվականների ժամանակաշրջանին վերաբերող
մի քանի կարևոր հարցեր դեռևս լուսաբանվում են ոչ բավականաչափ խոր, իսկ
երբեմն էլ սխալ։ Հայպետհրատը և մյուս հրատարակչությունները անպլանա-
յին կերպով և առանց պատշաճ վերահսկողության լույս են ընծայում միևնույն
թեմայով (Հայաստանում Սովետական իշխանության հաստատման մասին)
գրված շատ գրքեր, որոնց հեղինակները կրկնում են միևնույն հայտնի հետևու-
թյուններն ու փաստերը և, բացի դրանից, թույլ են տալիս մի շարք սխալներ։
Թվում է, թե այդպիսի դրությունը պետք է լուրջ խոսակցության առարկա դառ-
նար։ Բայց այդ տեղի չի ունեցել։

Միևնույն ժամանակ վերջին տարիներս Հայաստանում չափազանց քիչ
գիրք է հրատարակվել սովետական հասարակության պատմության վերաբեր-
յալ։ Լույս չի ընծայված ոչ մի լուրջ մենագրություն, որն ընդհանրացներ Հա-
յաստանի պարտիական կազմակերպության փորձը սոցիալիստական և կոմու-
նիստական շինարարության բնագավառում։

Ստալինի անձի պաշտամունքի հետևանքների վերացման շնորհիվ նոր
հնարավորություններ են բացվել գիտական ստեղծագործության համար։ Պատ-
մաբանն ազատվել է անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում հաստատ-
ված շաբլոն սխեմաներին ու եզրակացություններին հետևելու անհրաժեշտու-
թյունից։ Նրա խնդիրն է՝ անշեղորեն կիրառելով գիտության մեջ պարտիակա-
նության լենինյան սկզբունքը, համարձակորեն բերել նոր փաստաթղթեր և
դրանք ստեղծագործաբար ուսումնասիրել, լրիվ ու բազմակողմանիորեն բացա-
հայտել Կոմունիստական պարտիայի հսկայական և բազմազան գործունեու-
թյունը։ Լենինիզմն ուսուցանում է, որ գոյություն ունի միայն մեկ ճիշտ ուղի՝
պատմական ճշմարտության ուղին։

Մինչդեռ 1917—1920 թվականների ժամանակաշրջանով զբաղվող Հայաս-
տանի որոշ պատմաբաններ չեն օգտագործում իրենց ընձեռված լայն հնարա-
վորությունները և շարունակում են սխալ, ոչ օբյեկտիվորեն գնահատել Հայաս-
տանի Կոմունիստական պարտիայի գործունեությունը, որն ստեղծվել է 1918
թվականին [այն ժամանակ Հայաստանում գոյություն ունեցող ՌԿ(բ)Պ տե-
րիտորիալ կազմակերպությունների հետ մեկտեղ] Թուրքահայ գաղթականնե-
րի մեջ աշխատանք տանելու համար, նրա դերը Հայաստանում կոմունիստա-
կան շարժման զարգացման գործում և նրա կապը 1920 թվականին Հայաստանի
Կոմունիստական պարտիայի ստեղծման հետ. նրա կազմակերպական ձևավոր-
ման պրոցեսը շարադրվում է պարզեցրած ձևով, խախտելով պատմականու-
թյան սկզբունքը։

Այդպիսի սխալ հայացքները թափանցել են նաև կենտրոնական մամուլի
էջերը։ «Вопросы истории КПСС» ժուռնալում (1960 թ. № 5) հրապարակված
է Ս. Հ. Թովմասյանի «Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության
մի քանի հարցերի մասին» հոդվածը, որտեղ խե-
գիտական լուսաբանության մի քանի հարցերի մասին» հոդվածը, որտեղ խե-
ղաթյուրված, միտումնավոր կերպով է լուսաբանվում Հայաստանի ԿՊ 1918—

*1919 թվականների պատմությունը։ Ընկ. Թովմասյանը գտնում է, որ 1918 թվա-
կանին ստեղծված Հայաստանի Կոմունիստական պարտիան կամ, ինչպես նա է
անվանում այդ պարտիան, «Հայաստանի Կոմունիստական պարտիա» խումբը,
ոչ մի կապ չի ունեցել 1920 թվականին Հայաստանի Կոմունիստական պար-
տիայի ստեղծման և նրա գործունեության հետ։ Նա այդ պարտիային մեղա-
դրում է սեպարատիզմի, ոչ բոլշևիզմի մեջ և փորձում է ապացուցել, որ նրա
գործունեությունն աննպատակ էր և նույնիսկ վնասակար։ Դիմենք պատմական
փաստերին ու փաստաթղթերին։*

*Հայաստանի Կոմունիստական պարտիայի ստեղծման գաղափարը ծագել
է դեռ 1917 թվականին։ Նշանավոր բոլշևիկ, 1903 թվականից ՍՄԿՊ անդամ
Բ. Ա. Բորյանը, որը 1917 թվականին պարտիայի Կենտկոմի լիազորն էր Ան-
դրկովկասում, պատմում է, որ 1917 թվականի հոկտեմբերին, բոլշևիկյան
կազմակերպությունների՝ Թիֆլիսում կայացած Կովկասյան երկրային համա-
գումարի ժամանակ ինքը խորհուրդ է տվել «Թուրքահայաստանցի» մի քանի
բոլշևիկների «...հավաքել թուրքահայերին ու կազմակերպել Հայաստանի (այն
ժամանակ մենք Հայաստան ասելով հասկանում էինք Թուրքահայաստանը)
բոլշևիկների պարտիա և պայքար մղել դաշնակցության պարտիայի ավանտյու-
րիստական քաղաքականության դեմ։ Ըստ երևույթին, այդ գաղափարն ընդուն-
վեց։ Թուրքահայերը կազմակերպվեցին Թիֆլիսում և իրենց ներկայացուցչին
ուղարկեցին Պետրոգրադ...»* (Б. А. Борян, «Армения, международная дип-
ломатия и СССР», ч. II, М.—Л., Госиздат, *1929, էջ 94)։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ազդեցության տակ,
որը հռչակեց ժողովուրդների ինքնորոշումը, 1917 թվականի նոյեմբերին Թիֆ-
լիսում ստեղծվեց 9 հայ բոլշևիկներից (նրանցից յոթը Թուրքահայաստանցի
էին) բաղկացած Կազմակերպական Կոմիտե, որն իր ներկայացուցչին՝ 1905
թվականից բոլշևիկյան պարտիայի անդամ Գ. Ս. Հայկունուն ուղարկեց Պետ-
րոգրադ, ՌՍԴԲ(բ)Պ Կենտկոմ՝ Հայաստանի բոլշևիկյան սոցիալ-դեմոկրատա-
կան պարտիայի ստեղծման հետ կապված հարցերը լուծելու (տե՛ս ՄԼԻ-ի ԿՊԱ,
ֆ. 17, ցուց. 4, պ. մ. 19, թ. 2)։ 1917 թվականի դեկտեմբերին Գ. Ս. Հայկունին
հասավ Պետրոգրադ, ուր այդ ժամանակ պատրաստվում էր Ժողկոմսովետի
դեկրետը «Թուրքահայաստանի» մասին (որը հրապարակվեց մամուլում 1917
թվականի վերջին), և ստացավ ՌՍԴԲ(բ)Պ Կենտկոմի համաձայնությունն ու
աջակցությունը։*

*«Թուրքահայաստանի» վերաբերյալ դեկրետով Ժողովրդական կոմիսար-
ների Սովետը հայտարարեց հայ ժողովրդին, որ «...Ռուսաստանի բանվորական
և գյուղացիական կառավարությունը պաշտպանում է Ռուսաստանի կողմից
օկուպացված «Թուրքահայաստանի» հայերի ազատ ինքնորոշման իրավունքը՝
ընդհուպ մինչև լիակատար անկախություն»։ Դեկրետում նախատեսվում էին մի
ամբողջ շարք նախնական պարտադիր երաշխիքներ, որոնք պետք է ապահովե-
ին հայ ժողովրդի կամքի ազատ արտահայտությունը, այն է՝ «1) Զորքերի դուրս
բերումը «Թուրքահայաստանից» և հայկական ժողովրդական միլիցիայի
կազմակերպումը՝ «Թուրքահայաստանի բնակիչների անձնական ու գույքային
անվտանգությունն ապահովելու համար։ 2) Տարբեր երկրներում ցրված գաղ-
թական հայերի, ինչպես նաև վտարանդի հայերի անարգել վերադարձը «Թուր-
քահայաստանի» սահմանները։ 3) Պատերազմի ժամանակ թուրքական իշխա-
նությունների կողմից... արտաքսված հայերի անարգել վերադարձը «Թուրքա-*



*հայաստանի» սահմանները... 4) «Թուրքահայաստանի» ժամանակավոր ժո-
ղովրդական կառավարման կազմակերպումը՝ դեմոկրատական հիմունքներով
ընտրված հայ ժողովրդի դեպուտատների Սովետի ձևով։ Կովկասի գործերի
Արտակարգ ժամանակավոր կոմիսար Ստեփան Շահումյանին հանձնարարվում
է ամեն տեսակ օգնություն ցույց տալ «Թուրքահայաստանի» բնակչությանը
2-րդ և 3-րդ կետերի իրականացման գործում...»* («Декреты Советской влас-
ти, т. *I*, М, *1957, էջ 298—299)։*

*Այդ դեկրետը հաջողությամբ կենսագործելու համար ՌՍԴԲ(բ)Պ Կենտ-
կոմը պաշտպանեց հայ կոմունիստների՝ Հայաստանի Կոմունիստական պար-
տիա ստեղծելու նախաձեռնությունը, որը կոչված էր աշխատանք տանելու
«Թուրքահայաստանում» և գլխավորապես Ռուսաստանում գտնվող հայ գաղ-
թականների շրջանում, մասսայականացնելով, պարզաբանելով ազգերի ինքն-
որոշման լոզունգը, նրանց մեջ տարածելով Սովետական իշխանության ու կո-
մունիզմի գաղափարները և նրանց ազատագրելով բուրժուա-նացիոնալիստա-
կան Դաշնակցություն պարտիայի ազդեցությունից։ Այն փաստը, որ Հայաս-
տանի Կոմպարտիան ստեղծվեց այդ խնդիրները կատարելու համար, հաստատ-
վում է նաև Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների այդ ժամանա-
կաշրջանի ականավոր գործիչների՝ Ա. Միկոյանի, Վ. Նանեյշվիլու, Գ. Ստու-
րուայի, Ի. Դովլաթյանի, Ա. Մռավյանի, Ս. Կասյանի և ուրիշների նամակնե-
րով ու հոդվածներով։ Պետք է նկատի ունենալ, որ այն ժամանակ Թուրքահա-
յաստանում քաղաքացիական բնակչություն գրեթե չէր մնացել, նրա մի մասը
ոչնչացրել էին թուրքերը, իսկ մի մասն էլ փախել էր ուրիշ երկրներ. մի քանի
հարյուր հազար հայեր գաղթել էին Անդրկովկաս, Հյուսիսային Կովկաս և Հա-
րավային Ռուսաստանի մի շարք շրջաններ։*

*1918 թվականի հունվարի վերջերին, ստանալով ՌՍԴ(բ)Պ Կենտկոմի հա-
մաձայնությունը և միջոցներ ծախսերի համար, Կազմակերպական Կոմիտեն
ձեռնամուխ եղավ հետագա աշխատանքի։ Քանի որ այդ ժամանակ արդեն
սկզբունքորեն որոշվել էր, որ առաջիկա համագումարում ՌՍԴԲ(բ)Պ-ն պետք է
վերանվանվի ՌԿ(բ)Պ, ապա Պետրոգրադում ստացած խորհրդով պարտիան
կազմակերպվեց՝ Հայաստանի Կոմունիստական պարտիա անունով։ Իր ներ-
կայացուցչին ՌՍԴԲ(բ)Պ Կենտկոմ ուղարկելու հետ միաժամանակ, Կազմակեր-
պական Կոմիտեն բանակցություններ վարեց Կովկասի գործերի ժամանակա-
վոր Արտակարգ կոմիսար Ստ. Շահումյանի հետ և ստացավ նրա հավանու-
թյունն ու աջակցությունը (տես ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 17, ցուց. 4, պ. մ. 19, թ. 2)։*

*1918 թվականի մարտի սկզբից Հայաստանի ԿՊ Կենտրոնական Կոմիտեն,
որի կազմի մեջ մտան Գ. Հայկունին, Գ. Վարդանյանը, Վ. Երեմյանը, Հ. Հով-
սեփյանը և ուրիշներ, սկսեց Թիֆլիսում լույս ընծայել «Կարմիր Օրեր» թերթը.
1918 թվականի ապրիլին այդ թերթը փակվեց տեղական իշխանությունների
կողմից, և սկսեց լույս տեսնել «Կարմիր Դրոշակ» թերթը։ Առաջին իսկ համա-
րից թերթը դարձավ մարտական բոլշևիկյան օրգան։ Զայրույթով մերկացնելով
դաշնակների և վրաց մենշևիկների դավաճանական շովինիստական քաղաքա-
կանությունը, թերթը կոչ էր անում հայ աշխատավորներին՝ աչալուրջ լինել հա-
կառևոլյուցիայի մեքենայությունների նկատմամբ, հետևել Սովետական Ռու-
սաստանի և Կարմիր Բաքվի օրինակին, պարզաբանում էր սոցիալիստական
ռևոլյուցիայի իմաստն ու խնդիրները, կոչ էր անում տապալել բուրժուազիայի
տիրապետությունն Անդրկովկասում և հաստատել սովետական կարգեր։ Թերթն*

ընդգծում էր, որ «Հայաստանի ժողովուրդների ազատագրման հարցի հաջող
լուծումը ամբողջովին կախված է Ռուսաստանի պրոլետարական հեղափոխու-
թյան հաղթանակից...», որ «Հայաստանն իր հեղափոխական կռվում միայն
այն ժամանակ կհաղթանակի, երբ կջախջախվի անդրկովկասյան հակահեղա-
փոխությունը...» («Կարմիր Օրեր», 24 մարտի 1918 թ.)։ Յուրաքանչյուր համա-
րի հետ թերթն ավելի ու ավելի մեծ ժողովրդականություն էր ձեռք բերում։ Նրա
տիրաժը 250—300 օրինակից բարձրացավ և հասավ ավելի քան երկուս և կես
հազարի, իսկ առանձին օրինակներ տարածվում էին 3000—3500 օրինակով։
Թերթը հիմնականում տարածվում էր Թիֆլիսում, բայց թափանցում էր նաև
Ալեքսանդրապոլ, Լոռու գյուղերը և Հայաստանի մյուս շրջանները։

Թերթի հրատարակման հետ միաժամանակ Հայաստանի ԿՊ Կենտկոմը
կատարում էր նաև կազմակերպչական աշխատանք։ «Գրեթե մեկ ամսվա ըն-
թացքում,— գրում էր 1919 թվականի հունվարին Հայաստանի ԿՊ Կենտկոմի
անդամ Գ. Վարդանյանը ՀԿՊ Կենտկոմի գործունեության վերաբերյալ իր զե-
կուցման մեջ,— մեր պարտիան ձեռք բերեց 500 անդամ, իսկ շուտով՝ 1000-ից
ավելի։ Մեր կազմակերպությունները բաժիններ են ստեղծել Ալեքսանդրապո-
լում, Կարսում, Բաթումում և Սուխումում։ Նոր սկսել էին աշխատել Վանում
(մինչև մեր զորքերի նահանջը) և Երևանում։ Հայերեն լեզվով հրատարակել են
«Կոմունիստական մանիֆեստը» 1500 օրինակ քանակով» (ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 17,
ցուց. 4, պ. մ. 19, թ. 2)։ Պարտիայի շուրջն էին համախմբվում հազարավոր
համակրողներ։ ՀԿՊ-ն զգալի աշխատանք ծավալեց Օդեսայից, Սևաստոպոլից,
Թեոդոսիայից և Ռուսաստանի այլ վայրերից Թիֆլիս եկած թուրքահայ կամա-
վորների զինված ջոկատների մեջ, նրանց ենթարկելով իր ազդեցությանը և
պատրաստելով ռևոլյուցիոն մարտերի։

Թիֆլիսում գտնվող Հայաստանի ԿՊ Կենտրոնական Կոմիտեն ստիպված
էր աշխատել բացառիկ ծանր պայմաններում այն դաժան ռեպրեսիաների
պատճառով, որոնց ենթարկվում էին բոլշևիկները մենշևիկյան իշխանություն-
ների կողմից։ 1918 թվականի մայիսին «Կարմիր Դրոշակ» թերթը փակվեց և
հրաման արձակվեց նրա աշխատակիցներին ձերբակալելու մասին։ Ուժեղացող
հետապնդումների և թուրքական զորքերի մոտենալու կապակցությամբ ԿՊՀ
Կենտկոմը տեղափոխվեց Հյուսիսային Կովկաս, և նրա գործունեությունը ժա-
մանակավորապես խափանվեց։

1918 թվականի փետրվար-մարտ ժամանակաշրջանում Հայաստանի Կոմ-
պարտիան քիչ գործ չկատարեց։ Սակայն նրա գործունեությունը հիմնականում
կենտրոնացած էր Թիֆլիսում. նրան չհաջողվեց լուրջ աշխատանք կազմակեր-
պել Երևանի և Ալեքսանդրապոլի գավառներում, որտեղ ապրում էր գաղթա-
կանների մեծ մասը։ Միևնույն ժամանակ ՀԿՊ Կենտկոմը փորձում էր իր ազդե-
ցությունը տարածել ՌԿ(բ)Պ տեղական կազմակերպությունների վրա, որոնք
գտնվում էին ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային կոմիտեի ղեկավարության ներքո։
Դա բախումներ և աննորմալ հարաբերություններ առաջ բերեց ՀԿՊ Կենտկոմի
և ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային կոմիտեի միջև։ Երկրկոմը ճիշտ էր գտնում, որ
ՀԿՊ Կենտկոմը չպետք է միջամտի տեղական ռևոլյուցիոն-քաղաքական կյան-
քին, քանի որ դա կազմալուծման տարրեր էր մտցնում։ Երկրկոմի արդարացի
պահանջները հարուցում էին ՀԿՊ Կենտկոմի անդամների բուռն հակազդեցու-
թյունը, որն իր հերթին առաջ էր բերում Երկրկոմի առանձին անդամների ավե-



լորդ տաքարյունությունը, փոխադարձ վիրավորանքներ և ոչ միշտ հիմնավոր-
ված կշտամբանքներ։

1919 թվականի սկզբին ՀԿՊ Կենտկոմի մի քանի անդամներ՝ Գ. Հայկու-
նին, Գ. Վարդանյանը, Վ. Երեմյանը և Հ. Հովսեփյանը, Հյուսիսային Կովկասի
զանազան վայրերից և մի շարք այլ շրջաններից, որտեղ նրանք սովետական ու
պարտիական պատասխանատու աշխատանք էին կատարում, հավաքվեցին
Մոսկվայում և հարց դրին ՌԿ(բ)Պ Կենտկոմի առջև Հայաստանի Կոմպարտիա-
յի գործունեությունը վերսկսելու մասին։ Այդ ժամանակ ներքին ու միջազգային
իրադրությունը 1918 թվականի սկզբի համեմատությամբ փոխվել էր։ Հաշվի
առնելով Հայաստանի «անկախ» դաշնակցական ռեսպուբլիկայի փաստական
գոյությունը, ինչպես և հայկական հարցի միջազգային ասպեկտը (Անտանտի
ղեկավար շրջաններում լայնորեն քննարկվում էր Արևմտյան և Արևելյան Հա-
յաստանի տերիտորիայում ԱՄՆ-ի մանդատի ներքո հայկական պետություն
ստեղծելու հնարավորությունը), ՌԿ(բ)Պ Կենտկոմն անհրաժեշտ համարեց Հա-
յաստանի ձևականորեն ինքնուրույն Կոմունիստական պարտիայի գոյությունը։
ՌԿ(բ)Պ Կենտկոմն աջակցեց ՀԿՊ Կենտկոմի կազմակերպական գործունեու-
թյան կարգավորմանը, որի կազմն ամրապնդվեց ՌԿ(բ)Պ անդամ, պարտիա-
կան ու սովետական աշխատանք կատարող հեղինակավոր հայ կոմունիստնե-
րով (Վ. Տերյան և ուրիշներ)։ 1919 թվականի օգոստոսին ՌԿ(բ)Պ Կենտկոմին
ՀԿՊ Կենտկոմի ներկայացրած զեկուցման մեջ նրա առջև ծառացած խնդիրները
ձևակերպված են հետևյալ կերպ. «1) Ի մի հավաքել և պարտիական խմբերի
մեջ միավորել Հայաստանի կոմունիստներին (նկատի է առնվում Սովետական
Ռուսաստանի տերիտորիայում պարտիական խմբերի ստեղծումը հայ գաղթա-
կանների շրջանում և հաշվի առնված ու Հայաստանի Կոմպարտիայի մեջ ըն-
դունված ՌԿ(բ)Պ հայ անդամների շրջանում այն դեպքի համար, որ նրանք
կմոբիլիզացվեն Հայաստանի տերիտորիայում աշխատելու համար։—Հեղինակ-
ներ)։ 2) Նախապատրաստել և Հայաստան ուղարկել պարտիայի անդամներին՝
կոմունիստական պրոպագանդա մղելու և քայքայված պարտիական կազմա-
կերպությունները վերականգնելու նպատակով։ 3) Գրականություն ու թերթ
հրատարակել բոլոր հնարավորին լայն չափերով՝ գաղթական մասսաների մեջ
տարածելու և Հայաստան ու Անդրկովկասի մյուս մարզերն ուղարկելու համար
(ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 17, ց. 4, պ. մ. 19, թ. 9)։

1919 թվականի մարտի սկզբին Հայաստանի Կոմունիստական պարտիան
մասնակցեց III Կոմունիստական Ինտերնացիոնալի ստեղծմանը։ Նրա ներկա-
յացուցիչ Գ. Հայկունին մասնակցեց Կոմինտերնի I կոնգրեսի աշխատանքնե-
րին վճռական ձայնի իրավունքով։ Նա կոնգրեսին ներկայացրեց գրավոր զե-
կուցում, որը 1919 թվականի մարտի 11-ին հրապարակվեց «Պրավդայում»։
Զեկուցման մեջ տրվում էր Հայաստանում և ամբողջ Անդրկովկասում տիրող
սոցիալ-քաղաքական իրադրության վերլուծությունը, մերկացվում էր Հայաս-
տանի, Վրաստանի և Ադրբեջանի օտարերկրյա ինտերվենտներին վաճառված
բուրժուա-նացիոնալիստական պարտիաների դավաճանական քաղաքականու-
թյունը, խոսվում էր Հոկտեմբերյան ռևոլյուցիայի դերի, Կոմինտերնի առաջաց-
ման նշանակության մասին, համառոտակի շարադրվում էր Հայաստանի Կո-
մունիստական պարտիայի առաջացման պատմությունը և պատմվում նրա կա-
տարած կազմակերպական ու մասսայական-քաղաքական աշխատանքի մասին։
Հայաստանի Կոմպարտիայի անունից Գ. Հայկունին ի թիվս 17 պատվի-

րակությունների ներկայացուցիչների ստորագրեց «Կոմունիստական Ինտերնա-
ցիոնալի Մանիֆեստը ամբողջ աշխարհի պրոլետարներին»։

1961 թվականի մայիսի 6-ին Երևանում հանդես գալով Սովետական իշ-
խանության հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազ-
մավորման 40-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում, Ն. Ս. Խրուշչովն
իրավացիորեն նշեց. «Հայ ժողովուրդը կարող է հպարտանալ այն բանով, որ
Կոմունիստական Ինտերնացիոնալի ստեղծմանը մասնակցել են հայ կոմու-
նիստներ»։

1919 թվականի մարտի կեսերին Հայաստանի ԿՊ Կենտկոմն իր ներկայա-
ցուցիչներ Գ. Հայկունուն և Վ. Տերյանին որպես պատգամավորներ ուղարկում է
ՌԿ(բ)Պ VIII համագումար, որի աշխատանքին նրանք մասնակցում են վճռա-
կան ձայնի իրավունքով։

1919 թվականի մայիսի 1-ին Մոսկվայում վերսկսվեց «Կարմիր Դրոշակ»
թերթի՝ Հայաստանի ԿՊ Կենտկոմի օրգանի լույս ընծայումը. լույս տեսավ 16
համար (վերջին համարը 1919 թվականի սեպտեմբերի 20-ին)։ Պատասխա-
նատու խմբագիրն էր Ա. Կարինյանը։ Թեև «Կարմիր Դրոշակ» թերթը լույս տե-
սավ կարճ ժամանակ, այն մեծ դեր խաղաց հայ աշխատավորների շրջանում
կոմունիստական շարժման զարգացման գործում։

ՀԿՊ Կենտկոմը կազմակերպեց Վ. Ի. Լենինի երկերի և հանրամատչելի
մարքսիստական բրոշյուրների հայերեն հրատարակումը. լույս տեսավ 40 ա-
նուն աշխատություն։ «Կարմիր դրոշակ» թերթը և այդ ամբողջ գրականությու-
նը, Հայկական գործերի կոմիսարիատի հրատարակությունների հետ միասին,
տարածվում էին հիմնականում Պովոլժիեի, Ղրիմի, Ուկրաինայի և Բեսարա-
բիայի հայ գաղթականների շրջանում, ինչպես նաև զանազան ճանապարհներով
հասցվում էր Անդրկովկաս, Հայաստան։ Այդ գրականությունն օգնում էր հայ
աշխատավորությանը՝ ճիշտ հասկանալու բոլշևիկյան պարտիայի և Սովետա-
կան պետության քաղաքականությունը։ ՀԿՊ Կենտկոմը գործում էր Ազգու-
թյունների գործերի կոմիսարիատի Հայկական գործերի կոմիսարիատի հետ
լիակատար կոնտակտ պահպանելով և նրա աջակցությամբ։

1919 թվականի մայիս-հուլիսին ՀԿՊ Կենտկոմի մի շարք անդամներ և
Կենտկոմի լիազորներ պարտիական աշխատանքը կարգավորելու համար մեկ-
նեցին Սովետական Հայաստանի այն շրջանները, որտեղ հայ գաղթականներ
կային։ Միաժամանակ նրանք կատարում էին ՌԿ(բ)Պ անդամ հայ կոմունիստ-
ների հաշվառում։ Նրանց ջանքերով պարտիական խմբեր ստեղծվեցին Սարա-
տովում, Աստրախանում, Ցարիցինում, Պետրոգրադում, Խարկովում, Կիևում,
Օդեսայում, Սևաստոպոլում, Սիմֆերոպոլում, Յալթայում և Մոսկվայում։ Ինչ-
պես նշվում է 1919 թվականի օգոստոսին ՌԿ(բ)Պ Կենտկոմին ՀԿՊ Կենտկոմի
ներկայացրած զեկուցման մեջ, «խմբերի անդամների թիվը ճշգրիտ հաշվառ-
ման ենթարկել հնարավոր չէ այն պատճառով, որ նրանց ճնշող մեծամասնու-
թյունը, լինելով միաժամանակ ՌԿՊ անդամներ, ցրված են սովետական հիմ-
նարկներում ու ռազմաճակատներում, որի հետևանքով գրանցումը դարձավ
տեխնիկապես անհնարին։ Բայց պետք է նկատել, որ ՀԿՊ անդամները, որոնք
միաժամանակ ՌԿՊ անդամներ էին, գրանցման և մոբիլիզացման ենթարկվե-
ցին ՌԿՊ տեղական կազմակերպությունների կողմից» (տե՛ս ՄԼԻ-ի ԿՊԱ,
ֆ. 17, ցուց. 4, պ. մ. 19, թ. 10)։ Նկատենք, որ «ՌԿ(բ)Պ ութերորդ համագու-
մարը։ Արձանագրություններ» գրքի վերջին հրատարակության մեջ (Պետքաղ-



հրատ, Մ., 1959), 457 և 472 էջերում մատնանշված է, որ Հայաստանի ԿՊ ան-
դամների թիվը համագումարի ժամանակաշրջանում 10 հազար էր։ Այդ թիվը
հաստատող ոչ մի տվյալ չկա։

Նման խմբերի ստեղծումը բնավ չէր նշանակում, որ ՀԿՊ-ն կառուցվում է
ըստ ազգային հատկանիշների. դա ժամանակավոր մի միջոցառում էր, որ ծա-
ռայում էր հայ կոմունիստների հաշվառման նպատակին, եթե նրանք կմոբիլի-
զացվեին Հայաստանում աշխատելու համար։ Դա արվում էր ՌԿ(բ)Պ Կենտկոմի
օգնությամբ (տե՛ս ՍՄԿՊ Կենտկոմին կից ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալի արխիվ,
ֆ. 91, ցուց. 3, գ. Ե—97, թ. 83)։ 1919 թվականի մայիսի 19-ին ՌԿ(բ)Պ Կենտ-
կոմի Կազմբյուրոն որոշում է ընդունում բավարարել ՀԿՊ Կենտկոմի միջնոր-
դությունը՝ մարզային պարտիական բյուրոներ, մարզային կոնֆերանսներ հրա-
վիրելու և այլ հարցերում նրան աջակցություն ցույց տալու մասին։

ՀԿՊ Կենտկոմը փորձում էր նաև անլեգալ աշխատանք կատարել Հայաս-
տանում։

Ընդհուպ մինչև 1918 թվականը — 1919-ի սկիզբը կովկասյան բոլոր բոլ-
շևիկները ազգերի ինքնորոշման իրավունքի կենսագործումն Անդրկովկասում
պատկերացնում էին առանց այնտեղ ինքնուրույն ազգային պետություններ
ստեղծելու։ Սակայն 1919 թվականի մայիսին, այնպիսի պայմաններում, երբ
Անդրկովկասը բաժանվեց երեք բուրժուական «անկախ» ռեսպուբլիկաների՝
Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի, Ադրբեջանի բոլշևիկները ազգային
անկախության համար մղվող պայքարի դրոշը ազգային բուրժուազիայի և կալ-
վածատերերի ձեռքից խլելու նպատակով, կենսագործելով լենինյան ցուցում-
ները, առաջ քաշեցին «Անկախ Սովետական Ադրբեջան» լոզունգը։ Նույնպիսի նր-
ման լոզունգներ առաջադրեցին ՌԿ(բ)Պ Վրաստանի և Հայաստանի պարտիա-
կան կազմակերպությունները։

Միևնույն ժամանակ Ադրբեջանի կոմունիստների շրջանում առաջացավ
Ադրբեջանի Կոմունիստական պարտիա ստեղծելու հարցը։ Ա. Ի. Միկոյանը, որ
այդ ժամանակ աշխատում էր Բաքվում և ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային կո-
միտեի անդամ էր, այդ մասին պատմում է հետևյալը. «Եթե ազգային պետա-
կան կազմավորումները ճանաչելու հարցում մենք հեշտությամբ ձեռք բերեցինք
Թիֆլիսի ընկերների համաձայնությունը, ապա այս հարցում մենք, բաքվեցի-
ներս, ինքներս լինելով միաբան, հանդիպեցինք Կովկասյան Երկրկոմի բոլոր
անդամների ամենամեծ դիմադրությանը, և մենք մեծ ճակատամարտ տվեցինք
նրանց... Երկրկոմի որոշմամբ այդ հարցը փոխադրվեց ՌԿՊ Կենտրոնական
Կոմիտեի քննարկմանը՝ որպես խոշորագույն նշանակություն ունեցող կազմա-
կերպական քայլ, նրանց՝ ադրբեջանցիներին, իրավունք վերապահելով շարու-
նակել նախապատրաստական աշխատանքը։ Ինչպես հայտնի է, Կենտրոնական
Կոմիտեի քաղբյուրոն 19 թվականի դեկտեմբերին ո՛չ միայն որոշեց Ադրբեջա-
նական Կոմպարտիայի կազմակերպման հարցում կանգնել մեր տեսակետին,
այլև, հակառակ մեր բոլոր անդրկովկասյան կազմակերպությունների կարծի-
քի, հրահանգեց նույնպիսի պարտիաներ կազմակերպել Վրաստանում ու Հա-
յաստանում, թույլատրելով մեզ միավորվել համակովկասյան մասշտաբով
միասնական կազմակերպության մեջ՝ պարտիայի Երկրային Կոմիտեի ղեկա-
վարությամբ» («Бакинский рабочий», № 75, 5 ապրիլի 1925 թ.)։

Հայաստանում եղած ՌԿ(բ)Պ կազմակերպությունները Հայաստանի Կոմու-
նիստական պարտիայի մեջ միավորելու հարցը ՌԿ(բ)Պ Կենտկոմի առջև ծա-

ռացավ դեռ 1919 թվականի աշնանը։ Ինչպես մենք արդեն ասացինք, Հայաս-
տանում կոմունիստական շարժման սպեցիֆիկ առանձնահատկությունն այն
էր, որ այդ ժամանակաշրջանում, ՌԿ(բ)Պ տերիտորիալ կազմակերպություննե-
րի հետ մեկտեղ, որոնք Հայաստանում հիմնվել էին դեռ XX դարի սահմանա-
գլխին և գործում էին ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային Կոմիտեի ղեկավարու-
թյամբ, գոյություն ուներ Հայաստանի Կոմունիստական պարտիան, որը ձևա-
կանորեն չէր մտնում ՌԿ(բ)Պ կազմի մեջ և կազմակերպորեն չէր կապված Հա-
յաստանի տերիտորիայում գործող ՌԿ(բ)Պ տեղական կոմիտեների հետ։ ՀԿՊ
առջև ծառացած հատուկ խնդիրների մի մասը նա արդեն կատարել էր, իսկ
մյուս մասն այն ժամանակ վերացավ. որոշվեց Հայաստանում եղած ՌԿ(բ)Պ
բոլոր կազմակերպությունները միավորել Հայաստանի Կոմունիստական պար-
տիա անունով։ Այսպիսով, հին ՀԿՊ-ից պահպանվում էր սոսկ նրա անունը, իսկ
ներարկվում էր նոր բովանդակություն՝ ի դեմս Հայաստանում գործող ՌԿ(բ)Պ
կազմակերպությունների։ Ոչ մի որոշում հին ՀԿՊ-ի ցրման և նոր ՀԿՊ-ի
ստեղծման մասին ՌԿ(բ)Պ Կենտկոմը չի ընդունել, քանի որ նա հին ՀԿՊ-ն չէր
հակադրում Հայաստանում գործող ՌԿ(բ)Պ կազմակերպություններին, այլ
դրանք դիտում էր որպես Հայաստանի ամբողջ կոմունիստական շարժման բաղ-
կացուցիչ մասեր։ Բայց նոր հիմքի վրա կազմակերպվող Հայաստանի Կոմպար-
տիայի առջև նոր խնդիրներ դնելը, ըստ էության, նշանակում էր, որ հին ան-
վան տակ փաստորեն ստեղծվում է նոր պարտիա։ Նախկին ՀԿՊ այն անդամ-
ները, որ միաժամանակ ՌԿ(բ)Պ անդամներ էին և աշխատելու համար փոխա-
դրվել էին Հայաստան, մտան Հայաստանի նորից ստեղծվող Կոմպարտիայի
տեղական կազմակերպությունների կազմի մեջ։ Արդեն 1919 թվականի սեպ-
տեմբերի 19-ին ՌԿ(բ)Պ Կազմբյուրոն որոշում ընդունեց, որտեղ ասվում է, թե
«Հայաստանի ձևականորեն անկախ Կոմունիստական պարտիան անկախ հայ-
կական պետության սահմաններում պետք է գոյություն ունենա» և որ ՌԿ(բ)Պ
Կովկասյան Երկրային Կոմիտեի կազմում ժամանակավորապես մտցվում է Հա-
յաստանի ԿՊ Կենտկոմի ներկայացուցիչը» (ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 17, պ. մ. 38/5293,
թ. 1)։
Նկատի ունենալով այն, որ ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային կոմիտեն այն
ժամանակ բացասական դիրք էր գրավում Անդրկովկասում ազգային կոմպար-
տիաների կազմավորման հարցում, ՌԿ(բ)Պ Կենտկոմ ուղարկեց Ա. Ի. Միկոյա-
նին, որպեսզի նա Կենտկոմում հաղորդի Երկրկոմի տեսակետը։ Պարտիայի
Կենտրոնական Կոմիտեն ուշադիր կերպով քննության առավ այդ հարցը։
ՌԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոյի 1919 թվականի դեկտեմբերի 20-ի նիս-
տում, որին մասնակցում էր Վ. Ի. Լենինը, ընդունվեց հետևյալ որոշումը. «Ան-
հրաժեշտ համարելով Կոմունիստական պարտիայի գոյությունը Հայաստանի
գոյություն ունեցող ռեսպուբլիկայի սահմաններում որպես տերիտորիալ կազ-
մակերպություն, որը ենթարկված է ՌԿՊ Երկրային Կովկասյան կոմիտեին,
հիմք ընդունել պատրաստված բանաձևն ու հրահանգի նախագիծը, որ առաջար-
կել է Հայկոմինին, այդ փաստաթղթերի հիման վրա մշակել մանրամասն բանաձև
և այն մտցնել Քաղբյուրոյի քննությանը։ Միաժամանակ Քաղբյուրոն հանձնա-
րարեց Կազմբյուրոյին որոշել Հայաստանի ԿՊ Կենտկոմի կազմը» (ՄԼԻ ԿՊԱ,
ֆ. 17, ցուց. 3, պ. մ. 49, թ. 2)։ Ա. Ի. Միկոյանը ՌԿ(բ)Պ Կենտկոմին գրած
1919 թվականի դեկտեմբերի 22-ի նամակում առաջարկեց Հայկոմինու պատ-
րաստած հրահանգի նախագծում, որ լուրջ թերություններ ուներ, մտցնել մի



ամբողջ շարք սկզբունքային ուղղումներ, որոնք ընդունվեցին ՌԿ(բ)Պ Կենտ-կոմի կողմից։ Ընկ. Միկոյանը գրում էր. «Նկատի ունենալով այն, որ կովկասյան կազմակերպական հարցի վերաբերյալ Կենտկոմի Քաղբյուրոյի որոշումը տարբերվում է կովկասյան կազմակերպությունների կարծիքից, ապա խնդրում եմ այն ավելի անցավագին կերպով կենսագործելու համար ընդունված որոշման սահմաններում հրահանգը փոխել այնպես, որ ստեղծվող ազգային պարտիաները ավելի շատ լինեն անվանական, միայն ձևականորեն անկախ, իսկ ՌԿՊ կազմակերպության միասնությունն ընդհանուր առմամբ մնա անդրդվելի»։ Ընկեր Միկոյանը մտցրեց այդ հիմնական թեզիսի կենսագործումն ապահովող հետևյալ կոնկրետ ուղղումները։

«Ազգային պարտիաները ֆինանսավորվում են Երկրային կոմիտեի միջոցով»։ (Հրահանգի նախագծում այդ կետը ձևակերպված էր այսպես. «Հայաստանի Կոմունիստական պարտիան միջոցներ է ստանում անմիջականորեն ՌԿՊ Կենտկոմից, որին և հաշվետվություն է ներկայացնում» (տես ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 461, պ. մ. 32356։—Հեղինակներ)։

...«Հայաստանի Կոմունիստական պարտիան իր բաժիններն ունի Վրաստանում և Ադրբեջանում» կետի փոխարեն մտցնել մեր պարտիական նոր կանոնադրությանը համապատասխանող հետևյալ կետը. բոլոր կազմակերպություններին կից, որտեղ այդ հարկավոր է, Կովկասում ստեղծվում են ազգային փոքրամասնությունների մեջ կատարվելիք աշխատանքի բաժիններ,— Վրաստանում և Ադրբեջանում՝ հայերի մեջ կատարելիք բաժիններ, Հայաստանում՝ մուսուլմանների մեջ կատարելիք աշխատանքի բաժին և այլն։

Դուրս գցել այն կետը, թե ազգային կազմակերպությունները Երկրային կոմիտեին ենթարկվում են միայն երկրամասային քաղաքականության հարցերում, որով ընկ. ընկ. Ավանեսովն ու Հայկոմինին ցանկացել են վերապահություն անել, որ Երկրային կոմիտեն բոլորովին չպետք է միջամտի Հայաստանի ներքին քաղաքականությանը, մի բան, որ կործանարար կլիներ կովկասյան իրականության պայմաններում։ Հարկավոր է ավելացնել այսպիսի բովանդակությամբ մի կետ՝ Կովկասի տերիտորիայում բոլոր կոմունիստական կազմակերպությունների աշխատանքը ղեկավարում է Կովկասյան Երկրային կոմիտեն, որը գոյություն ունի մարզային կոմիտեի իրավունքներով» (տե՛ս ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 17, ցուց. բ/ №, պ. մ. 297, թ. 44)։

1920 թվականի հունվարի 3-ին ՌԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոն Վ. Ի. Լենինի մասնակցությամբ ընդունեց «Կոմունիստական աշխատանքի մասին Հայաստանում» որոշումը, որտեղ ասվում էր. «Պայքարը տեղական շովինիզմի դեմ և ռուսական ցարիզմի լծի տակ գտնվող ազգերի մեջ սոցիալիստական ռևոլյուցիայի պրոպագանդայի համար նպաստավոր պայմաններ ստեղծելն անհրաժեշտ են դարձնում, որ նախկին Ռուսաստանյան կայսրության սահմաններում փաստորեն կազմավորված «ինքնուրույն» պետություններում կոմունիստական կազմակերպություններն աշխատեն իբրև ինքնուրույն կոմունիստական պարտիաներ։ Կազմակերպության նման եղանակը հատկապես կարևոր է Արևելքում այն նկատառումով, որ Ասիայում կամ Ասիայի նախադռանն ապրող ժողովուրդների վստահության նվաճումը կազմում է Սովետական Ռուսաստանի և ՌԿՊ հիմնական խնդիրներից մեկը»։ Ելնելով դրանից, ՌԿ(բ)Պ Կենտկոմը որոշեց հայ պրոլետարիատի մեջ կոմունիստական կազմակերպությունների աշխատանքի հիմունքները։

ՌԿՊ Կենտկոմը որոշեց, որ «Կովկասի տերիտորիայում բոլոր կոմունիստական կազմակերպությունների աշխատանքը ղեկավարում է ՌԿՊ Կովկասյան Երկրային կոմիտեն», որ նրա որոշումները հավասարապես պարտադիր են Կովկասի բոլոր ազգային կոմունիստական պարտիաների համար, իսկ նրանց ֆինանսավորումը կատարվում է միայն Երկրկոմի միջոցով, որին պատկանում են պարտիայի մարզային կոմիտեի բոլոր իրավունքները։

Այնուհետև որոշման մեջ մատնանշվում էր, որ «Հայաստանի գոյություն ունեցող ռեսպուբլիկայի սահմաններում կոմունիստական աշխատանքը կատարում է Հայաստանի Կոմունիստական պարտիան», որ ՀԿՊ Կենտկոմն ընտրվում է Հայաստանի Կոմպարտիայի համագումարում, իսկ մինչև համագումարը ՀԿՊ Կենտկոմի անդամները նշանակվում են ՌԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի կողմից և որ ՀԿՊ ներկայացուցիչը մտնում է ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային կոմիտեի կազմի մեջ՝ մինչև նրա ընտրությունները Կովկասյան Երկրային կոնֆերանսում։ Որոշման մեջ նաև ասվում էր, որ Հայաստանի սահմաններից դուրս հայ պրոլետարիատի շրջանում աշխատանք են տանում ազգային փոքրամասնությունների մեջ կատարվելիք աշխատանքի բաժինները, որոնք գտնվում են ազգային կոմունիստական պարտիաների կամ ՌԿ(բ)Պ տեղական կոմիտեներին կից, ազգային փոքրամասնությունների մեջ կատարվելիք աշխատանքի վերաբերյալ ՌԿ(բ)Պ Կենտկոմի հրահանգի սահմանած ընդհանուր հիմունքներով, իսկ Հայաստանի սահմաններում ապրող ազգային փոքրամասնությունների մեջ կատարվելիք աշխատանքի համար կազմակերպվում են ՀԿՊ Կենտկոմին և նրա տեղական կոմիտեներին կից սեկցիաներ (ՄԼԻ-ի ԿՊԱ, ֆ. 17, ցուց.3, պ.մ.52, թ. 4)։

1919 թվականի դեկտեմբերի 29-ին ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կազմբյուրոն հաստատեց Հայաստանի ԿՊ Կենտկոմը հետևյալ կազմով՝ Վ. Երեմյան, Գ. Տեր—Մկրտչյան, Ս. Կասյան և Գ. Հայկունի։ Սակայն ՀԿՊ Կենտկոմի այդ կազմը Հայաստանում աշխատանքի չձեռնարկեց։ Դա բացատրվում է նրանով, որ դեռ 1919 թվականի սեպտեմբերին Հայաստանի պարտիական կազմակերպությունների ներկայացուցիչների կոնֆերանսում, որ հրավիրվել էր Երևանում Կովկասյան Երկրային կոմիտեի նախաձեռնությամբ, դրվել էր կոմունիստական կազմակերպությունների միավորման սկիզբը և ստեղծվել ղեկավար կենտրոն՝ ՌԿ(բ)Պ Հայաստանի կոմիտե (Արմենկոմ)։ 1920 թվականի հունվարին Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջին կոնֆերանսում ընտրվեց Արմենկոմի նոր կազմ, որը և գլխավորեց Հայաստանի պարտիական կազմակերպությունների ամբողջ գործունեությունը։ Արմենկոմի կազմում մտնում էին Անդրկովկասի և Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների ականավոր գործիչներ՝ Ս. Կասյանը, Ա. Մռավյանը, Ս. Ալավերդյանը, Հ. Կոստանյանը, Դ. Շահվերդյանը, Ա. Նուրիջանյանը, Ս. Խանոյանը և ուրիշներ։

ՌԿ(բ)Պ Կենտկոմի 1920 թվականի հունվարի 3-ի որոշումը մի շարք օբյեկտիվ պատճառներով, որոնք կասեցրին նրա իրականացումը, կենսագործվեց միայն 1920 թվականի ամռանը։ 1920 թվականի ապրիլ-մայիսին ՌԿ(բ)Պ Կենտկոմի որոշմամբ ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային կոմիտեի փոխարեն ստեղծվում է ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան Բյուրո։ 1920 թվականի մայիսի վերջին Վրաստանի և Հայաստանի ղեկավար պարտիական աշխատողների խորհրդակցությունում, որ Թիֆլիսում հրավիրել էր ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կով-



կասյան Բյուրոն, որոշվեց, որ Հայաստանի պարտիական կազմակերպությունները միավորվում են Հայաստանի Կոմպարտիայի մեջ, իսկ Վրաստանի պարտիական կազմակերպությունները՝ Վրաստանի Կոմպարտիայի մեջ։ Մայիսյան ապստամբության պարտությունից հետո Հայաստանի պարտիական կազմակերպությունների կրած ծանր կորուստների և կոմունիստների դեմ ռեպրեսիաների ուժեղացման կապակցությամբ ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան Բյուրոն 1920 թվականի հունիսին ժամանակավոր ղեկավարման համար ստեղծում է Հայաստանի Կոմպարտիայի Արտասահմանյան Բյուրո, որն սկզբում աշխատում էր Թիֆլիսում, իսկ հետո՝ Բաքվում։

1920 թվականի հուլիսի 30-ին ՌԿ(բ)Պ Կենտկոմը Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի կոմպարտիաներին տվեց պարտիայի մարզային կազմակերպությունների իրավունքներ՝ նրանց ենթարկելով ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան Բյուրոյին։ 1920 թվականի սեպտեմբերի 10-ին ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան Բյուրոն հաստատեց Հայաստանի ԿՊ Կենտկոմը հետևյալ կազմով՝ Ի. Դովլաթյան, Ա. Նուրիջանյան, Հ. Կոստանյան, Ս. Տեր—Գաբրիելյան, Ա. Խանջյան։ Կենտկոմի անդամության թեկնածուներ հաստատվեցին Շ. Ամիրխանյանը և Վ. Շահգելդյանը։ 1920 թվականի հոկտեմբերի 1-ին ՌԿ(բ)Պ Կենտկոմը հաստատեց այդ կազմը. բացառությամբ Ս. Տեր—Գաբրիելյանի, գտնելով, որ նրան չպետք է մտցնել Կենտկոմի կազմի մեջ, քանի որ նա Հայաստանում Սովետական Ռուսաստանի ներկայացուցչության պատասխանատու աշխատող է։

Դա Հայաստանի ԿՊ Կենտկոմի առաջին կազմն էր, որը ղեկավարում էր նրա կազմակերպությունների գործունեությունը Հայաստանում։ Այսպես ավարտվեց Հայաստանի Կոմունիստական պարտիայի՝ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի մարտական ջոկատներից մեկի, կազմակերպական ձևավորման պրոցեսը, որն սկսվել էր դեռ 1919 թվականի աշնանը։

Կոմունիստական շարժման զարգացումը Հայաստանում 1917—1920 թվականներին բարդ և բազմազան պրոցես է։ Այդ պրոցեսը պարզեցրած ձևով, նրա այս կամ այն կողմը դեն նետելով պատկերելու փորձերը. միայն հանգեցնում են պատմական ճշմարտության խեղաթյուրման։ Հասարակական երևույթները գնահատելիս անհրաժեշտ է հիմք ընդունել գլխավորը, որը բնութագրում է այդ երևույթները, և ոչ թե պատահականը, անցողիկը, ինչպես անում են առանձին հեղինակներ ՀԿՊ 1918—1919 թվականների գործունեությունը գնահատելիս։ Հայաստանի պատմաբանների պարտքն է՝ կարելույն չափ ճշգրիտ և վառ լուսաբանել համաշխարհային պրոլետարիատի առաջնորդ Վ. Ի. Լենինի հսկայական հոգատարությունը հայ ժողովրդի ճակատագրի նկատմամբ, Հայաստանի աշխատավորներին բուրժուազիայի և կալվածատերերի ճնշումից ազատագրելու մասին։

Վերջին տարիներս Հայկական ՍՍՌ-ում հրատարակված պատմական-պարտիական գրականության մեջ տեղ են գտել և ուրիշ լուրջ թերություններ. փորձեր՝ վերանայելու Հայաստանի ռևոլյուցիոն անցյալի առանձին իրադարձությունների ճիշտ, մարքս-լենինյան գնահատականները, հայ մանրբուրժուական նացիոնալիստական պարտիաների էությունը, փորձեր՝ քննադատության ենթարկելու բոլշևիկների տակտիկան «հայկական հարցում», պատմական փաստերի խեղաթյուրում, ոչ օբյեկտիվություն ռևոլյուցիոն շարժման առանձին գործիչների դերը լուսաբանելու գործում։

Գիտության մեջ պարտիականության լենինյան սկզբունքը պահանջում է կոնկրետ պատմական մոտեցում ռևոլյուցիոն շարժման իրադարձությունների գործիչների գնահատմանը։ Հայ ժողովուրդը հիմք ունի հպարտանալու իր պանծալի զավակներով, որոնք իրենց բոլոր ուժերը նվիրել են Սովետական իշխանության հաղթանակի համար մղվող պայքարին։ Պարտիան և ժողովուրդը սրբությամբ հարգում են նրանց հիշատակը, ովքեր տվել են իրենց կյանքը հանուն կոմունիզմի։

Հայաստանի Կոմունիստական պարտիան և հայ ժողովուրդը մեծ հարգանքով են հիշում իրենց պանծալի զավակներից մեկին՝ Բագրատ Ղարիբջանյանին, որին դաշնակները գնդակահարեցին 1920 թվականին։ Ղարիբջանյանը միանգամից չէր, որ բոլշևիկ դարձավ։ Հայտնի է, որ դեռ 1916 թվականին նա մոլորվում էր, ուներ ոչ ճիշտ հայացքներ։ Բայց նա որոնում էր և գտավ ճիշտ ուղին։ Նա մտավ բոլշևիկյան պարտիայի մեջ և անձնվիրաբար պայքարեց նրա առաջավոր շարքերում։ Նա շիտակ ու անկեղծ մարդ էր և առաջինը կբողոքեր իր կյանքն ու պայքարը գունազարդելու փորձերի դեմ։ Իսկ այդպիսի փորձեր արվել են հայ պարտիական մամուլի էջերում։ Բ. Ղարիբջանյանի անձնազոհությունն ու հերոսությունը արհեստական չափազանցման կարիք չեն զգում։

Հայաստանի պատմաբանների առջև ծառացած են մեծ և պատասխանատու խնդիրներ։ Նրանց պարտքն է՝ համարձակորեն ծավալելով քննադատությունն ու ինքնաքննադատությունը, վճռաբար վերջ տալ Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության մշակման և լուսաբանման բնագավառում եղած լուրջ թերություններին ու սխալներին։ Այդ են պարտավորեցնում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX և XXII համագումարների պատմական որոշումները։

«Коммунист», №6, 1962 թ.

---

**ՍՍՌՄ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ 1960-1980 թ.թ.**

ՀԱՆՔԱՅԻՆ ՊԱՐԱՏԱՆՈՒՅԹԵՐ

/ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՄԻԱՎՈՐ, ՄԻԼԻՈՆ ՏՈՆՆԱ/




# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՈՐՊԵՍԶԻ ԱՌԱՏ ԼԻՆԵՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԸ

ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումների իրականացման համար անհրաժեշտ է ավելի խնլացի ու լրիվ օգտագործել հողը, տեխնիկան և աշխատանքային ռեսուրսները, նվազագույն ծախսումներով ստանալ առավելագույն քանակությամբ գյուղատնտեսական մթերքներ։

Նոյեմբերյանի շրջանի պարտիական կազմակերպությունները մշակել են մի շարք գործնական միջոցառումներ ընթացիկ տարում հողի բերրիությունը և, հատկապես, անասնաբուծական մթերքների արտադրությունը զգալի չափով ավելացնելու համար։ Գյուղատնտեսության աշխատողները պարտավորվել են 1962 թվականին ավելացնել անասունների գլխաքանակը և կերի բազայի ամրապնդման ճանապարհով յուրաքանչյուր ֆուրաժային կովից, միջին հաշվով, ստանալ 1470 կգ կաթ, ամեն մի ոչխարից՝ 3,1 կգ բուրդ և ածան հավից՝ 90 հատ ձու։ Անցյալ տարվա համեմատությամբ ավելանում է մսի արտադրությունը. առաջին էտապում հարյուր հեկտար վարելահողի դիմաց արտադրելու ենք 75 ցենտներ միս (սպանդանոցային քաշով)։ Կոլտնտեսականները և սովխոզների աշխատողները ձգտում են անջրդի հողերի յուրաքանչյուր հեկտարից հավաքել 13,1 ցենտներ հացահատիկ, 14,6 ցենտներ ծխախոտ, 62,8 ցենտներ խաղող և 60,6 ցենտներ պտուղ։ Դա միանգամայն ռեալ է և իրականանալի։ Այդ են վկայում ընթացիկ տարվա առաջին ամիսների մեր գործունեության արդյունքները։ Գերակատարվել են գյուղատնտեսական համարյա բոլոր մթերքների արտադրության ու վաճառքի առաջին հինգ ամիսների առաջադրանքները, հաջողությամբ է ընթանում ցանքերի ու այգիների մշակությունը։

Հացահատիկի բարձր բերք աճեցնելու նպատակով դեռ մարտ ամսին աշնանացանի բոլոր տարածությունները փոցխվեցին ու սնուցվեցին։ Կոլտնտեսությունները, անցյալ տարվա համեմատությամբ, երկու շաբաթ շուտ սկսեցին ծխախոտի սածիլումը և եգիպտացորենի ցանքը։ Ծխախոտագործության մեջ այս տարի լայնորեն արմատավորվում է անհատական գործավարձային սիստեմը. յուրաքանչյուր ծխախոտագործ ունի իր կոնկրետ առաջադրանքը և հողակտորը։ Դրա շնորհիվ ավելի է բարձրանում ծխախոտագործների պատասխանատվությունը, յուրաքանչյուրը ձգտում է ավելի լավ մշակել իրեն հատկացված տարածությունը և բարձր բերք ստանալ։

Առանձին ուշադրություն է հատկացվում եգիպտացորենի մշակությանը։ Շրջանի մի շարք կոլտնտեսություններ այս տարի առաջին անգամ եգիպտացորենը ցանեցին շարքացանով, շարքը-շարքից 60 սմ հեռավորությամբ, այնպես, որ ցանքերը մշակվեն մեքենաներով։ Այս եղանակը թեև քառակուսի-բնային եղանակից տարբեր է, բայց մեր շրջանի խորդուբորդ ռելիեֆի պայմաններում կապահովի բարձր բերք։ Կողբի և Ղալաչայի կոլտնտեսություններն ու Թա-

մանյանի անվան սովխոզը ձեռք են բերել պարարտանյութ ցրող մեքենաներ և մեքենայացրել են հողերի պարարտացման աշխատանքը։

Յոթնամյակի չորրորդ տարին հաջողությամբ ավարտելու համար անհրաժեշտ է, ամենից առաջ, ամրապնդել կերի բազան։ Ցանքատարածությունների կառուցվածքի վերանայման շնորհիվ այս տարի եգիպտացորենի ցանքն ավելացել է 200 հեկտարով, հասնելով 1457-ի։ Մեր շրջանում առաջին անգամ կերի համար ցանվել է 64 հեկտար շաքարի ճակնդեղ, 26 հեկտար ոլոռն և լոբազգի կուլտուրաներ։

Այս տարի, 1961 թվականի համեմատությամբ, պատրաստվելու է մոտ 2,5 անգամ ավելի սիլոս, կերի համար առանձնացվելու է չորս անգամ շատ հատիկ։ Այդպիսով հնարավոր կլինի անասուններն ապահովել բավարար քանակությամբ սննդարար ու հյութալի կերով։ Միաժամանակ ամռան ամիսներին բոլոր տնտեսություններում կազմակերպվելու է անասունների հերթափոխային արածեցում, բտվող և գիրացող անասուններին տրվելու է խտացրած կեր։ Տարեկան 80—100 տոննա խոզի միս արտադրելու համար ստեղծվել է խոզերի բտման միջկոլտնտեսային ֆերմա։ Ցեղը բարելավելու նպատակով կազմակերպվել է անասունների արհեստական սերմնավորում։

Այգեգործության և պտղաբուծության զարգացման հսկայական հնարավորություններ կան մեր շրջանում։ Անցյալ տարի շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով հավաքեցին 65 ցենտներ խաղող՝ նախատեսված 62-ի և 83 ցենտներ պտուղ, նախատեսված 60-ի փոխարեն։ Առանձին տնտեսություններ հասան ավելի բարձր ցուցանիշների։ Այսպես, Դովեղի կոլտնտեսությունը հեկտարից ստացավ 97,5 ցենտներ խաղող, իսկ «Լալվարի» սովխոզը՝ 88,5 ցենտներ. նույն այդ սովխոզում Վերա Շուգաևայի ղեկավարած օղակը 12 հեկտար այգու յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով հավաքեց 156,4 ցենտներ խաղող։ Դովեղի կոլտնտեսության այգեգործ Գալուստ Հակոբյանն իրեն ամրացված 0,75 հեկտար տարածությունից հավաքեց 193,4 ցենտներ խաղող։

Բարձր բերք ստացվեց հատկապես պտղաբուծությունից։ «Ձեյթուն» սովխոզը յուրաքանչյուր հեկտարից հավաքեց հարյուր ցենտներ պտուղ, նախատեսված 71,5-ի փոխարեն. այստեղ Գ. Հովհաննիսյանի ղեկավարած բրիգադան 29,5 հեկտար այգու յուրաքանչյուր հեկտարից ստացավ 143,3 ցենտներ միջին բերք, իսկ Թումանյանի անվան սովխոզից Ս. Բեջանյանի ղեկավարած օղակը 55 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացավ 113,7 ցենտներ պտուղ։

Այս տարի շրջանի այգեգործները ձգտում են գերազանցել անցյալ տարվա արդյունքները։

Ելնելով Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումներից, մտադիր ենք շրջանում զարկ տալ այգեգործությանը։ Այդ նպատակով կառուցվում են նոր ջրհան կայաններ Դեբեդ և Ոսկեպար գետերի վրա. ըստ որում միայն Դեբեդի վրա արդեն կառուցվող ջրհան կայանի միջոցով լրացուցիչ կերպով ոռոգելի կդառնա մոտ հազար հեկտար տարածություն։ Առաջիկա երկու-երեք տարում զգալիորեն ընդարձակվելու է այգիների տարածությունը. միայն ընթացիկ տարում տնկվելու է խաղողի ու պտղի 190 հեկտար նոր այգի։

Մեզ մոտ հիմնականում զարգանալու է կաթնամսատու տավարաբուծությունը և լեռնա-անտառային խոզաբուծությունը։



Բացի այգեգործական սովխոզներից, Նոյեմբերյանի շրջանի մնացած բոլոր տնտեսություններում կան մեծ հնարավորություններ (անտառային վայրի մրգեր, հատապտուղներ, կաղին և այլն) խոզաբուծության զարգացման համար։ Առանձին տնտեսություններում մսուրային պահպանության պայմաններում զարգացնելու ենք խոզի սպիտակ խոշոր ցեղը, որը վաղահաս է, արդյունավետ։

Մեծ ուշադրություն ենք հատկացնում կիսանրբագեղմ ոչխարաբուծության զարգացմանը. առանձին կոլտնտեսություններում (Կողբ, Կոթիգեղ) մինչև յոթնամյակի վերջը կրկնապատկվելու է կիսանրբագեղմ ոչխարների առկա գլխաքանակը։ Վերջին տարիներս երկու-երեք անգամ ավելացել են թռչունների գլխաքանակն ու եկամտաբերությունը։ Նախատեսվում է հետագայում ավելի զարգացնել թռչնաբուծությունը։ Բարձրանալու է նաև շերամապահության ու մեղվաբուծության եկամտաբերությունը։

Մեր առջև ծառացած լուրջ խնդիրների կատարումը պահանջում է վճռականորեն բարձրացնել պարտիական կազմակերպական ու քաղաքական աշխատանքի մակարդակը, խորամուխ լինել կոլտնտեսությունների և սովխոզների գործունեության մեջ։ Պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ մարդկանց սովորեցնել աշխատանքի լավագույն օրինակների հիման վրա, արտադրության մեջ արմատավորել գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը։

Այդ ուղղությամբ մեզ մոտ որոշ աշխատանք կատարվում է։ Հաճախակի կազմակերպվում են զրույցներ, զեկուցումներ՝ նվիրված գյուղատնտեսության առաջավորների փորձին, գործում են փարոսների աշխատանքը ուսումնասիրող առանձին խմբակներ։ Հասարակական հիմունքներով պարտշրջկոմին կից ստեղծվել է առաջավորների փորձն ուսումնասիրող և արմատավորող հանձնաժողով, որը պլենումից հետո եռանդուն գործունեություն է ծավալել։ Այսպես, ուսումնասիրվել և առանձին թերթիկով մասսայականացվել է այգեգործության առաջավորներ Վ. Շուգաևայի, Գ. Հովհաննիսյանի, Գ. Հակոբյանի, Ս. Բեջանյանի, Բ. Հովհաննիսյանի, Ն. Իսկանդարովի և Ռ. Սզատյանի փորձը։ Փորձի փոխանակման նպատակով կազմակերպել են առաջավոր մարդկանց հանդիպումներ ինչպես իրենց, այնպես էլ հարևան սովխոզների ու կոլտնտեսությունների աշխատավորների հետ։

Նոյեմբերյանի կաթնաանասնապահական սովխոզում պարտիական կոմիտեն ստեղծել է փարոսների և արտադրության առաջավորների փորձն ուսումնասիրող խմբակ. խմբակում ուսումնասիրվել է կթվորուհիներ Հ. Հարությունյանի և Գ. Աղբալյանի առաջավոր փորձը, որոնք անցյալ տարի յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել էին 2243—2275 կգ կաթ։ Առաջավորների օրինակով սովխոզի բոլոր տեղամասերում լայն շարժում է սկսվել անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու համար։ Բավական է ասել, որ ընթացիկ տարվա չորս ամսում, անցյալ տարվա նույն ժամանակի համեմատությամբ, 65 կիլոգրամով ավելացել է յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը։

Պարտիական կազմակերպությունները ջանում են բրիգադներն ու ֆերմաները ամրապնդել ձեռներեց կադրերով։ Մենք ձգտում ենք բոլոր տնտեսություններն ապահովել գյուղատնտեսական բարձրորակ մասնագետներով։

Կենտկոմի պլենումից հետո Ղալաչայի կոլտնտեսության գյուղատնտես

Ս. Ազատյանի նախաձեռնությամբ վերանայվեց ցանքաշրջանառության սիստեմը, որի մեջ փոփոխություններ մտցվեցին. նախկինում ցանքաշրջանառության մեջ կորնգանը զբաղեցնում էր երկու դաշտ. այս տարի այն զբաղեցնում է միայն մեկ դաշտ. դրա փոխարեն 50 հեկտարով ավելացվեց եգիպտացորենի ցանքատարածությունը։ Առաջին անգամ կերի համար ցանվեց երկու հեկտար շաքարի ճակնդեղ, վեց հեկտար ոլոռն և լոբազգիներ։ Սակայն առանձին տեղերում դեռևս վատ են օգտագործվում մասնագետների ուժերն ու գիտելիքները, հոգատար չեն, հատկապես, երիտասարդ մասնագետների նկատմամբ, աչքաթող են անում նրանց դաստիարակության գործը։ Թերևս դրանով պետք է բացատրել, որ առանձին մասնագետներ (Դոստլուի կոլտնտեսության գլխավոր զոոտեխնիկ Ա. Սարգսյանը, Թումանյանի անվան սովխոզի ագրոնոմ Ռ. Դարբինյանը) հեռու են կանգնած արտադրության գործերից, վատ են կատարում իրենց պարտականությունները։

Վերջերս Արճիսի կոլտնտեսության պարտբյուրոյի քարտուղար Փ. Միկիչյանը դիմումով բանսարկել էր բարձրագույն կրթության տեր գյուղատնտեսին և պահանջել էր շրջկոմից աշխատանքից ազատել նրան։ Պարտշրջկոմը՝ արտադրական-տերիտորիալ վարչության առընթեր ՀԿՊ Կենտկոմի պարտկազմակերպչի հետ միասին ուսումնասիրելով վերոհիշյալ հարցը, պարզեց, որ մասնագետից գոհ են կոլտնտեսության վարչությունը և կոլտնտեսականները։ Մասնագետի հանդեպ վատ վերաբերմունք ցուցաբերելու համար շրջկոմի բյուրոն դատապարտեց պարտբյուրոյի քարտուղարի վարքագիծը և նրան հանեց պարտկազմակերպության բյուրոյի քարտուղարի պոստից։

ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումը պարտիական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց սովխոզներում ու կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպման ու վարձատրման սիստեմի կատարելագործման, գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռվածության խթանման վրա։ Այդ ասպարեզում մենք ունենք որոշ փորձ։ Շրջանի առաջավոր կոլտնտեսություններում աշխատողների վարձատրությունը պայմանավորված է արտադրվող մթերքների քանակով ու որակով։ Այգեգործության մեջ, ծխախոտի ու եգիպտացորենի մշակության գործում մեզ մոտ արմատավորվել է անհատական ու փոքր խմբային գործավարձային սիստեմը, կիրառվում են լրացուցիչ վարձատրության տարբեր ձևեր և այլն։ Ահա մի օրինակ։ Նոյեմբերյանի կոլտնտեսությունում, սահմանված կարգի համաձայն, կթվորուհուն տրվում է կաթի համախառն արտադրանքի պլանի գերակատարածի 25 տոկոսը։ Այսպես, օրինակ, կթվորուհիներ Ս. Գիշյանը, Ս. Ամիրաղյանը և Ս. Անանյանն իրենց խնամքի տակ գտնվող յուրաքանչյուր կովից պլանով նախատեսված 1450 կգ կաթի դիմաց անցյալ տարի ստացան 1550—1630 կգ կաթ, որի համար որպես լրացուցիչ վարձատրություն նրանցից ամեն մեկն ստացավ 150—210 կգ կաթ։ Այդ նույն տնտեսությունում այգեգործին տրվում է բերքատվության պլանի գերակատարած բերքի 30 տոկոսը։ Հ. Գիշյանի օղակը 1961 թ. հեկտարից պլանով նախատեսված 60 ցենտների փոխարեն հավաքեց 137 ցենտներ խաղող, որի համար օղակին լրացուցիչ վարձատրություն տրվեց 23 ցենտներ խաղող։ Ծխախոտագործուհի Ս. Գուլքանյանը մշակել է 0,4 հեկտար ծխախոտ. պլանով նախատեսված 5,6 ցենտների փոխարեն նա ստացել է 7 ցենտներ ծխախոտի բերք, որի համար նրան որպես պարգևահավելում տրվել է 123 ռուբլի։



Ինչպես կարելի է նկատել, լրացուցիչ վարձատրության սիստեմի խելացի կազմակերպումը նյութապես շահագրգռում է աշխատավորներին՝ անընդհատ բարձրացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, տարեցտարի ավելացնելու հանրային տնտեսության եկամուտները։ Բայց այդ ուղղությամբ անելու շատ գործ կա։ Մենք մտադիր ենք կոլտնտեսություններում աստիճանաբար անցնել ամենամսյա և եռամսյակային դրամական վարձատրության։

Արտադրության վրա պարտիական հսկողությունն ուժեղացնելու նպատակով շրջանի անասնապահական 14 ֆերմաներում ստեղծվել են պարտիական խմբեր. վերջին մեկ տարում տասնյակ կոմունիստներ ու կոմերիտականներ մշտական աշխատանքի են ուղարկվել անասնաբուծական ֆերմաները։ Սակայն այդ գործում կան էական թերություններ. օրինակ՝ Կոթիգեղի կոլտնտեսության պարտիական կազմակերպության 47 անդամներից 25-ը ղեկավար աշխատանք են կատարում և միայն 11-ն են շարքային աշխատող (անասնապահական ֆերմաներում կա ընդամենը երկու կոմունիստ)։ Դովեղի կոլտնտեսության 23 կոմունիստներից երեքը և կոմերիտականներից երկուսն են միայն աշխատում անասնաբուծության բնագավառում. այստեղ անասնապահներ չունենալու պատճառով մարդիկ են վարձվում հարևան բնակավայրերից։

Հաջող անցավ ոչխարների գարնանային խուզը. մեր տնտեսություններում այս տարի յուրաքանչյուր ոչխարից ավելի շատ բուրդ է ստացվել, քան անցյալ տարի։ Այժմ ծավալուն նախապատրաստական աշխատանքներ են կատարվում նաև անասունների արոտը հաջող կազմակերպելու ուղղությամբ։ Կարգավորվել են կաթի ընդունման կետերը՝ անխափան կերպով կաթն ընդունելու, կորուստներ և շռայլումներ թույլ չտալու նպատակով. յայլաղներում կազմակերպվել են նաև պարենային ու արդյունաբերական ապրանքների վաճառքի խանութներ, կրպակներ։ Միջոցառումներ են ձեռնարկված անասնապահների կուլտուրական և բժշկական սպասարկումը լավ կազմակերպելու համար։

Նոյեմբերյանի պարտշրջկոմը, Ալավերդու կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության առընթեր ՀԿՊ Կենտկոմի պարտկազմակերպչի հետ մեկտեղ, ձգտում է արագորեն վերացնել աշխատանքում եղած թերությունները, հենց այս տարի հասնել գյուղատնտեսական մթերքների բարձր արտադրության։

Սակայն կան մի շարք հարցեր, որոնք անհապաղ լուծում են պահանջում։ Շրջանի գյուղատնտեսության հետագա զարգացումը մեծ չափով պայմանավորված է ջրովի հողատարածությունների ընդարձակմամբ։ Այդ նպատակով Դեբեդ գետի վրա կառուցվում են ջրհան կայաններ, նախագծվում են նորերը։ Ոսկեպար գետի վրա արդեն կառուցվել է նոր ջրհան կայան, որով ոռոգելի կդառնա կաթնաանասնապահական սովխոզի երեք հարյուր հեկտար վարելահողը։ Բայց ռեսպուբլիկական կազմակերպությունները (Ջրային տնտեսության մինիստրություն) պետք է արագացնեն տրանսֆորմատորի ստացման և ջրհան կայանի կառուցման ու շահագործման աշխատանքները։

Ռեսպուբլիկայի գիտության աշխատողները դեռևս լուրջ օգնություն չեն ցույց տալիս մեր շրջանի կոլտնտեսություններին ու սովխոզներին։ Վաղուց մեզ մոտ կազմակերպված են գիտահետազոտական տարբեր ինստիտուտների հենակետեր։ Այսպես, Ղալաչա գյուղում է գտնվում երկրագործության ինստի-

տուտի փորձադաշտը, Կողբում՝ այգեգործության և պտղաբուծության ինստիտուտի հենակետը։ Ցավոք սրտի, արտադրության մեջ շատ դանդաղ են արմատավորվում գիտական աշխատանքների արդյունքները, տարիներով շարունակվում են փորձերը։ Սերտ կապ գոյություն չունի արտադրության ու գիտության միջև։

Ռեսպուբլիկայի մյուս շրջանների համեմատությամբ Նոյեմբերյանի շրջանը ամենից շուտ է սկսում հացահատիկի բերքահավաքը։ Մեր դաշտերում աճել է լավ բերք։ 3723 հեկտար հացահատիկի տարածությունը պետք է հնձենք 22 կոմբայնով միայն. բերքահավաքը ժամանակին և անկորուստ ավարտելու համար անհրաժեշտ են բավարար չափով հացահատիկի լրացուցիչ կոմբայններ։ Դրա համար «Գյուղտնտեխնիկայի» ռեսպուբլիկական միավորումը պետք է հացահատիկի կոմբայններով ապահովի կոլտնտեսությունները և սովխոզները։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը մսի և յուղի գնման գների բարձրացման վերաբերյալ և այդ կապակցությամբ նրանց Դիմումը ուղղված գյուղատնտեսության աշխատավորներին, գյուղի բոլոր կոմունիստներին ու կոմերիտականներին, մեծ ոգևորությամբ ընդունեցին մեր շրջանի կոլտնտեսականները և սովխոզների բանվորները, գյուղատնտեսության մասնագետները։ Ի պատասխան գյուղի նկատմամբ պարտիայի ու կառավարության մեծ հոգատարության, մեր աշխատողները բարձր գիտակցությամբ այժմ եռանդուն ջանքեր են գործադրում անասնաբուծական մթերքների արտադրությունը շեշտակիորեն բարձրացնելու համար։

Գ. ՆԱԽՇՔԱՐՅԱՆ
ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմի քարտուղար

## ՕՐԻՆԱԿԵԼԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԸ

Աշտարակի շրջանի Ոսկեվազ գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտկազմակերպության գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակը հաջողությամբ ավարտեց իր ուսումնական տարին։ Խմբակում ընդգրկված արտադրության հրամանատարները՝ բրիգադավարները, անասնապահական ֆերմաների վարիչները և առաջավոր կոլտնտեսականները մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրեցին ՍՄԿԿ նոր Ծրագիրը, պարտիայի XXII համագումարի մյուս նյութերը։ Ուսումնական տարվա ընթացքում պարապմունքներն անցան կազմակերպված, գաղափարական բարձր մակարդակով, ունկնդիրների ակտիվ մասնակցությամբ։

Այս խմբակի արդյունավետ գործունեությունն ամենից առաջ պայմանավորված է նրա ղեկավարի, կոլտնտեսության վարչության նախագահ Գ. Գյուրջյանի լավ աշխատանքով։ Նա քաղաքականապես պատրաստված է, ունի պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձ և բարեխիղճ է կատարում պարտիական հանձնարարությունը։

Գ. Գյուրջյանը խոշոր տնտեսության ղեկավար է, միշտ թաղված անհատնում գործերի ծովում, տնտեսական առօրյա հոգսերով տարված։ Բայց նա ժամանակ է գտնում զբաղվելու իր սիրած աշխատանքով։ Պրոպագանդիստն իր



նկատմամբ պահանջկոտ է, խնամքով է նախապատրաստվում պարապմունքներին։ Նա ո՛չ միայն հանգամանորեն ուսումնասիրել է ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, լավ ըմբռնել պարտիայի Ծրագրի հիմնական դրույթները, այլև ուսումնական տարվա ընթացքում վերստին ընթերցել է մարքսիզմ-լենինիզմի կլասիկների որոշ աշխատություններ, կարդացել պարտիայի պատմության, էկոնոմիկայի առանձին հարցերին վերաբերող գրքեր, հոդվածներ։ Իր ձեռքի տակ ունի կոլտնտեսության գործունեությունն ու զարգացման հեռանկարները բնութագրող բազմազան տվյալներ՝ տնտեսագիտորեն հաշվարկված ու վերլուծված, որոնք խմբակի ղեկավարը հմտորեն օգտագործում է պարապմունքների ժամանակ։ Միաժամանակ նա օգտագործում է քարտեզ, պարտիայի համագումարի որոշումները պատկերող դիտողական նյութեր, հասարակական հիմունքներով գործող իրենց քաղլուսկաբինետի կազմած «Ոսկեվազը քսան տարում» ցուցահանդեսի էքսպոնատներ։

Թեման լավ յուրացնելուց հետո Գյուրջյանը կազմում է պարապմունքի սեղմ պլան, նշում անցկացվելիք զրույցի հիմնական հարցերը, օժանդակ թվերն ու փաստերը, ունկնդիրներին տրվող տնային հանձնարարությունները և այլն։ Բայց նա չի կառչում այդ պլանին, այն օգտագործում է ստեղծագործաբար։

Նոր նյութի հաղորդման ժամանակ պրոպագանդիստը շարադրում է թեմայի հանգուցային հարցերը, պարզաբանում դրանցից դժվարամարսները. Նրա խոսքը կենդանի է, զուրկ վերացականությունից ու շաբլոնից։ Խմբակի ղեկավարը պարապմունքն այնպես է վարում, որ ունկնդիրներն ավելի շատ խոսեն, ազատ արտահայտեն իրենց մտքերը, դատողությունները։ Եվ դա հնարավորություն է ընձեռում անկաշկանդ ու աշխույժ զրույցի ժամանակ համակողմանիորեն քննարկելու թեման։

«Լենինյան պարտիան կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի կազմակերպիչն է»—այսպիսին էր ուսումնական տարվա վերջին պարապմունքներից մեկի թեման։ Այն ուներ մի տեսակ ամփոփիչ բնույթ, այնտեղ քննարկվող հարցերը կապվում էին խմբակի կողմից տարվա ընթացքում ուսումնասիրած շատ թեմաների հետ։ Սկսելով զրույցը, պրոպագանդիստն ունկնդիրներին առաջադրեց նախօրոք մտածված մի շարք հարցեր, որոնց պատասխանը չէր կարող «այո՛» կամ «ո՛չ» լինել։

Խմբակի բոլոր անդամները մասնակցեցին զրույցին. մեկը պատմում էր, մյուսը լրացնում, երրորդը առարկում, իր կարծիքը հայտնում։ Խոսելով մասսաների հետ անխզելի կապի՝ որպես Կոմունիստական պարտիայի ուժի և ամրության աղբյուրի մասին, ունկնդիր Մ. Մանուկյանը ցույց տվեց, որ պարտիան իր ղեկավար և ուղղություն տվող դերը իրականացնում է աշխատավորների մասսայական կազմակերպությունների, Սովետների միջոցով և որ առանց ժողովրդական մասսաների ակտիվ գործունեության պարտիան չէր կարող հաջողությամբ պսակել մեր երկրում սոցիալիզմի լիակատար և վերջնական կառուցումը։

— Պարտիայի ու ժողովրդի միջև հաստատվել են փոխադարձ վստահության խոր կապեր,— լրացնում է Ա. Կարապետյանը,— ժողովուրդը պարտիայի քաղաքականությունն ընդունում է որպես իր քաղաքականությունը, պարտիայի պլանները՝ իր պլանները։

— Ինչպիսի՞ք են մեր պլանները առաջիկա քսան տարում, որն է մեր խըն-

դիրը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համաժողովրդական պայքարում,— դիմում է ունկնդիրներին պրոպագանդիստը։

— Մեր կոլտնտեսությունը պլանավորել է,— պատասխանում է Ա. Վիրաբյանը,— խաղողի համախառն արտադրությունը 1980 թվականին հասցնել 29600 ցենտների, անցյալ տարվա 14670 ցենտների դիմաց, ֆուրաժային կովի կաթնատվությունը 2260-ից՝ 3500 լիտրի։ Նման աճ է նախատեսվում նաև արտադրության մյուս ճյուղերում։

Մասնակցելով զրույցին, ունկնդիր Ղ. Հովհաննիսյանը խոսում է գյուղատնտեսության բնագավառում եղած ռեզերվների հայտաբերման և օգտագործման, աշխատատար պրոցեսների մեքենայացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին։ Ռ. Գևորգյանը խոսելով գյուղատնտեսության զարգացման հեռանկարների մասին, նշեց, որ պարտիայի ու կառավարության հոգատարությամբ Հայաստանում ստեղծվում է երկրորդ Արարատյան դաշտը։ Արզնի-Շամիրամ ջրանցքի բազայի հիման վրա Երևանի և Աշտարակի միջև ընկած խոպան տարածությունները վերածվելու են այգեստանների, կառուցվում են նոր գեղեցիկ ավաններ, ճանապարհներ և այլն։ Նրանցից հետո ունկնդիր Վ. Նազարյանը պատմում է, թե հատկապես Աշտարակի շրջանի և իրենց կոլտնտեսության համար ինչ նշանակություն կունենա Ապարանի ջրամբարի կառուցումը, որի շահագործմամբ կոռոգվի 7500 հեկտար հող։

Աշխույժ զրույցի ձևով քննարկվեցին նաև թեմայի մյուս հարցերը։ Այսպիսով ոչ միայն հեշտությամբ յուրացվեց ուսումնասիրվող թեման, այլև ճշգրտվեցին, խորացվեցին ու ամրապնդվեցին ունկնդիրների ինքնուրույն աշխատանքով ձեռք բերված տեսական գիտելիքները։ Զրույցը համառոտակի ամփոփեց Գ. Գյուրջյանը և ապա պարզ ու մատչելի շարադրեց նոր՝ «Պարտիական կյանքի լենինյան նորմերի ու կոլեկտիվ ղեկավարության սկզբունքների հետագա զարգացումը» թեման։ Ունկնդիրների ուշադրությունը հրավիրելով միայն հիմնական և առավել դժվարին հարցերի վրա, իր խոսքը համոզիչ դարձնելու համար պրոպագանդիստը օգտագործեց մի քանի թվեր, տեղական կյանքից առնված ակնառու փաստեր։ Ինչպես միշտ, այնպես էլ այս անգամ նա խոսում էր կենդանի ու պատկերավոր լեզվով և առանց կոնսպեկտին նայելու։ Նյութի շարադրանքը ծանրաբեռնված չէր վիճակագրական տվյալներով ու ցիտատներով։

Պրոպագանդիստին հաջողվում է ուսումնական ծրագրով նախատեսված թեմաները սերտորեն կապել կոլտնտեսության գործնական խնդիրների հետ։ Այսպես, պարապմունքներից մեկում, երբ քննարկվում էին առաջիկա քսան տարում գյուղատնտեսության զարգացման հարցերը, ունկնդիրները պատմեցին, թե առաջիկա քսան տարում ինչպես է զարգանալու իրենց հարազատ գյուղը, որքան է ավելանալու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, ինչպես կարելի է աշխատանքն ավելի արդյունավետ կազմակերպել, օգտագործել հանրային տնտեսության ներքին ռեզերվները և այլն։

— Այս տարի մեր կոլտնտեսությունում,— ասում է ունկնդիր Ա. Վարդանյանը,— մեծապես պետք է ավելանա անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Իմ կատարած հաշվարկումներով, դրան չի կարելի հասնել առանց հացահատիկի արտադրության ավելացման, մասնավորապես եգիպտացորենի ցանքատարածությունների ընդարձակման։



— Իսկ ինչի՞ հաշվին ավելացնել եգիպտացորենի ցանքերը,— հարցնում է ունկնդիր Ռ. Մնացականյանը։

— Այս տարի պետք է ավելացնել խոզանացան եգիպտացորենի ցանքը,— շարունակում է Ա. Վարդանյանը,— բացի այդ, Ագարակի դաշտում ունենք 60 հեկտար տարածություն, որն զբաղեցված է բազմամյա խոտաբույսերով։ Այնտեղ յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 20 ցենտներ չոր խոտ, որը հավասար է 11 ցենտներ կերային միավորի, մինչդեռ անցյալ տարի խոզանացան եգիպտացորենի յուրաքանչյուր հեկտարից ստացանք 490 ցենտներ կանաչ մասսա, որը հավասար է 80 ցենտներ կերային միավորի։

Այս խմբակը երրորդ տարին է, որ ուսումնասիրում է գյուղատնտեսության էկոնոմիկան։ Խմբակի շատ ունկնդիրներ ձեռք են բերել տնտեսական կոնկրետ գիտելիքներ և կարողանում են դրանք օգտագործել իրենց պրակտիկ աշխատանքում։

Պարապմունքներից մեկում, երբ խոսվում էր արտադրական ռեզերվների լրիվ օգտագործման, նոր հողերի իրացման, մեխանիզացիայի կիրառման մասին, բրիգադավար Խ. Թովմասյանը համոզիչ կերպով ցույց տվեց, որ առանց մեծ ծախսումների կարելի է իրենց հողերը մաքրել քարերից, միջնակները վերացնել, դրանով իսկ զգալի չափով ընդլայնել մշակելի հողատարածությունը և այդ հողային մասսիվները ամբողջապես դարձնել մեքենահարմար։ Նրա այս առաջարկությունը պաշտպանություն գտավ կոլտնտեսության վարչության և սկզբնական պարտիական կազմակերպության կողմից. այդ գործին առաջինը նախաձեռնեց ինքը՝ Խ. Թովմասյանը. Նրա ղեկավարած բրիգադան մաքրեց քսան հեկտար տարածություն և ցանեց եգիպտացորեն ու ոլոռ։

Ունկնդիրները բերում էին թվեր ու փաստեր, համեմատում դրանք, այս կամ այն հարցի վերաբերյալ արտահայտում իրենց կարծիքը, նկատառումները։

Ոսկեվազում ամռան ամիսներին պակասում է ոռոգման ջուրը, այն չի բավարարում այգիներին։ Ունկնդիր Վ. Թովմասյանը կատարել է մի հետաքրքրական հաշվարկ, ըստ որի կարելի է ոչ մեծ ծախսումներով՝ պոմպի օգնությամբ դուրս մղել իրենց գյուղի աղբյուրներից և ճահիճներից ֆիլտրվող ջուրը և դրանով ոռոգել 50—60 հեկտար այգի։ Կամ՝ Ա. Կարապետյանը խոսելով կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում սովետական գյուղի զարգացման մասին, արծարծեց այն միտքը, որ իրենց կոլտնտեսությունում այժմ իսկ կոմունալ-կենցաղային մի շարք ծառայություններից, օրինակ՝ ջրից և էլեկտրաաղացից կարելի է անվճար օգտվել։

Պրոպագանդիստը ուշի-ուշով հաշվի է առնում իր ունկնդիրների գործին օգնող ամեն մի խելացի առաջարկ և դրանք ներկայացնում վարչությանը՝ ընթացք տալու համար։ Բայց դա չի նշանակում, որ քաղխմբակի պարապմունքը վերածվում է ինչ-որ արտադրական խորհրդակցության, կամ պարտիական ժողովի, ուր քննության են առնվում արտադրությանը վերաբերող հարցեր։ Ձեռք բերելով տեսական անհրաժեշտ գիտելիքներ, խմբակի ունկնդիրները խորամուխ են լինում իրենց տնտեսության էկոնոմիկայի բարդ հարցերում, ավելի լավ կազմակերպում աշխատանքը իրենց ղեկավարած տեղամասերում։

Խմբակում կան առանձին ընկերներ, որոնք դժվարանում են ինքնուրույն շարադրել նյութը, կոնսպեկտ կազմել. այդպիսիների նկատմամբ պրոպագանդիստը ցուցաբերում է անհատական մոտեցում՝ խորհուրդ է տալիս, սովորեց-

նում, թե ինչպես պետք է օգտվել գրքից, նշումներ ու քաղվածքներ անել, օգտագործել դրանք։

Ուսանելի է Ոսկեվազի կոլտնտեսության գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող քաղխմբակի և նրա ղեկավար՝ Գ. Գյուրջյանի աշխատանքի փորձը։

Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
ՀԿՊ Աշտարակի շրջանի պրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի վարիչ

## ՀԱՆԴԻՊՈՒՄ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏՆԵՐԻ ՀԵՏ

Քաղաքական լուսավորության սիստեմում ավարտվեց ուսումնական տարին։ Մեր ամսագրի խմբագրության աշխատակիցը եղավ ռեսպուբլիկայի մի շարք սկզբնական պարտիական կազմակերպություններում, հանդիպումներ ունեցավ պրոպագանդիստների հետ։ Զրույցների ժամանակ նրանք պատմեցին, թե ուսումնական տարվա ընթացքում իրենց ղեկավարած խմբակներում ու սեմինարներում ինչպես էր կազմակերպված ՍՄԿՊ XXII համագումարի նյութերի ուսումնասիրությունը։

Ստորև տպագրում ենք երկու պրոպագանդիստների հաղորդումները.

Ա. ՄԵԼԻՔ—ՍԱՀԱԿՅԱՆ (Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանից)— Ես ղեկավարում էի մեխանիկական ցեխում կազմակերպված ընթացիկ քաղաքականության ուսումնասիրող քաղխմբակը, որտեղ ընդգրկված էին քսան մարդ։ Ունկնդիրների մեծ մասն ուներ միջնակարգ կրթություն, նրանցից չորսը՝ անպարտիականներ էին։

Ուսումնասիրում էինք ՍՄԿՊ նոր Ծրագիրը, պարտիայի XXII համագումարի նյութերը։ Խմբակի անդամների ակտիվությունը բարձր էր. նրանք ջանում էին ավելի լավ հասկանալ պարտիայի Ծրագրի պատմական նշանակությունը, խոր ուսումնասիրել կոմունիստական շինարարության տեսական ու գործնական պրոբլեմները։

Ինչ խոսք, որ այդ հանգամանքը չի կարող չուրախացնել ու չոգևորել ամեն մի պրոպագանդիստի։ Ես աշխատում էի բավարարել իմ ուշադիր ունկնդիրների հետաքրքրությունը, ավելի գրավիչ անցկացնել պարապմունքները։

Մեզ մոտ պարապմունքի հիմնական մեթոդը եղել է ընկերական աշխույժ զրույցը։ Նոր նյութը հաղորդելիս ես աշխատում էի շարադրել միայն թեմայի հիմնական հարցերը, խմբակի անդամների ուշադրությունը կենտրոնացնելով դրանց վրա. որպեսզի անցնելիք նյութը լինի ավելի համոզիչ ու տպավորիչ, աշխատել եմ իմ ներածական խոսքի ժամանակ օգտագործել գործարանի, ցեխի ու նրանց մարդկանց կյանքը բնութագրող առանձին թվեր ու փաստեր, օրինակներ։ Աշխատել եմ այնպես վարել զրույցները, որ մարդիկ կամավոր, ինքնաբուխ կերպով հանդես գան և քննարկվող հարցի շուրջ անկաշկանդ արտահայտեն իրենց մտքերը, դատողությունները։ Ինչ խոսք, որ այդպիսի մթնոլորտում «պասսիվներ» չէին կարող լինել։

Իմ և ունկնդիրների միջև հաստատվել էին պարզ, ընկերական, փոխադարձ հարգանքի վրա հիմնված հարաբերություններ։ Յուրաքանչյուր պարապմունքի վերջում համառոտակի տեղեկություններ էի հաղորդում մեր երկրի ներքին ու միջազգային կյանքի կարևոր իրադարձությունների մասին, ունկնդիրների պահանջով, հաճախ, պարապմունքն ավարտելուց հետո զրուցում էի նոր լույս տեսած գեղարվեստական գրքերի, ցուցադրվող կինոնկարների շուրջ։ Բայց դրանով չէին սպառվում իմ պարտականությունները։ Ես միշտ հետաքրքրվել եմ իմ ունկնդիրների կյանքով ու աշխատանքով, ուսումնասիրել նրանց բնավորությունը, հակումները, օգնել իմ խորհուրդներով։

Քաղաքական կրթության բարերար ազդեցությունը արտացոլվել է ունկընդիրներիս աշխատանքային գործունեության մեջ, նրանց վարքագծում։ Խմբակի անդամներից շատերը օրինակելի ագիտատորներ են, հասարակական ակտիվ գործիչներ։ Մարդկանց գլխում ծագած ստեղծագործական լավ մտահղացումները, աշխատելու մեծ եռանդը լավագույն ապացույցն են, որ իմ գործադրած ջանքերը զուր չեն անցել։

Ահա քաղխմբակի ակտիվ ունկնդիրներից մեկը՝ լավագույն վարպետ ու նորարար Ս. Հակոբյանը, որը վերջին ամիսներին արել է ռացիոնալիզատորական ութ առաջարկություն. նրա առանձին առաջարկությունների արմատավորման շնորհիվ արտադրական որոշ պրոցեսներում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 1,5—2 անգամ։ Կամ՝ Գ. Շտոյանը կոմունիստական աշխատանքի բրիգադայի ղեկավար է, ցեխի կոմերիտմիության բյուրոյի անդամ և լավագույն ռացիոնալիզատոր։ Այդպիսիներից են նաև Ս. Սաքանյանը, Ռ. Քալանթարյանը, Խ. Գասպարյանը, Ա. Հարությունյանը և ուրիշներ։

Շ. ՍԱՐԳՍՅԱՆ (Լենինականի միկրոէլեկտրաշարժիչների գործարանից) Ուսումնական տարվա վերջում անցկացված ամփոփիչ պարապմունքները ցույց տվին, որ իմ ղեկավարած՝ արդյունաբերության կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակի անդամները լավ են յուրացրել ծրագրով նախատեսված թեմաները՝ պարտիայի XXII համագումարի փաստաթղթերը։ Առաջադրված հարցերին նրանք տալիս էին վստահ ու համոզիչ պատասխաններ, անում տրամաբանորեն կուռ հետևություններ ու խելացի համեմատություններ, իրենց միտքը լրացնում մեր առօրյա կյանքից, հարազատ գործարանից քաղված օրինակներով։

Զգում էի, թե ինչպես է ընդլայնվել իմ ունկնդիրների մտահորիզոնը, մեծացել նրանց հետաքրքրությունը քաղաքական կրթության նկատմամբ։ Չէ որ մի քանի ամիս առաջ նրանցից ոմանք չէին կարողանում աշխատել գրքի վրա, ամփոփ ու պարզ արտահայտել իրենց մտքերը, պարապմունքների ժամանակ հաճախ լռում էին։ Քաղաքական ուսուցումն օգնեց նրանց ո՛չ միայն ընկալելու մեր առաջընթացի հիմնական խնդիրները, այլև ճշտորեն հասկանալու իրենց տեղն ու դերը այդ խնդիրների կատարման գործում։

Ես աշխատում էի, ուսումնական ծրագրի շրջանակներում, պարապմունքների ընթացքում առանձնապես մեծ տեղ հատկացնել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, արդյունաբերության հեռանկարային զարգացման պրոբլեմատիկ հարցերին։ Զրույցների, հարց ու պատասխանների միջոցով պարզաբանել ենք աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղիների և, հատկապես, արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորման, ձեռնարկությունների մասնագիտացման ու կոոպերացման, բանվորների կրթական-տեխնիկական մակարդակի բարձրացման և այլ հարցեր։

Տնտեսագիտական կարևոր ու բարդ հարցեր մատչելի ու դյուրըմբռնելի, տպավորիչ դարձնելու նպատակով ես միշտ ձգտել եմ դրանք պարզաբանել մեր գործարանի արտադրական գործունեությանը վերաբերող կոնկրետ փաստերի միջոցով, համատեղ վերլուծել ու քննարկել այդ ցուցանիշները։ Մեր ձեռնարկության առաջավոր մարդկանց օրինակով ցույց եմ տվել, թե ինչպես կարելի է հասնել բարձր արտադրողականության, կատարելագործել տեխնիկան ու տեխնոլոգիական պրոցեսները։ Ուրախալի էին մտքերի սուր բախումները քննարկվող այս կամ այն թեմայի շուրջ, ունկնդիրների արած արժեքավոր առաջարկությունները աշխատանքի ու արտադրության կազմակերպման վերաբերյալ։

## ՊԼԵՆՈՒՄԻՑ ՀԵՏՈ

Հոկտեմբեր գյուղի Վ. Ի. Լենինի անվան կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպության ժողովին մասնակցում էին մեծ թվով անպարտիական կոլտնտեսականներ ու մասնագետներ։ Քննարկվում էին ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի արդյունքները։ Ելույթ ունեցողները, բացահայտելով մեր աշխատանքի թերությունները, գործին օգնող բազմաթիվ առաջարկություններ արեցին հանրային արտադրությունն ավելի խելացի ձևով կազմակերպելու ու վարելու նպատակով։ Այդ գործարար քննարկումը ցույց տվեց, թե որքան տեղին ու ժամանակին էին պարտիայի միջոցառումները գյուղատնտեսության կառավարումը վերակառուցելու վերաբերյալ։

Անհրաժեշտ էր հաղթահարել մեր առաջխաղացմանն արգելակող խոչընդոտները, հրաժարվել աշխատանքի հնացած ձևերից ու մեթոդներից։ Հենց դրանից էլ սկսեցինք մեր գործունեությունը։ Պարտիական ակտիվի և, մասնավորապես, գյուղական ինտելիգենցիայի ուժերով կազմակերպեցինք պլենումի որոշումների խոր պարզաբանում, աշխատավորներին բացատրելով, թե ինչ պետք է անել դրանց կենսագործման համար։ Դա լուրջ, գործնական խոսակցություն էր բոլորին հուզող հարցի շուրջ։

Հիմք ընդունելով պարտիական ժողովի որոշումը և հաշվի առնելով ագիտացիոն զրույցների ընթացքում կոլտնտեսականների արտահայտած կարծիքներն ու մեր տնտեսության ներքին հնարավորությունները, պարտբյուրոն և կոլտնտեսության վարչությունը գործնական քայլերի դիմեցին։

Սկսվել էին գարնան գյուղատնտեսական աշխատանքները։ Առաջին հերթին որոշ փոփոխություններ մտցրինք ցանքատարածությունների ընթացիկ տարվա կառուցվածքում, վերանայեցինք արտադրական պլանները։ Մեր կոլտնտեսությունն ունի մեծ թվով խոշոր եղջերավոր անասուններ, ոչխարներ, խոզեր, թռչուններ. մեր անասնաբուծական ֆերմաները շրջանում ամենախոշորն են։ Բայց կերի հարցը մեզ մոտ միշտ էլ եղել է ամենանեղ տեղը։ Արոտավայրեր գրեթե չունենք. տարվա մեջ 8—10 ամիս անասուններին կերակրում ենք գոմում, հիմնականում գնովի կերի հաշվին։ Երկու հարյուր հեկտար զբաղեցնող բազմամյա խոտաբույսերի միջոցով հնարավոր չէր լուծել կերի հարցը։ Չնայած մեր մարդիկ գործնականում համոզվել էին եգիպտացորենի առավելության մեջ, սակայն այդ արժեքավոր կուլտուրան իր արժանի տեղը չէր զբաղեցնում ցանքատարածություններում։ Անցյալ տարի ցանվեց ընդամենը 80 հեկտար եգիպտացորեն, ընդ որում քսան հեկտարը՝ խոզանացան, սակայն երաշտի պատճառով ստացվեց ցածր բերք. դրանից պատրաստված երեք հարյուր տոննա սիլոսը տրվում էր միայն կովերին, այն էլ շատ քիչ քանակությամբ։

Պլենումից հետո հարկ եղավ շտկել մեր սխալը և զգալիորեն ընդարձակել եգիպտացորենի ցանքը։ Մեր պայմաններում հնարավոր չէր միանգամից հրաժարվել բազմամյա խոտաբույսերից. վերջիններիս կրճատման հաշվին ցանեցինք 120 հեկտար եգիպտացորեն և, բացի դրանից, կատարելու ենք հիսուն հեկտար խոզանացան։ Միջոցներ ենք ձեռնարկել՝ մեծ չափով ավելացնելու բերքատվությունը. ինչպես բամբակենու, այնպես էլ եգիպտացորենի ցանքը այս տարի կատարվել է միայն քառակուսի— բնային եղանակով, լավ է կազմակերպված նրա մշակումը։ Ըստ հաշվարկումների 1962 թվականին կստանանք 2250 տոննա սիլոսի զանգված և 211 տոննա եգիպտացորենի հատիկ։ Միաժամանակ ընդլայնվել է կերի արմատապտուղների ցանքատարածությունը։

Չնայած անցյալ տարվա դժվարին պայմաններին, այնուամենայնիվ չթվեցինք անասունների կորուստ, կատարեցինք հոտի գլխաքանակի ավելացման ուղղությամբ մեր ստանձնած սոցիալիստական պարտավորությունը։ Այն կոմունիստներից պահանջեց համառ ջանքեր, մեծ եռանդ։

Մտադիր ենք մեքենայացնել անասնաբուծության աշխատատար պրոցեսները. արդեն տեղադրվել ու նորմալ գործում են 70 կովի համար կթի ագրեգատ, ավտոխմոցներ և այլն։ Այս ամենը հնարավորություն կտան կոլտնտեսականներին՝ պատվով կատարելու ստանձնած պարտավորությունը՝ յուրաքանչյուր ֆուրաժային կովից ընթացիկ տարում ստանալու 2210 լիտր կաթ, մեկ ոչխարից՝ 3 կգ բուրդ, ածան հավից՝ 102 ձու, 1961 թ. համեմատությամբ մոտ 1,5 անգամ ավելացնելու մսի արտադրությունը։ Բավական է ասել, որ վերջին մեկ ամսում չորս հարյուր լիտրով ավելացել է կաթի օրական համախառն արտադրանքը։

Մեր կոլտնտեսության բոլոր անդամները, ջերմորեն արձագանքելով սովետական գյուղի բոլոր աշխատավորներին ուղղված ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Դիմումին, պայքարում են ընթացիկ տարում պատվով կատարել անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։

Մարտյան պլենումից հետո պարտբյուրոն վերադասավորեց կոմունիստների և կոմերիտականների ուժերը։ Ներկայումս պարտկազմակերպության 67 անդամներից 55-ը անմիջականորեն աշխատում են արտադրության մեջ. բոլոր բրիգադաներում և ֆերմաներում ստեղծել են պարտիական և կոմերիտական խմբեր, որոնք ակտիվ կերպով ներազդում են իրենց տեղամասերի գործերի վրա։ Անհրաժեշտ եղավ կոլտնտեսությունում ղեկավար աշխատանքի առաջ քաշել երիտասարդ, մասնագիտական կրթություն ունեցող մի քանի եռանդուն ընկերների. այսպես, օրինակ, ստեղծվեց պտղատու այգիների բրիգադա, որի ղեկավար առաջադրվեց ագրոտեխնիկ Լ. Հարությունյանը, իսկ այգեգործական բրիգադայի բրիգադավար՝ ագրոտեխնիկ Վ. Վարդանյանը. այդ աշխատամասերում արդեն նկատելիորեն լավացել են գործերը։ Այժմ կոլտնտեսության զոոտեխնիկ է աշխատում կոմերիտական Ս. Մարգարյանը, որը բարեխղճորեն է կատարում իր պարտականությունները։ Դաշտավարական-տրակտորային

կոմպլեքսային բրիգադաները խոշորացվեցին՝ եղած չորսի փոխարեն ստեղծվեցին երեքը։

Պարտիական կազմակերպությունն սկսել է ավելի լրջորեն զբաղվել աշխատավորների նյութական շահագրգռվածության խթանման, լրացուցիչ վարձատրության սիստեմի կարգավորման հարցերով։ Մեր փորձով համոզվել ենք, որ դա աշխատանքի արտադրողականության բարձրացման վճռական գործոններից է։ Այդ կարելի է ցույց տալ մեր կոլտնտեսության այգեգործական 6-րդ և 8-րդ բրիգադաների օրինակով, որոնց հողային և աշխատանքային պայմանները համանման են։ Առաջինում խստորեն պահպանվում է անհատական գործավարձը, հաջող են կազմակերպված աշխատանքը և հաշվառումը. ինչպես պետք էր սպասել, այստեղ գործերը լավ են, մարդիկ աշխատում են ժրաջան կերպով, ոգևորված տրամադրությամբ և ամեն տարի ստանում են լրացուցիչ վարձատրություն։ Երկրորդում պարբերաբար խախտվում է անհատական գործավարձը, լավ չի դրված կատարված աշխատանքի հաշվառումը. ստացված արդյունքը քիչ է, իսկ մարդիկ՝ դժգոհ։ Անշուշտ հնարավոր չէր անտարբերությամբ անցնել նման բացասական երևույթների կողքով։

Անցյալում խախտումներ են եղել լրացուցիչ վարձատրության սիստեմի կիրառման գործում։ 1959—1960 թթ. կոլտնտեսության վարչության մեղքով այգեգործները զրկվեցին իրենց հասանելիք հավելյալ վարձատրությունից, որը բացասաբար անդրադարձավ տնտեսության գործերի վրա։ Ներկայումս մշակված են նյութական խրախուսանքի ավելի արդյունավետ միջոցներ։ Այսպես. մեխանիզատոր-բամբակացանը ցանքի լավ քառակուսիներ ստանալիս, բույսերի մասսայական ծիլերը երևալուց հետո, 100 ռուբլի դրամական պարգև է ստանում։ Պետությանը պլանից ավելի հանձնած յուրաքանչյուր ցենտներ բամբակի հումքի համար բրիգադայի կամ օղակի անդամներին տրվելու է լրացուցիչ վարձատրություն նրա արժեքի հիսուն տոկոսի չափով, միաժամանակ հումքի պլանային ինքնարժեքի իջեցման դեպքում՝ տնտեսած գումարի 20 տոկոսի չափով։ Այգեգործները պլանից ավելի արտադրած յուրաքանչյուր ցենտներ խաղողի և պտղի համար՝ որպես լրացուցիչ վարձատրություն ստանալու են բերքի արժեքի 10 տոկոսը, իսկ դրանց ինքնարժեքի իջեցումից՝ 20 տոկոսի չափով և այլն։

Մեծ ուշադրություն ենք նվիրում գյուղատնտեսական տեխնիկայի ռացիոնալ օգտագործմանն ու պահպանմանը։ Կոլտնտեսության պարկում հաշվվում է 28 տրակտոր, 65 կցվող ու կախովի գործիքներ և այլն։ Ունենք մեխանիզատորական հմուտ կադրեր։ Մի քանի տարի է, ինչ մեզ մոտ ստեղծվել են տրակտորա-դաշտավարական կոմպլեքսային բրիգադաներ։ Փորձը ցույց է տալիս, որ աշխատանքի կազմակերպման այս ձևը մեծ արդյունք է տալիս։ Պլենումից հետո կազմակերպվեց կոմպլեքսային մեխանիզատորական ցուցադրական առանձին բրիգադա, որը մշակում է 65 հեկտար բամբակ և 20 հեկտար եգիպտացորեն։ Այստեղ գյուղատնտեսական աշխատատար բոլոր պրոցեսները գրեթե մեքենայացված են։ Սակայն դեռևս շատ ցածր է այգեգործության մեքենայացման մակարդակը. բացի միջշարային վարից մնացած աշխատանքները կատարվում են ձեռքով։ Արդյունաբերությունը չի տալիս անհրաժեշտ մեքենաներ։ Մեր նորարար մեխանիզատորները ջանում են իրենց ուժերով հեշտացնել այգեգործների ծանր աշխատանքը. օրինակ, կոմունիստ Պ. Դավթյանը այգիների միջշարային սնուցման համար ստեղծել է ունիվերսալ թափիչ և



թումբ պատրաստող խոփ, որը գործադրվում է արտադրության մեջ։ Որպես նոր և առաջավոր ձև՝ պայմանագրային կարգով «Գյուղտնտեխնիկայի» շրջանային բաժանմունքը պարտավորվել է նորոգել մեր մեքենաները և գյուղատնտեսական աշխատանքների ընթացքում ապահովել դրանց սարքին վիճակը։

Պարտիայի Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումներն իրենց կոնկրետ մարմնացումն են գտնում մեր կոլտնտեսության անդամների ամենօրյա համառ, սխրալից գործերում։ Նրանք պայքարում են 1962 թվականը դարձնել բարձր բերքատվության տարի, յուրաքանչյուր հեկտարից հավաքել 24,5 ցենտներ հացահատիկ, 27,5 ցենտներ բամբակի հումք, 320 ցենտներ բանջարեղեն, 100 ցենտներ խաղող և 65 ցենտներ պտուղ։ Դա յոթնամյակի չորրորդ տարվա մեր բնագիծն է. մեր պարտիական կազմակերպության քաղաքական ու կազմակերպական ողջ գործունեության նպատակը այդ բնագծի նվաճումն է։

Ս. ՍՄԲԱՏՅԱՆ
Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր կոլտնտեսության
պարտբյուրոյի քարտուղար

## ԿԵՆՍԱԳՈՐԾԵԼ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

Պարտիայի ու կառավարության ընդունած որոշումների կատարման վերահսկողությունն ու փաստական ստուգումը կազմակերպական աշխատանքի կարևորագույն մասն է, պարտիական ղեկավարության փորձված մեթոդը։ Դեռևս 1922 թվականին Վ. Ի. Լենինը գրել է. «Ստուգել մարդկանց և ստուգել գործի փաստական կատարումը— ա՛յս է, դարձյալ ա՛յս է, միայն ա՛յս է այժմ ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը» (Երկեր, հատ. 33 էջ 265)։

Լենինյան այդ խոսքերն առանձնապես ակտուալ են հնչում մեր օրերում, երբ պարտիան ու ժողովուրդը ձեռնամուխ են եղել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը, երբ անչափ մեծացել են տնտեսական շինարարության մասշտաբները։ Հայտնի է, որ ամենալավ որոշումները, հիմնավորված արտադրական պլանները և սոցիալիստական պարտավորությունները կարող են մնալ թղթի վրա, եթե դրանք չեն ամրապնդվում կազմակերպական աշխատանքով։ Այդ գործում մեծ է վերահսկողության և կատարման ստուգման դերը։

Պարտիական ու սովետական վերադաս օրգանների, ինչպես և սեփական որոշումների փաստական կատարման ստուգմանն առանձնակի ուշադրություն են հատկացնում ՀԿՊ Անիի շրջկոմը և շրջանի մի շարք սկզբնական պարտիական կազմակերպություններ։ Ինչ խոսք, որ այն բարձրացնում է ղեկավար աշխատողների, կոմունիստների պատասխանատվությունն ու ձեռներեցությունը, դաստիարակում կադրերին սկզբունքայնության, թերությունների նկատմամբ անհանդուրժողականության ոգով, ամրապնդում պարտիական ու պետական կարգապահությունը։

Մեր միտքը հաստատելու համար բերենք երկու օրինակ։

Լավ չէր գործերի վիճակը Ջիթհանքովի կոլտնտեսությունում, առաջխաղացում չէր նկատվում տնտեսության և ոչ մի ճյուղում, խախտվում էր արտելի Կանոնադրությունը։ Դա անհանգստացրեց շրջկոմին, որը տեղում կատա-

րած ուսումնասիրությունից հետո հարցը քննության առավ բյուրոյում և ընդունեց որոշում։ Չանցած երկու ամիս, ստուգման կարգով շրջկոմն անդրադարձավ իր իսկ որոշմանը. պարզվեց, որ Ջիթհանքովի կոլտնտեսության վարչությունը և պարտիական կազմակերպությունը ոչ մի գործնական քայլ չեն արել շրջկոմի բյուրոյի որոշումը կատարելու ուղղությամբ։

Ի՞նչն էր պատճառը։ Այն, որ շրջկոմը ժամանակին խոր ու բազմակողմանիորեն չէր ուսումնասիրել կոլտնտեսության իրական վիճակը, հիմնավոր կերպով չէր բացահայտել տնտեսության ետ մնալու պատճառները և, հետևապես նրա մշակած միջոցառումները քիչ էին օգտակար։ Շտկելով իր իսկ սխալը, շրջկոմը պարտիական ակտիվի օգնությամբ հարկադրված եղավ վերստին, բայց այս անգամ համակողմանիորեն ստուգել Ջիթհանքովի կոլտնտեսության ու սկզբնական պարտկազմակերպության գործունեությունը։ Ուսումնասիրության արդյունքները ուշի-ուշով քննության առնվեցին շրջկոմի բյուրոյում։ Հայտնի դարձավ, որ տնտեսությունն ամրապնդված չէ բանիմաց ու ձեռներեց կադրերով, կոլտնտեսության նախագահ Ն. Միքայելյանը վատ կազմակերպիչ է, չունի նորի զգացում. թույլ է պարտիական-քաղաքական կազմակերպչական աշխատանքը։

Ջիթհանքովի կոլտնտեսության աշխատանքները բարելավելու նպատակով պարտշրջկոմի բյուրոն մշակեց գործնական միջոցառումներ։ Սակայն լավ որոշում ընդունելը միայն գործի սկիզբն էր։ Դրան հետևեց կազմակերպական լուրջ աշխատանքը։ Կոլտնտեսության նախագահ առաջադրվեց ձեռներեց, կազմակերպական աշխատանքի ձիրք ունեցող մասնագետ, բրիգադիրների ու ֆերմաների վարիչների կազմը համալրվեց լավագույն կադրերով. մի շարք ակտիվ կոմունիստներ ու կոմերիտականներ մշտական աշխատանքի ուղարկվեցին անասնաբուծական ֆերմաները։ Կատարվեց կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխում, որը հնարավորություն տվեց կոլտնտեսության բրիգադներում ու ֆերմաներում ստեղծելու պարտիական խմբեր։ Աշխատավորների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու և նրանց խրախուսելու նպատակով իրականացվեցին մի շարք միջոցառումներ։

Խիստ վերահսկողություն սահմանվեց շրջկոմի բյուրոյի որոշման կատարման նկատմամբ, գործի դրվեցին արտադրության ներքին ռեզերվները։ Այդ ամենի շնորհիվ Ջիթհանքովի կոլտնտեսությունն ամրապնդվեց կազմակերպչորեն ու տնտեսապես, այն դարձավ շրջանի ամենաառաջավոր ու օրինակելի տնտեսություններից մեկը։ Բավական է ասել, որ կոլտնտեսության դրամական եկամուտները 1961 թվականին աճեցին 51. 662 ռուբլով, մեծ չափով ավելացավ կաթի, մսի, բրդի և ձվի արտադրությունը։ Անցյալ տարի կոլտնտեսությունը գերակատարեց անասնաբուծական մթերքների արտադրության և վաճառքի իր ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, որի համար երկու անգամ նվաճեց շրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ դրոշը։

Կամ մի այլ օրինակ։ Մարալիկի պարտիական կազմակերպությանը տարիներ շարունակ անհանգստացնում էր գյուղատնտեսական մեքենաների պահպանության անմխիթար վիճակը. դաշտային աշխատանքներն ավարտելուց հետո մեքենաները կանգնեցվում էին ցաք ու ցրիվ վիճակում, բաց երկնքի տակ՝ կեղտի ու ցեխի մեջ։ Այդ հարցը քննության առնվեց պարտիական կազմակերպության ընդհանուր ժողովում և ընդունվեց գործնական որոշում։



Պարտկազմակերպության գործադրած ջանքերի շնորհիվ կառուցվեցին տիպային գարաժներ, ուր ներկայումս տեղավորված է կոլտնտեսության մեքենայական պարկը։

Անհրաժեշտ է մշտական խիստ ու գործուն վերահսկողություն սահմանել որոշումների կատարման վրա։ Այնտեղ, ուր որոշումների կատարումը թողնըվում է բախտի քմահաճույքին, չի կազմակերպվում նրանց սիստեմատիկ ու հստակ ստուգում, պարարտ հող է ստեղծվում թերությունների ու սխալների համար, աշխատողների մոտ հանդես են գալիս ինքնագոհություն, պարադայնություն և որոշումների կատարման նկատմամբ անպատասխանատվություն։ Շրջանի պարտիական կազմակերպությունները և շրջկոմը, որպես կանոն, որոշումներ են ընդունում հարցերը բազմակողմանի ուսումնասիրելուց ու այն գործարար քննարկելուց հետո։ Այդ հնարավորություն է տալիս ոչ միայն ընդունել գործնական բնույթ կրող որոշումներ, այլև հեշտացնում է դրանց կատարման ստուգումը, քանի որ որոշումների մեջ կոնկրետ նշվում են, թե ով և ինչ պետք է անի, ինչպես և երբ։

Բայց պատահում է և այնպես, որ պարտկազմակերպություններն ընդունում են ընդհանուր, գործին չօգնող որոշումներ։ Օրինակ, Շիրակավանի կոլտնտեսության պարտիական կազմակերպության 1961 թ. նոյեմբերին կայացած ժողովում քննության առնվեց կոմերիտական աշխատանքի բարելավման հարցը և ընդունվեց վերացական որոշում.— «Պահանջել կոմերիտական կազմակերպության կոմիտեից,— գրված է որոշման մեջ,— կարճ ժամկետում բարելավել կազմակերպության աշխատանքը, փոխել անտարբեր վերաբերմունքը կոմերիտական աշխատանքների նկատմամբ»։ Նման ձևով էին շարադրված նաև որոշման մյուս կետերը։

Մեզ մոտ որոշումների կատարման ստուգման գործը հանձնարարվում է շրջկոմի անդամներին, պարտիական և սովետական ակտիվին, դրանով հնարավորություն է տրվում տեղերում հանգամանորեն ծանոթանալու գործերի վիճակին, ավելի շատ մարդկանց ներգրավելու որոշման կատարման գործում, օգնելու մեր կադրերին՝ աճելու և գաղափարապես կոփվելու։

Սակայն միշտ չէ, որ անթերի են կատարվում ընդունած որոշումները։ Վերջին երկու տարում տարբեր առիթներով Քարաբերդի պարտիական կազմակերպության, գյուղական Սովետի և կոլտնտեսության վարչության գործունեության մասին շրջկոմի բյուրոն ընդունել է ութ որոշում։ Չի կարելի ասել, որ դրանք վատ են, կոնկրետ ու նպատակասլաց չեն։ Բայց, ցավոք սրտի, այդ որոշումները շատ քիչ բանով են օգնել ընդհանուր դրությունը բարելավելուն։ Շրջկոմը բավարարվել է միայն իրար կրկնող մի քանի որոշումներ ընդունելով, որոնք չեն ամրապնդվել կազմակերպական աշխատանքով։ Կամ վերջին երկու տարում մի քանի անգամ շրջկոմում և սկզբնական պարտիական կազմակերպություններում քննության են առնվել հանցագործությունների դեմ մղվող պայքարը ուժեղացնելու և հասարակական կարգ ու կանոնը բարելավելու վերաբերյալ հարցեր, բայց, ինչպես ասում են, այդ բնագավառում դեռ «սայլը տեղից չի շարժվել»։ Այս և այլ օրինակներ ցույց են տալիս, որ շրջկոմը և սկզբնական պարտիական կազմակերպությունները միշտ չէ, որ հետամուտ են եղել իրենց ընդունած որոշումների կատարմանը, զբաղվել դրանց վերահսկողությամբ ու ստուգմամբ։ Անհրաժեշտ է, որ պարտիական ժողովներում պար-

բերաբար ինֆորմացիա տրվի նախորդ ժողովներում ընդունած որոշումների կատարման ընթացքի մասին։

Որպես լուրջ թերություն պետք է նշել այն, որ շրջանի արտադրական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների մեծ մասում չեն ստեղծված ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտիական վերահսկողություն իրականացնող հանձնաժողովներ, եղածներն էլ փաստորեն անգործության են մատնվել։

Ուշի-ուշով պետք է հետևել, որ ժամանակին ընթացք տրվի շրջանային պարտիական ակտիվի, պարտիական կազմակերպությունների և աշխատավորների ընդհանուր ժողովներում կոմունիստների և անպարտիականների կողմից արված քննադատական դիտողություններին ու արժեքավոր առաջարկություններին։ Անիպեմզայի կոմբինատի պարտիական կազմակերպության հաշվետու ընտրական ժողովում քննադատական դառը, բայց ճշմարտացի խոսքեր ասվեցին դիրեկցիայի և պարտբյուրոյի հասցեին։ Սակայն վերջիններս լուրջ հետևություններ չարեցին դրանից և կոլեկտիվում առաջ բերին դժգոհություն։ Շրջկոմի բյուրոն քննության առավ կոմունիստների կողմից արված քննադատական դիտողությունների կենսագործման ընթացքը Անիպեմզայի կոմբինատում։ Միայն դրանից հետո բարելավվեց բանվոր-ծառայողների մատակարարման գործը, իրականացվեցին միջոցառումներ աշխատանքի կազմակերպումը բարելավելու, կարգապահությունն ամրապնդելու և սոցիալիստական մրցությունը ծավալելու ուղղությամբ։ Դա կոմբինատի կոլեկտիվին հնարավորություն տվեց փակելու անցյալ ամիսների ճեղքվածքը և 1961 թ. համախառն արտադրանքի պլանը կատարելու 100,4 տոկոսով, տալով երկրին 50.000 ռուբլու արտապլանային արտադրանք։

Յոթնամյակի չորրորդ տարում մեր շրջանի առջև դրված են լուրջ և պատասխանատու խնդիրներ, որոնց անթերի կատարման նպատակով պարտիական կազմակերպությունները պետք է ամեն կերպ բարելավեն որոշումների կատարման ստուգումը, քաղաքական կազմակերպական աշխատանքի միջոցով բոլորին մոբիլիզացնեն՝ երկրին ավելի շատ արտադրանք տալու և առաջավոր շրջաններին հասնելու համար։

Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ
ՀԿՊ Անիի շրջկոմի կազմակերպական բաժնի վարիչ

---

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՊԱՏՇԱՃ ՏԵՂ ՏԱԼ ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԻՆ

Գյուղատնտեսության արտադրության հիմքը հացահատիկային տնտեսությունն է։ Հացահատիկային կուլտուրաներից և կերաբույսերից եկամտաբերությամբ ամենաբարձրը եգիպտացորենն է։

Գյուղատնտեսական գիտությունը մեծ ուշադրություն է հատկացնում եգիպտացորենի տարածման ու մշակման հարցերին։ ՍՍՌՄ-ում սելեկցիայի և սերմնաբուծության հարցերով զբաղվող բազմաթիվ գիտական հաստատություններ աշխատում են ստեղծել եգիպտացորենի չորադիմացկուն, ցրտադիմացկուն, երկրի տարբեր պայմաններում բարձր ու կայուն բերքատու սորտեր։

Արդյունաբերությունը նորանոր կատարելագործված մեքենաներ է տալիս եգիպտացորենի ցանքերի մշակման, բերքահավաքի, հատիկների տեսակավորման և բուժման համար։ Եգիպտացորենի հիբրիդային նոր սորտեր ստեղծելու ասպարեզում ՍՍՌՄ-ը աչքի ընկնող նվաճումների է հասել։

Եգիպտացորենի ցանքատարածությունների ընդարձակումը գյուղատնտեսական արտադրությունից դուրս է մղում ավելի ցածրարժեք կուլտուրաներին (վարսակ, վիկա, միամյա և բազմամյա խոտաբույսեր), որոնք աշխատանքի մեկ միավորի դիմաց ավելի քիչ սննդարժեք են տալիս։

Մեր ռեսպուբլիկայի բոլոր կատեգորիայի տնտեսություններում ցանքատարածությունների ստրուկտուրայում եգիպտացորենի տեսակարար կշիռը եղել է՝ 1957 թվականին 2,3, 1958 թվականին՝ 6,3, իսկ 1960 թվականին՝ մոտ 9 տոկոս, հասնելով 30,1 հազար հեկտարի։ Սակայն ցանքատարածության ընդարձակումը հարցի մի կողմն է։ Գլխավորն այն է, թե ինչպիսի բերք է ստացվում, որքա՞ն աշխատանք է ծախսվում մեկ միավորի վրա։

Այս տարվա մարտին, Մոսկվայում կայացած ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումը պարտիական և կոմերիտական կազմակերպությունների, կոլտնտեսությունների և սովխոզների առաջ խնդիր դրեց ցորենի և մյուս հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստանալ 20—25 ցենտներ միջին բերք, եգիպտացորենից հատիկ՝ 50, սիլոսի կանաչ մասսա՝ 300—500, շաքարի ճակնդեղ՝ 200—250 ցենտներ։

Ռեսպուբլիկայում կան բազմաթիվ կոլտնտեսություններ, որոնք կազմակերպված աշխատանքի շնորհիվ ստանում են բարձր բերք։ Այսպես, Արարատյան հարթավայրի կոլտնտեսությունների մեծ մասը վերջին երեք տարում յուրաքանչյուր հեկտարից ստացել է 22—30 ցենտներ ցորենի միջին բերք։ Հոկտեմբերյանի շրջանում ցորենի միջին բերքը՝ 1957 թվականին եղել է 22,5, 1958 թվականին՝ 25,8, 1959 թվականին՝ 27,6, 1960 թվականին՝ 25,4 ցենտներ։

Ռեսպուբլիկայում շաքարի ճակնդեղ մշակում են Ախուրյանի և Սպիտակի շրջանները։ Վերջին 3 տարում հիշյալ շրջաններում ճակնդեղի միջին բերքը հեկտարից կազմել է 260 ցենտներ. առաջավոր կոլտնտեսությունները ստացել են 400—500 ցենտներ։ Սակայն ցորենի և եգիպտացորենի միջին բերքը մեր ռեսպուբլիկայում շատ ցածր է պարտիայի առաջադրանքից. վերջին չորս տարում հեկտարից միջին հաշվով ստացվել է 9,5—11 ցենտներ ցորեն, իսկ եգիպտացորենի հատիկի բերքը 1958 թվականին եղել է 26,0, 1959 թվականին՝ 20,4, 1960 թվականին՝ 21,1, կանաչ մասսայինը՝ 115 ցենտներ։ Եգիպտացորենի կանաչ մասսայի և հատիկի խիստ ցածր բերք են ստացել, հատկապես, չոր, նախալեռնային գոտում՝ Աբովյանի, Աշտարակի, Եղեգնաձորի շրջաններում։

Ռեսպուբլիկայում եգիպտացորենի ցածր բերքատվության պատճառը, նախ, ցանքատարածությունների սխալ տեղադրումն է ինչպես ըստ շրջանների, նույնպես և շրջանի ներսում ըստ կոլտնտեսությունների, կոլտնտեսություններում էլ ըստ հողամասերի ու սառնաների։ Եգիպտացորենը հարաբերականորեն ավելի պահանջկոտ է՝ հողի, ջրի և օդի նկատմամբ։ Եգիպտացորենի հողերը պետք է լավ մշակվեն, կենսագործելով ագրոտեխնիկական լրիվ կոմպլեքս։ Սակայն մինչև այժմ պատշաճ ուշադրություն չի հատկացվել այն խնդրին, թե հողային և կլիմայական ինչպիսի պայմաններում պետք է մշակվի եգիպտացորենը։ Կառչելով երկրագործության խոտադաշտային հետամնաց սիստեմին, ցածր եկամտաբեր կուլտուրաների հսկայական ցանքատարածություններ են պահպանվել այն շրջաններում, որտեղ եգիպտացորենը անգերազանցելի բերք է տալիս։

Արարատյան հարթավայրի շրջաններում վերջին վեց տարվա ընթացքում բամբակենու ցանքատարածությունը կրճատվել է 5400 հեկտարով։ Այդ տարածությունից 3100 հեկտարը հատկացվել է եգիպտացորենին, 2000 հեկտարը՝ առվույտին, այն հասցնելով մոտ 7000-ի։ Մինչդեռ ավելի օգտակար կլիներ բամբակից ազատված տարածության մեծ մասը հատկացնել եգիպտացորենի մշակությանը։ Բերքատվության այժմյան պայմաններում եգիպտացորենը առվույտի համեմատությամբ ավելի բարձր բերք և ավելի շատ կերամիավոր է տալիս։ Հարթավայրի հինգ շրջաններում մշակվում է 16,500 հեկտար աշնանացան և գարնանացան հացահատիկ։ Այդ տարածության վրա բերքահավաքից հետո կարելի է ցանել եգիպտացորեն՝ կանաչ մասսա ստանալու համար, իսկ գարուն հաջորդող եգիպտացորենի ցանքից ստացվում է հատիկի նորմալ բերք։

Այժմ այդ շրջանների կոլտնտեսություններն ունեն մեքենայական այնպիսի հզոր պարկ, որ մի քանի օրում կարող են կատարել այդ աշխատանքը, հացահատիկի բերքահավաքին զուգընթաց։ Եգիպտացորենի խողանացանի համար անհրաժեշտ են հանքային պարարտանյութեր, որպիսիք կոլտնտեսությունները պետք է ժամանակին ձեռք բերեն և ռացիոնալ օգտագործեն։

Եգիպտացորենի առավելություններն ի հայտ են գալիս հատկապես մըշտական ոռոգելի ջրով ապահովված հողերում, բացառությամբ անտառատափաստանային գոտու առանձին խոնավ հողերի։ Ուստի եգիպտացորենի ցանքերի ընդարձակումը ռեսպուբլիկայի շրջաններում պետք է կատարվի ջրովի հողերում մշակվող համեմատաբար սակավ բերքատու կուլտուրաների հաշվին։

Եգիպտացորենի ցանքերի ճիշտ տեղադրումը նրա եկամտաբերության բարձրացման կարևոր նախապայմանն է։ Ցածրարժեք կուլտուրաները եգիպտացորենով փոխարինելը գյուղատնտեսության եկամտաբերության բարձրաց-



ման և այդ ուղղությամբ ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումների կենսագործման կարևորագույն միջոցառումներից մեկն է։

Մոտակա մեկ-երկու տարում ռեսպուբլիկայում եգիպտացորենի ցանքի յուրաքանչյուր հեկտարից միջինը 50 ցենտներ հատիկ կամ 300—500 ցենտներ սիլոսի մասսա ստանալու համար անհրաժեշտ է համառ ու անխոնջ աշխատանք։ Ռեսպուբլիկայի միայն Արարատյան դաշտավայրում կարելի է ցանել 8—9 հազար հեկտար եգիպտացորեն։ 1960 թվականին այստեղ հեկտարից միջին հաշվով ստացվել է 33,6 ցենտներ բերք, ուստի հատիկի համախառն արտադրանքը վերը նշված չափով ցանքի դեպքում, միայն Արարատյան դաշտի շրջաններում կլինի 26—30 հազար տոննա։

Տնտեսական զարգացման համար կարևոր նշանակություն ունի հնարավորությունների ճիշտ հաշվառումը, աշխատողների ճիշտ տեղաբաշխումը։ Արարատյան հարթավայրի շրջանների կոլտնտեսությունները 1960 թվականին ցանել են 3100 հեկտար եգիպտացորեն և մեկ հեկտարից, ինչպես նշեցինք, ստացել են 33,6 ցենտներ միջին բերք (չոր հատիկ)։ Հոկտեմբերյանի և Էջմիածնի շրջաններում չոր հատիկի միջին բերքը հասել է 42 ցենտների։ Շահումյանի, Վեդու շրջանների առանձին կոլտնտեսություններ հեկտարից ստացել են միջին հաշվով 70—80 ցենտներ։ Ալավերդու, Ստեփանավանի, Շամշադինի շրջանների կոլտնտեսություններում 1960 թվականին 1909 հեկտար եգիպտացորենի ցանքի հատիկի միջին բերքը հեկտարից եղել է 20 ցենտներ։ Միայն Շամշադինի շրջանում 1114 հեկտար ցանքից ստացվել է 21,47 ցենտներ հատիկի միջին բերք, Նորաշենի կոլտնտեսությունը 1961 թ. ստացել է հեկտարից 74 ցենտներ։ Այս թվերը ցույց են տալիս, որ եգիպտացորենի մշակման բնագավառում մոտակա երկու տարում կարելի է հասնել ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի կողմից սահմանված ցուցանիշներին, իսկ շատ կոլտնտեսություններում՝ հենց այս տարի։ Այդ իսկ պատճառով ետ մնացող կոլտնտեսությունները ոչ թե պետք է պարտավորվեն հեկտարից ստանալ 20—25 ցենտներ միջին բերք, այլ ամեն ինչ պետք է անեն առաջավոր կոլտնտեսություններին հասնելու համար։

Արարատյան հարթավայրի հինգ շրջաններում մոտ 9000 հեկտար տարածություն զբաղեցնում են առվույտի և կերի մյուս կուլտուրաները։ Դրանից առնվազն 5000—6000 հեկտարը կարելի է հատկացնել եգիպտացորենին։ Այսպիսով, Արարատյան հարթավայրում եգիպտացորենը այժմյան 3100 հեկտարի փոխարեն կզբաղեցնի 8—9 հազար հեկտար հատիկի, 10—13 հեկտար՝ խողանացան կանաչ մասսայի համար։ Արարատյան հարթավայրում եգիպտացորենի ցանքատարածությունների ընդարձակումը ռեսպուբլիկայում կբարձրացնի միջին բերքատվությունը, հնարավորություն կտա այդ շրջաններում ավելի ռացիոնալ օգտագործելու մեքենաները, զգալի չափով կիջնի բերքի մեկ միավորի ինքնարժեքը։ Եգիպտացորենի ցանքատարածությունը (հատիկի համար) հնարավոր է ընդարձակել նաև Աբովյանի շրջանում։ Այդ նպատակով կարելի է օգտագործել Կոտայքի ջրանցքի տակ ջրովի դարձած հին վարելահողերը։

Հնարավորությունները լրիվ օգտագործելու դեպքում եգիպտացորենի ցանքատարածությունը (հատիկի համար) կարելի է հասցնել 12—14 հազար հեկտարի և, մեր կարծիքով կարելի է այն կենտրոնացնել 10 շրջաններում (Վեդի, Էջմիածին, Արտաշատ, Շահումյան, Հոկտեմբերյան, Նոյեմբերյան, Շամշադին, Ալավերդի, Աբովյան, Իջևան), եթե այդ ցանքատարածության մեկ

հեկտարից միջին հաշվով ստացվի 50 ցենտներ հատիկ, ապա ռեսպուբլիկայում հատիկի համախառն բերքը կկազմի 60—70 հազար տոննա։

Եգիպտացորենի բերքատվության բարձրացման գործում խոշոր նշանակություն ունի հիբրիդային սերմերի արտադրության կազմակերպումը։ Ըստ Բ. Ց. Սոլովյովի տվյալների, հիբրիդային սերմերը սովորականի համեմատությամբ բերքն ավելացնում են 6—35 տոկոսով։ Եգիպտացորենի սերմնաբուծությամբ, հիբրիդային սերմերի արտադրությամբ ռեսպուբլիկայում զբաղվում են 19 կոլտնտեսություն և երեք սովխոզ։ Տնտեսությունների հենց այդ քանակը ցույց է տալիս, որ սերմնաբուծության գործը ռեսպուբլիկայում ըստ մեզ, տարվում է ոչ արդյունավետ ձևով։ Հիբրիդային սերմերի արտադրությունը նպատակահարմար է կենտրոնացնել այնպիսի տնտեսություններում, որոնք բարձր բերք են տալիս, ունեն մեքենահարմար, ոռոգելի ջրով ապահովված լավագույն հողեր, կարող են ցանել 60—150 հեկտար եգիպտացորեն։ Սերմնաբուծական կոլտնտեսությունը կամ սովխոզը պետք է ունենա քառակուսի բնային ցանքի, միջշարային մշակման, բերքահավաքի, հատիկների տրամաչափման ժամանակակից մեքենաներ, չորանոցներ և պահեստներ։

Մինչև 40 հազար հեկտար ցանքատարածության համար անհրաժեշտ կլինի ամենաշատը 12 հազար ցենտներ սերմ։ Հեկտարից 50 ցենտներ բերքի պայմաններում սերմի այդ պահանջը բարեկավելու համար անհրաժեշտ կլինի ամենաշատը 300 հեկտար սերմնադաշտ։ Այդպիսի փոքր ցանքատարածությունները կարելի է տեղադրել երեքից-չորս և ոչ թե քսաներկու տնտեսությունում, ինչպես այժմ։

Սերմնաբուծական տնտեսությունը պետք է լինի օրինակելի, տա բարձր բերք՝ ցածր ինքնարժեքով։ Իսկ այդ հնարավոր է եգիպտացորենի արտադրության լրիվ մեքենայացման պայմաններում, որը մատչելի է խոշոր տնտեսություններին։ Ե. Ա. Դոլինյուկի ղեկավարած օղակը 1960 թվականին մշակել է 125 հեկտար եգիպտացորեն։ Օղակը դրանից քսան հեկտարը մշակել է հատիկի համար, որի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 167 ցենտներ միջին բերք, իսկ 105 հեկտարը՝ սիլոսի համար, որի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 982 ցենտներ սիլոսի մասսա։ Հատիկի մեկ ցենտների արժեքը կազմել է 32, իսկ սիլոսի մասսայինը՝ 2 կոպեկ։

Եգիպտացորենի արտադրության ավելացման մյուս կարևոր միջոցը ցանքի առաջավոր ձևի կիրառումն է։ Հայտնի է, որ ցանքի լավագույն ձևը քառակուսի բնային եղանակն է. այն ապահովում է մշակման աշխատանքների լրիվ մեքենայացում, հետևաբար արտադրանքի միավորի ցածր ինքնարժեք։

Միության տարբեր ռեսպուբլիկաներում առաջավոր մեխանիզատորները, օղակավարները ցանում են միայն քառակուսի-բնային եղանակով։ Վիտեբսկի մարզի Վիտեբսկի շրջանի Կարմիր Բանակի անվան կոլտնտեսության օղակավարուհի Գ. Բարանովան 1960 թվականին 15 հեկտար քառակուսի-բնային ցանքի յուրաքանչյուր հեկտարից ստացել է՝ 1187 ցենտներ սիլոսի մասսա. Նույն կոլտնտեսության օղակավար Վ. Ցուլաևը՝ 1100 ցենտներ։

Եգիպտացորենի մշակման առաջավոր տեխնիկայի ներդրումը մեր կոլտնտեսությունների, սովխոզների, պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրներից մեկն է։

Ա. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

---

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԻ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԻՑ

## ԲԱՆՋԱՐԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՄԻ ԿԱՐԵՎՈՐ ՊՐՈԲԼԵՄԻ ՄԱՍԻՆ *

Բանջարային կարևոր կուլտուրաներից մեկը սոխն է, որը տարածված է աշխարհագրական շատ գոտիներում։ Բնակչությունն այն օգտագործում է տարվա բոլոր եղանակներին. այն անհրաժեշտ է նաև պահածոների արդյունաբերության համար։

Կանաչ սոխ հնարավոր է աճեցնել համարյա ամեն տեղ, իսկ գլուխ սոխ և սերմ աճեցնելու համար պահանջվում է երկարատև վեգետացիոն շրջան։

Այժմ ամենուրեք սոխի սերմ ստանում են գլուխ սոխից։ Մեր ռեսպուբլիկայում, սոխի սերմ ստանալու համար, առաջին տարվա սերմնադաշտում գարնանը ցանում են սերմ և նույն տարվա աշնանը ստանում հասունացած գլուխ սոխ։ Այնուհետև, դրանցից ընտրում են մայրացու գլուխ սոխ. աշնանը տնկում և հաջորդ տարվա հուլիս ամսին սերմ են ստանում։ Այսպիսով, մեզ մոտ սոխի սերմնաբուծությունը տևում է երկու տարի։ Միության միջին գոտում սերմնաբուծության առաջին տարին ստանում են մանր, սևուկ սոխ. աշնանը այն հողից հանում, պահում են պահեստներում, սերմնաբուծության երկրորդ տարում գարնանը տնկում են մանր սոխը։ Աշնան բերքահավաքի ժամանակ նրանցից ընտրում են պահանջված մեծությամբ մայրացու գլուխներ. սերմնաբուծության երրորդ տարում՝ գարնանը, մայրացու սոխը տնկում են նորից և սերմ են ստանում։ Հյուսիսային գոտում մայրացու սոխը մեծացնելու համար պահանջվում է ևս մեկ տարի։ Սոխի սերմը ստանում են չորրորդ տարում միայն։ Այլ կերպ ասած՝ մեկ անգամ սերմ հավաքելու համար աշնանը 2—3 տարի մայրացու սոխը հանում են հողից, ձմռանը պահում պահեստում, գարնանը վերատնկում, 3—4 տարի հող զբաղեցնում, սերմնադաշտեր մշակում և այլն։

Արարատյան դաշտավայրում վաղ գարնանը կանաչ սոխ ստանալու նպատակով ցանքը կատարում են նախորդ աշնանը. սոխը ցրտադիմացկուն է, չի վնասվում ձմեռային սառնամանիքներից, գարնանը արագ աճում է և դառնում օգտագործելի։ Սակայն, երբ կանաչ սոխի բերքահավաքը ուշանում է, նրանց որոշ մասը ծաղկացողուն և ապա սերմ է տալիս։

Մենք փորձեցինք սոխի բիոլոգիական վերոհիշյալ առանձնահատկությունները (ցրտադիմացկունությունը, սերմատու ունակությունը) մեր բնա-

---

* Ստորև տպագրում ենք ընկ. Մ. Հովհաննիսյանի հոդվածը՝ բանջարաբուծության մի կարևոր հարցի՝ սոխի սերմնաբուծության մասին։ Բանջարաբուծության սերմնաբուծությամբ զբաղվող ընկերների ուշադրությունն ենք հրավիրում այս կարևոր հարցի վրա։

կլիմայական միջավայրում օգտագործել սերմնաբուծության նպատակով։ Նրա խնամքը, մշակությունը պետք է տանել այնպես, որ աշնանացան սոխի դաշտերում բույսերը հասնեն զարգացման այնպիսի աստիճանի, որ հաջորդ վեգետացիոն շրջանում տան ծաղկացողուն և սերմ։ 1956 թվականին կոլտնտեսություններում, իսկ հետագայում՝ Երկրագործության գիտահետազոտական ինստիտուտում կատարված ժամկետային ցանքերի արդյունքները հաստատեցին մեր սպասելիքները. պարզվեց, որ Արարատյան դաշտավայրի կլիմայական պայմաններում «Խաթունարխի» սոխի սերմը կարելի է ստանալ նաև հետևյալ կերպ. օգոստոս-սեպտեմբեր ամիսներին սերմ ցանել, աճեցնել բույսերը և հաջորդ տարում նրանցից սերմ ստանալ։

1957 թվականի սեպտեմբերի 5-ին և 15-ին ցանած սերմերից ստացված սոխի 80—90 տոկոսը 1958 թվականի ամռանը սերմ տվեց։ Հեկտարի վերածած՝ աշնանային ցանքից ստացվեց միջին հաշվով 4,2 ցենտներ սերմ։ 1958 թվականի օգոստոսի 1-ի և 15-ի սերմով ցանված փորձամարգերի միջին բերքատվությունը, հեկտարի հաշվով կազմեց 6,2 ցենտներ, առանձին փորձամարգերի բերքատվությունը՝ 7,94 ցենտներ։

Սերմի բարձր բերք ստացվեց նաև 1961 թվականին։ 1960 թվականի օգոստոսի 16-ին ցանված «Խաթունարխի» սոխի փորձամարգերի միջին բերքատվությունը (հեկտարի հաշվով) կազմեց 14,93 ցենտներ սերմ, առանձին մարգերինը՝ 16—18,4 ցենտներ։ Գլուխ սոխով տնկված մարգերի միջին բերքը հեկտարի հաշվով կազմեց 9,7 ցենտներ։ Վերոհիշյալ տվյալներով հաստատվում է, որ Արարատյան դաշտավայրում աշնանացան սոխի սերմնադաշտերից ստացվում է սերմի անհամեմատ բարձր բերք, քան գլուխ սոխ տնկած սերմնադաշտերից, որոնց միջին բերքատվությունը ներկայումս չի անցնում 2,5—3,5 ցենտներից։

Սոխի աշնանացան սերմնադաշտերը սովորական սերմնադաշտերից տարբերվում են առաջին հերթին սերմնաբույսերի գերազանց թվով։ Գլուխ սոխ տնկված սերմնադաշտում սերմնաբույսերի թիվը հեկտարում 130—180 հազարից չի անցնում։ Սերմ ցանված դաշտում այն հասնում է 350—400 հազարի։ Մեկ հեկտար սերմնադաշտում 350—400 հազար բույս տնկելու համար պահանջվում է առնվազն 20 տոննա և ավելի գլուխ սոխ, իսկ սերմ ցանելիս ծախսվում է 8—10 կիլոգրամ սերմ։

Աշնանացան սերմնադաշտերի բերքը հավաքելուց հետո հեկտարից հավաքվում է նաև մոտ 3—4 տոննա պարենային մանր սոխ, որը տեղում թողնվելու դեպքում երկրորդ տարին սերմ է տալիս։ Գլուխ սոխ տնկված սերմնադաշտում երիտասարդ, կենսունակ մանր սոխ քիչ է պահպանվում. մեծ մասը փտում է, դաշտը նոսր է լինում. մինչդեռ այն սերմնադաշտը, որտեղ սերմ է ցանված, ավելի լիարժեք է լինում, սերմնաբույսերը՝ շատ։ Այսպիսի դաշտից 1958 թվականին (1957 թ. ցանքից) հեկտարից հավաքվեց 2,3 ցենտներ սերմ։

Մեզ մոտ, Արարատյան դաշտավայրի պայմաններում, վաղահաս կուլտուրաների բերքահավաքից հետո, օգոստոս ամսին ցանված սոխի սերմնադաշտում սերմերը ծլում են 8—10 օրում, մինչև ուշ աշուն բույսերը հասնում են զարգացման այնպիսի աստիճանի, որ կանաչ վիճակում հաջող ձմեռում են, առանց գլուխ գցելու, աշնան-գարնան շրջանում յարովիզացիայի են ենթարկվում և հաջորդ տարվա հուլիսին լիովին հասունացած սերմ են տալիս։ Նույն



ժամկետներին հասունանում է նաև այն սերմնադաշտերի բերքը, ուր նախորդ տարվա դեկտեմբերին գլուխ է տնկվել։

Այս փորձերը մեզ բերին այն եզրակացության, որ սոխի սերմնաբուծության այժմ ընդունված, արմատացած կանոնը (սերմը միայն գլուխ սոխից ստանալը) պարտադիր չպետք է լինի կլիմայական բոլոր պայմանների և սոխի բոլոր սորտերի համար։ Գլուխ սոխ-սերմակալներ տնկելը սերմնաբուծության մեջ անհրաժեշտ է լինում կլիմայական աննպաստ պայմաններում և սոխի բույսը կենդանի պահելու համար։ Իսկ երբ սոխի բույսերը գտնվում են նպաստավոր պայմաններում և աշնանից ունեն կազմակերպված, զարգացած արմատային սիստեմ ու տերևներ, դրանք կարող են գարնան սկզբից ապահովվել պահանջվող քանակի սննդանյութերով, նորմալ զարգանում են և իրենց կյանքն ավարտում սերմ տալով։ Բույսերը սերմից-սերմի են հասնում մեկ տարում, առանց գլուխ սոխի միջնորդության։

Անհրաժեշտ է լուծել նաև այն խնդիրը, թե աշնանացան սոխից ստացված սերմերը, իրենց ժառանգական, դրական (պարենային սոխ տալու) հատկությունը պահպանո՞ւմ են, թե ոչ։ Այս ուղղությամբ կատարված ուսումնասիրությունները ցույց տվին, որ սովորական ձևով գլուխ սոխից և աշնանացան սոխից ստացված սերմերն իրենց ցանքային հատկություններով համարժեք են։ 1958 և 1959 թվականների ցանքերի բերքի համեմատական հաշվումը ցույց տվեց, որ աշնանացան սոխից ստացված առաջին վերարտադրության սերմերից 8,1, երկրորդ վերարտադրության սերմերից 25 տոկոսով ավելի պարենային սոխ է ստացվել, քան գլուխ սոխից ստացված սերմերից։

Փորձերի ընթացքում պարզվել է նաև մի այլ օրինաչափություն։ Սոխի վաղաժամկետ աշնանային ցանքերից ստացվում է սերմ, ուշ ժամկետների աշնանացաններից՝ գլուխ սոխ, իսկ միջին ժամկետներում կատարված ցանքերի բույսերի մի մասը սերմ է տալիս, մի մասը՝ գլուխ։ Վերջին դեպքում նույն դաշտից միաժամանակ հավաքվում է և՛ սերմ, և՛ գլուխ սոխ։ Այսպես, օրինակ, 1958 թվականի օգոստոսի 1-ին և 15-ին ցանված սերմնադաշտերը տվեցին լիարժեք սերմ, սեպտեմբերի 15-ից հետո ցանված դաշտերը՝ միայն գլուխ սոխ, իսկ սեպտեմբերի մեկին (միջին ժամկետ) ցանված փորձահողամասի մեկ հեկտարից ստացվեց 3,5 ցենտներ սերմ, 175 ցենտներ գլուխ սոխ։ Մոտավորապես այնքան սերմ, որքան այժմ ստացվում է 1 հեկտար սերմնադաշտից և այնքան գլուխ սոխ, որքան ստացվում է մեկ հեկտար տարածությունից։

Մեր ռեսպուբլիկայում սովորաբար աշնանացան սոխից գլուխ սոխ չեն ստանում։ Նախկինում այդ ուղղությամբ ուսումնասիրություններ չեն կատարվել։ Երկրագործության գիտահետազոտական ինստիտուտի էջմիածնի բազայում մեր մի քանի տարվա փորձերով հաստատվեց, որ Արարատյան դաշտավայրում սոխի ուշ աշնանացանի միջոցով հնարավոր է պարենային գլուխ սոխի ամառային բերք աճեցնել։ Սեպտեմբերի 15-ից հետո կատարված ցանքերում 5—8 սմ մեծացած սոխի կանաչ բույսերը անվնաս են մնում դաշտում, վաղ գարնանից արագորեն աճում են ու գլուխ գցում, իսկ բերքը հասունանում է հուլիս ամսին։ Հայտնի է, որ ամռան ամիսներին բնակչության և պահածոների արդյունաբերության գլուխ սոխի պահանջը տեղում ապահովված չէ, ներմուծվածն էլ թանկ է և անորակ։ Սոխի աշնանացանը պլանավորված ձևով կազմակերպելու դեպքում հուլիս-սեպտեմբեր ամիսներին, մինչև գարնանա-

ցան սոխի բերքահավաքը հնարավոր է լիովին ապահովել բնակչության և արդյունաբերության պահանջը։

Փորձերը ցույց տվին, որ գլուխ սոխի ամառային բերքի համար Արարատյան դաշտավայրում ավելի նպատակահարմար է «Խաթունարխի» սոխի փոխարեն ցանել Ռուսաստանում տարածված Կրասնոդար հիբրիդ— 35-ը և «Կաբա»-ն։ Այդ սորտերը տարիներ շարունակ մեզ մոտ փորձարկվել են գարնանացանում, զիջել են «Խաթունարխի» սոխին, խոտանվել են որպես ուշահաս տեսակներ։ Մինչդեռ աշնանացանում այդ բույսերն ուշ են անցնում յարովիզացիայի ստադիան, «Խաթունարխի» սոխի համեմատությամբ 10—15 օր շուտ կարող են ցանվել, ավելի հզոր աճած տերևներով ու արմատներով ձմեռել և հաջորդ տարվա ամռանը շուտ հասունանալ, շատ բերք տալ։ Փորձերը ցույց տվին, որ աշնանացան գլուխ սոխի բերքը, գարնանացանի համեմատությամբ, ոչ միայն մեկուկեսից երկու ամիս շուտ է հասունանում, այլև 30—40 տոկոսով ավելի բերք է տալիս։

Կանաչ սոխի բարձր ցրտադիմացկունությունը և ցանքի ագրոտեխնիկական մշակումը աշնանային ճիշտ ժամկետների հետ զուգակցելը հնարավորություն է տալիս գլուխ սոխի և սերմի արտադրությունը տարածել ռեսպուբլիկայի նախալեռնային և լեռնային ու ցուրտ շրջաններում (Մարտունի, Լենինական, Ստեփանավան, հյուսիս-արևելյան շրջաններ), որտեղ ավելի նպաստավոր-լուսավոր և հով պայմաններ կան գլուխ սոխի բարձր բերք ու լավորակ սերմ ստանալու համար։ Այս նպատակով Երկրագործության գիտահետազոտական ինստիտուտի Մարտունու հենակետում 1960 թվականի աշնանը ցանված սոխի ցանքերից 1961 թվականին հավաքվեց գլուխ սոխ և սերմ։ Անհրաժեշտ է կազմակերպել լուրջ փորձնական աշխատանք սոխի սորտերի ընտրության, այդ շրջաններում ցանքի ժամկետները ճշտելու, վստահելի ագրոմիջոցներ մշակելու համար։ Այժմ արդեն կարելի է սոխի սերմնաբուծության ու գլուխ սոխ աճեցնելու նոր, ավելի շահավետ մեթոդներ կիրառել։

Աշնանացան սոխից սերմ ստանալու մեթոդն ունի այն առավելությունները, որ, նախ այն կիրառելիս սերմնաբուծության ժամանակաշրջանը կրճատվում, դառնում է մեկ տարի. յուրաքանչյուր հեկտար սերմնադաշտից խնայվում է 8—10 տոննա գլուխ սոխ-սերմակալ, որը կօգտագործվի որպես սննդամթերք և դրա փոխարեն կծախսվի միայն 8—10 կգ սերմ։ Վերանում են սերմնակալներ ընտրելու, մաքրելու, փոխադրելու, տնկելու՝ ձեռքով կատարվող աշխատանքները։ Սերմնակալներ տնկելու համար նորից հող մշակել չի պահանջվում և վերջապես սերմ ցանելիս հնարավոր է դառնում մեքենայացնել սերմնադաշտերի ցանքը և հետագա մշակությունը։

Աշնանացան սոխից սերմ ստանալու մեթոդին անցնելու դեպքում սովորական ձևի (գլուխ սոխ տնկելու) համեմատությամբ յուրաքանչյուր հեկտար սերմնադաշտից խնայվում է մոտ 1800—2000 ռուբլի, այն է՝ 8—10 տոննա գլուխ սոխ, 50—60 բանվորական օր և արտադրական այլ միջոցներ։ Ռեսպուբլիկայում ամեն տարի 50—55 հեկտար սերմնադաշտի վրա գլուխ սոխ է տընկվում, հետևաբար տարեկան ընդհանուր խնայողությունը կկազմի մոտ հարյուր հազար ռուբլի։

Իսկ եթե սոխի սերմնաբուծության գործը վերակառուցվի Միության մասշտաբով, տարեկան կխնայվեն մի քանի տասնյակ միլիոն ռուբլու հասնող աշխատանքային և նյութական միջոցներ։



Աշնանացան սոխից մեկ տարում սերմ ստանալու նպատակով մենք փորձարկեցինք նաև Միության տարբեր գոտիներում շատ տարածված 6 տեսակի սոխ, որոնց սերմնաբուծությունն իրենց հայրենիքում տևում է 2—4 տարի։ 1959 թվականի օգոստոսի 20-ին, 1960 թվականի օգոստոսի 16-ին ցանված այդ սոխերը բոլորն էլ մեզ մոտ սերմ տվին։ Հիմք ընդունելով այս իրողությունը (աշնանացանից սերմ ստանալը) մենք հնարավոր ենք համարում Միության միջին և հյուսիսային գոտիների համար հարավային ռեսպուբլիկաներում և շրջաններում կազմակերպել սոխի սերմերի բազմացում։ Այնտեղ աշնանացան սոխը բաց դաշտում կամ ձնածածկի տակ կարող է անվնաս ձմեռել, այն աստիճան, որ հաջորդ տարի այն ունակ դառնա լիարժեք սերմ տալու, որը և հնարավորություն կընձեռի սոխի սերմ մատակարարել հյուսիսային շըրջաններին։

Հարավից ստացված սերմերը հյուսիսային շրջաններում կօգտագործվեն միայն պարենային սոխ (գլուխ, կանաչ) ստանալու համար, ամբողջովին ազատվելով 2—4 տարի տևող մեծ ծախսեր պահանջող սերմնաբուծությունից։

Սերմնաբուծության վերակառուցումը մենք պատկերացնում ենք հետևյալ կերպ. Միության միջին և հյուսիսային շրջաններում, որտեղ սոխի սերմնաբուծությունը տևում է մի քանի տարի և խոշոր ծախսերի հետ է կապված, պետք է սովորական ձևով (գլուխ սոխից) ստանան իրենց մոտ տարածված, շրջանացված սոխի սորտերի էլիտային և սահմանափակ քանակությամբ առաջին վերարտադրության սերմեր։ Այդ սերմերի բազմացումը պետք է կազմակերպել հարավային ռեսպուբլիկաներում՝ աշնանացանի միջոցով։ Աշնանացանից ստացված առաջին տարվա այս սերմերը հյուսիսում էլ կօգտագործվեն բացառապես արտադրական ցանքերի համար։

Էլիտային և առաջին վերարտադրության սերմեր համեմատաբար շատ են պահանջվում, որպեսզի լիովին ապահովվի բազմացման դաշտերի պահանջը, սակայն այդ սերմնադաշտերը կկազմեն ոչ ավելի քան այժմ գլուխ սոխով կազմակերպվող սերմնադաշտերի 3—5 տոկոսը, քիչ տարածությունից ստացված սերմերը կապահովեն աշնանացան սերմնադաշտերի սերմի պահանջը։

Քանի որ սերմանյութի սորտային ընտրության աշխատանքը կատարվում է գիտական հիմնարկների կողմից էլիտային և առաջին վերարտադրության սերմերի սահմաններում և փոքր ծավալով, մեր կարծիքով, ճիշտ և դյուրին կլինի պահպանել ու բարելավել տվյալ կուլտուրայի սերմային հատկությունները։ Այդ միջոցառումը միանգամայն ապահովում է նաև աշնանացան ցանքերից լավորակ սերմի ստացումը։

Սերմնաբուծությունը գյուղատնտեսական աշխատանքի կարևոր և լուրջ բնագավառներից մեկն է։ Այդ ուղղությամբ կատարված փորձերը բացահայտում են բույսերի բիոլոգիական առանձնահատկությունների և Արարատյան դաշտավայրի բնակլիմայական պայմանների հաջող զուգորդման բնական օրինաչափությունը, որի գիտական ավելի խոր ուսումնասիրությունը և ճիշտ կիրառումը, շնորհակալ ավանդ կլինեն բնակչության պարենային և արդյունաբերության հումքի պահանջը բավարարելու գործում։

Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ՀԱՄԱՐ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՏՆՏԽՈՐՀԻ ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ 1962 Թ.

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրում նշված է. «Սովետական ժողովրդի հերոսական աշխատանքը ստեղծեց հզոր և բազմակողմանիորեն զարգացած էկոնոմիկա։ Այժմ բոլոր հնարավորությունները կան ամբողջ բնակչության՝ բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի բարեկեցության արագ բարձրացման համար»։ Ժողովրդական սպառման առարկաներ արտադրող ճյուղերի կարևորագույն խնդիրն է՝ ժամանակին թողարկել բնակչության բազմազան պահանջներին համապատասխանող ապրանքներ, որպեսզի լրիվին բավարարվի պահանջարկը այդ ապրանքների նկատմամբ։




Այդ իսկ նպատակով Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի ժողովրդական սպառման առարկաներ արտադրող ձեռնարկությունները 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ զգալի չափով կավելացնեն դրանց արտադրությունը։ 1962 թվականին արտադրվելու է 70 միլիոն 200 հազար մետր գործվածքեղեն, այդ թվում՝ բրդյա՝ 4,3 միլիոն, բամբակյա՝ 58,9, մետաքսյա՝ 7 միլիոն մետր։ 56 տոկոսով կավելանա շթի արտադրությունը։ Կներդրվեն 35 տեսակի շթի նոր նկարանախշեր՝ ավելի ճաշակով ձևավորված ու գեղեցիկ, որոնք հաճույքով կհագնեն և՛ մեծերը, և՛ երեխաները։ Կթողարկվեն նուրբ բրդյա կտորեղենի նոր տեսակներ, ինչպես՝ կոստյումի «Երիտասարդական» և վերարկուի «Պիոներական», որոնք ավելի մատչելի գին ունեն. («Երիտասարդականի» մետրը 6 ռ. 50 կոպ. է)։

Մշակվում է կտորների նոր տեսակների արտադրությունը՝ բրդի և սինթետիկ մանրաթելի համատեղ կիրառմամբ, որը համեմատաբար ավելի ամուր է։

Մետաքսի արտադրության մեջ կներդրվեն ավելի քան 250 տեսակի նոր նկարանախշեր։ Կթողարկվեն մետաքսյա գործվածքների նոր տեսակներ. կանացի հագուստի համար՝ «Ձերեմուխա», վերնաշապկի համար՝ «ռեպս», որոնց համար համատեղ օգտագործվելու են արհեստական մետաքսաթելը և ացետատի մանրաթելը։

Այս տարի կարտադրվի 5 միլիոն 82 հազար զույգ կոշիկ։ Ընդ որում արտադրվելու են կոշիկների այնպիսի 280 նոր տեսակներ, որոնք կհամապատասխանեն ժողովրդի պահանջներին։ Կանացի հնացած մոդելի չստերը կփոխարինվեն նոր մոդելի կիսակոշիկ-չստերով, որոնք կլինեն նուրբ, գեղեցիկ և էժան։ Այդ կիսակոշիկ-չստերը կարելի է հագնել թե՛ տանը, թե՛ դրսում։

Կոշիկի №1, №5 և Ձկալովի անվան գործարաններում տղամարդու կոշկեղենի արտադրության ծավալը կկազմի գործարանների ամբողջ արտադրանքի մոտ 20 տոկոսը. կբարձրանա այդ արտադրանքի որակը, կարտադրվեն ավելի նուրբ ու գեղեցիկ կոշիկներ։ Մեծ չափով ավելանալու է ժամացույցի արտադրությունը, թողարկվելու է 1 միլիոն 834 հազար ժամացույց։ Ոսկե պատյանով ձեռքի ժամացույցների արտադրությունը 1962 թվականին հասնելու է 84 հազարի։

Կիրովականի քիմիական կոմբինատը 1961 թվականին յուրացրեց և այս տարի կթողարկի արհեստական կորունդից 10.450 հազ. հատ ասեղներ՝ երկարանվագ ձայնասկավառակների համար։

Ժողովրդական սպառման և առևտրի կուլտուրայի ու հիգիենայի բարձրացման համար նախատեսվում է ավելացնել փաթեթված և ծրարված արտադրանքների թողարկումը։ Հրուշակեղենի արտադրանքը կավելանա 50, մակարոնինը՝ 64, մարգարինինը՝ 43 տոկոսով։



ՍՄԿՊ Ծրագրում ասված է, որ անհրաժեշտ է պայմաններ ստեղծել տնային տնտեսության մեջ կնոջ աշխատանքը կրճատելու և հեշտացնելու համար։ Այդ նպատակով պետք է մեծ չափով ավելացնել կատարելագործված էժան կենցաղային մեքենաների, հարմարանքների, էլեկտրասարքերի արտադրությունը։ Ժողովրդական գործածության համար խիստ կարևոր են կենցաղային տրանսֆորմատորները, որոնք կիրառվում են տնային սառնարանների և լվացքի մեքենաների օգտագործման համար։ Մեր ռեսպուբլիկայում այն արտադրվում է Լենինականի էլեկտրատեխնիկական գործարանում։ 1962 թվականին կարտադրվի 55 հազար այդպիսի տրանսֆորմատոր։




Ժողովրդի նյութական բարեկեցության վերելքին հետևում է նրա հոգևոր և կուլտուրական պահանջմունքների աճը։ Այժմ սովետական մարդն իր բնակարանում ռադիոընդունիչի, հեռուստացույցի կողքին ցանկանում է ունենալ նաև դաշնամուր։ Չորրորդ եռամսյակում Երևանի Նորակառույց դաշնամուրի գործարանը կթողարկի 100 հատ գեղեցիկ դաշնամուր։

1961 թվականին զգալի աշխատանք է կատարված կահույքի արտադրության ասորտիմենտի բարելավման ուղղությամբ։ Երևանի խոշոր գործարանների՝ Արաբկիրի կահույքի, Մյասնիկյանի, Կիրովի, Կույբիշևի անվան և «Պոբեդա» գործարանների արտադրությունից




հանվեց շրջանակային կոնստրուկցիայի կահույքը, որի պահանջը այնքան էլ մեծ չէր։ Այն փոխարինվեց կահույքի նոր, շատ պահանջվող տեսակներով։ Կահույքի արդյունաբերությունը այս տարի թողարկելու է 11 միլիոն 85 հազար ռուբլու արտադրանք (աճ 8,6 տոկոսով), իսկ առանձին տեսակներից, որոնց պահանջը մեծ է, ավելի շատ։ Այսպես, օրինակ, սեղանների արտադրությունը կավելանա 18,3, աթոռներինը՝ 10,9, իսկ փոքր գաբարիտի կահույքինը՝ 61 տոկոսով։ Կթողարկվի ավելի բազմազան կահույք, այսպես՝ հինգ տեսակ ճաշասեղան, թերթերի և ամսագրերի, հեռուստացույցների կլոր սեղաններ, որոնք կերեսապատվեն հայկական գեղեցիկ մարմարով։

Յուրացված է դիվան-մահճակալների սերիական արտադրությունը։ Արտադրության մեջ ներդրված է երկսենյականոց բնակարանի համար փոքր գաբարիտի կահույքի կոմպլեկտի արտադրությունը (արժեքը 684 ռ. 20 կ.)։

Թողարկվելու է նաև խոհանոցային կահույքի կոմպլեկտ (բաղկացած պահարանից, բացվող սեղանից, կախովի պահարանից և երկու տաբուրետից)։

Ս. ՍԱՀԱԿՅԱՆ

Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի պլանային-տնտեսագիտական վարչության պետի տեղակալ

# ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆԵՐՈՒՄ

## ՊԱՅՔԱՐ ՀԱՆՈՒՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ, ՀԱՆՈՒՆ ԲՐԱԶԻԼԻԱՅԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ ԼԵԳԱԼԱՑՄԱՆ

*40 տարի առաջ՝ 1922 թվականի մարտին հիմնված Բրազիլական Կոմունիստական պարտիան հարուստ փորձ է կուտակել իմպերիալիզմի և լատիֆունդիզմի դեմ, բանվոր դասակարգի ու ամբողջ ժողովրդի պահանջների և իրավունքների պաշտպանության համար, դեմոկրատիայի և սոցիալական առաջադիմության համար մղած պայքարում։*

*1935 թվականին, իր հիմնադրումից 13 տարի հետո, ընդհատակի պայմաններում գործող կոմպարտիան գլխավորեց ազգային-ազատագրական շարժումը, որը վերածվեց հերոսական զինված ելույթի։*

*Ապստամբության պարտությունից հետո սկսվեցին դաժան տեռորի ու հալածանքների տարիները։ 1934 թվականի կոնստիտուցիան փոխարինվեց ֆաշիստական բնույթ կրող կոնստիտուցիայով։ Պառլամենտը ցրվեց, երկրում հաստատվեց, այսպես կոչված՝ «նոր պետության» դիկտատորական ռեժիմը։*

*Այսպիսի պայմաններում պարտիան կարևոր դեր խաղաց մասսաների դեմոկրատական շարժումը կազմակերպելու գործում, որն ստիպեց բրազիլական կառավարությանը երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ո՛չ միայն հրաժարվել «առանցքի» տերությունների կողմում հանդես գալու պլաններից, այլև պատերազմել ֆաշիզմի դեմ։*

*Ֆաշիզմի ռազմական ջախջախումից հետո կոմպարտիան, որն անցել էր ընդհատակյա պայքարի 23-ամյա ուղի, նվաճեց լեգալ գոյության իրավունք։ Նա դարձավ մասսայական պարտիա, որն իր շարքերում ուներ մոտ 200 հազար անդամ։ Կոնգրեսի ընտրություններում կոմպարտիան ստացավ բոլոր ձայների 10%-ը։*

*Դեմոկրատական շարժումը հետագայում ավելի զարգացավ։ Չնայած ռեակցիոն ուժերի դիմադրությանը, մշակվեց և 1946 թվականին ընդունվեց նոր կոնստիտուցիա։ Կոնգրեսում մարտական ֆրակցիա ունեցող կոմունիստների մասնակցությամբ մշակված կոնստիտուցիան ամրապնդեց աշխատավորների նվաճած դեմոկրատական ազատություններն ու սոցիալական իրավունքները։ Միևնույն ժամանակ կոնստիտուցիան հողային սեփականությունը պահպանեց լատիֆունդիստների ձեռքում և խիստ սահմանափակեց ագրարային ռեֆորմ անցկացնելու հնարավորությունները։ Դրանում էր այն տարիների գյուղացիական շարժման թուլությունը։*

*Կոմպարտիան, առաջադիմական մյուս ուժերի հետ համատեղ, հաջողությունների հասավ արհմիութենական շարժման միավորման համար մղած պայքարում։*

*Սակայն 1947—1948 թթ. «սառը պատերազմի» ալիքը հասավ նաև մինչև Բրազիլիա։ Ռեակցիան և իմպերիալիզմը հարձակում սկսեցին դեմոկրատական ուժերի դեմ։ Կոմպարտիան ջնջվեց լեգալ պարտիաների ցուցակներից, չեղյալ հայտարարվեցին պառլամենտի անդամ կոմունիստների մանդատները։ Խոշոր քաղաքները, որտեղ կոմպարտիան ուներ ուժեղ ազդեցություն, զրկվեցին մունիցիպալ ինքնավարությունից։ Կառավարությունն սկսեց միջամտել արհմիությունների գործերին։*

*Վերստին ընդհատակ քշված կոմպարտիան շարունակում էր պայքարը դեմոկրատական ազատությունների պաշտպանության համար։ Կոմունիստների կազմակերպչական գործունեության և ժողովրդական մասսայական ելույթների շնորհիվ վերականգնվեց այնպիսի քաղաքների մունիցիպալ ինքնավարությունը, ինչպես՝ Սան-Պաուլոն, Ռիո-դե-Ժանեյրոն, Ռեսիֆեն և այլն։ Ընտրությունների ժամանակ միացյալ գործողությունների համար դաշինքներ և համաձայնություններ կնքելով մյուս պարտիաների հետ, ուրիշ պարտիաների ցուցակներով առաջադրելով իր թեկնածուներին, կոմպարտիան նպաստում էր դեմոկրատական շարժման զարգացմանը, օգտագործելով կոնստիտուցիայում գրանցված դրույթները, մերկացնելով մամուլի ազատությունը խեղդելու ռեակցիայի փորձերը, կոմպարտիան ընդհատակի պայմաններում կարողացավ առաջադիմական ուժերի օժանդակությամբ պահպանել իր լեգալ մամուլը։*

*Պրեզիդենտական երեք ժամանակաշրջանների ընթացքում պուչիստները փորձում էին խեղդել դեմոկրատական շարժումը, բայց իրենց նպատակին չհասան։ Ամեն անգամ, երբ ռեակցիան փորձում էր վերջ տալ դեմոկրատիայի մնացորդներին, ժողովուրդը դուրս էր գալիս փողոցները։ Երբ 1954 թվականին ռեակցիոն ուժերը տապալեցին պրեզիդենտ Վարգասին, ժողովուրդը փողոցային մարտերի միջոցով ստիպեց հարգել կոնստիտուցիոն օրինականությունը։*



*Ժողովրդական մասսաների 1955 թվականի նոյեմբերի 11-ի ելույթը դարձյալ պարտության մատնեց պուչիստներին և պայմաններ ստեղծեց, որ Ժ. Կուբիչեկը անցնի պրեզիդենտի պաշտոնին։ Այդ օրերը ցույց տվին, որ զինված ուժերում ևս, հատկապես ցամաքային զորքերում, գոյություն ունի կոնստիտուցիան պաշտպանող դեմոկրատական և ազգայնական մի թեվ։*

*1961 թվականի օգոստոսին, պրեզիդենտ Ժանիո Կուադրոսի հրաժարականից հետո, ռեակցիան փորձում էր խանգարել նրա օրինական հաջորդ Ժոաո Գուլարտին՝ գրավելու պրեզիդենտի պոստը։ Միասնական ճակատի լայն շարժման հետևանքով պուչիստները նոր պարտություն կրեցին։ Ժողովրդական այն ուժերի հաղթանակը, որոնք պահանջում էին հարգել կոնստիտուցիան, դեմոկրատական շարժման վերելքի, բրազիլական ժողովրդի անկախության և առաջադիմության ձգտումի արդյունքն է։*

*Պրոլետարիատն ու նրա ավանգարդը հսկայական դեր են խաղում Բրազիլիայում դեմոկրատական շարժման զարգացման գործում։ Սակայն դեմոկրատացման պրոցեսը, որ գլխավորում է ազգային բուրժուազիան, սահմանափակված է որոշակի շրջանակներով։ Որքան ավելի են սրվում բրազիլական հասարակության հիմնական հակասությունները և աճում դասակարգային պայքարը, այնքան ավելի է բուրժուազիան հակվում՝ համաձայնության գալու իմպերիալիզմի և ներքին ռեակցիայի հետ։ 1961 թվականի օգոստոսին ռազմա-քաղաքական ճգնաժամի ժամանակ ղեկավարելով միասնական ճակատը, բուրժուազիան, վախենալով, թե իշխանության գլուխ կանցնեն ռևոլյուցիայի հիմնական ուժերը, գնաց համաձայնողական ուղիով, չձգտելով պուչիստների լիակատար ջախջախման։ Հենվելով պառլամենտի ռեակցիոն մեծամասնության վրա, նա հասավ այն բանին, որ 1946 թվականի կոնստիտուցիայի մեջ մըտցվեցին ուղղումներ, որոնք ընդլայնում են պառլամենտի իրավունքները ի վնաս պրեզիդենտական լիազորությունների։ Դրա հետևանքով իշխանությունը հանձնվեց մի կառավարության, որի կազմի մեջ առաջադեմ գործիչների հետ միասին մտնում են Մորեյրա Սալեսի նման իմպերիալիզմի հայտնի գործակալներ։ Ներկայիս կառավարությունը կանգնած է իմպերիալիստների ու լատիֆունդիստների հետ համաձայնողականության և կոմպրոմիսների դիրքերում և շարունակում է հաշտվողական քաղաքականությունը պուչիստների նկատմամբ։*

*Նման քաղաքականության դեմ հանդես են գալիս միասնական ճակատի հետևողական կողմնակիցները։ Նրանք պայքարի մեջ են ներգրավում բոլոր նրանց, ովքեր շահագրգռված են իրենց երկրի ազատագրությամբ ու առաջադիմությամբ։ Բրազիլիայի դեմոկրատացման պրոցեսի արմատականացմանն ուղղված այս նոր տենդենցի արտահայտությունն է հանդիսանում Ազգային ազատագրության ճակատի ստեղծումը։*

*Ազգային ազատագրության ճակատի գործողությունների ծրագիրը ընդգրկում է այնպիսի պրոբլեմների արմատական լուծում, ինչպես կոմունալ տնտեսության՝ կոնցեսիայի տրված ձեռնարկությունների ազգայնացում (Ռիո-Գրանդե-դո-Սուլ նահանգի նահանգապետ և Ազգային ազատագրության ճակատի պրեզիդենտ Լեոնել Բրիզոլան ամերիկյան հեռախոսային ընկերությունը արդեն հայտարարել է ազգայնացված), օտարերկրյա կապիտալի կողմից շահույթների արտահանման որոշակի նորմայի սահմանում, օտարերկրյա բանկերում եղած ավանդների ազգայնացում, անթույլատրելի ճանապարհով վաստակած կարողության բռնագրավում, իրոք անկախ արտաքին քաղաքականության կիրառում և այլ կարևոր պրոբլեմների լուծում։*

*Ագրարային ռեֆորմի՝ գյուղացիական շարժման գլխավոր նպատակի իրականացումը նաև Ազգային ազատագրության ճակատի գործողությունների ծրագրի հիմնական կետերից մեկն է։ Ագրարային ռեֆորմի համար ծավալված շարժումը ձեռք է բերում կազմակերպվածության ավելի ու ավելի բարձր աստիճան և սկսում է քաղաքական կարևոր դեր խաղալ համադեմոկրատական շարժման մեջ։ 1961 թվականի ռազմա-քաղաքական ճգնաժամի ժամանակ երկրի մի քանի շրջաններում գյուղացիները նույնպես հանդես եկան կոնստիտուցիայի պաշտպանությամբ։ Դրանով սկիզբ դրվեց այն պրոցեսին, որի ընթացքում քաղաքներում մղվող պայքարը զուգակցվելու է գյուղում մղվող պայքարի հետ, դրանով իսկ աջակցելով բանվորների ու գյուղացիների դաշինքի ամրապնդմանը։*

*Գյուղատնտեսության աշխատողների ազգային առաջին համագումարում, որը կայացավ Մինաս Ժերաիս նահանգի մայրաքաղաք Բելո-օրիզոնտեում արդեն 1961 թվականի օգոստոսի իրադարձություններից հետո, գյուղացիներն ընդունեցին մի բանաձև, որը որպես ագրարային ռեֆորմի անցկացման հիմնական ուղի նշում է լատիֆունդիստների հողերի բռնագրավումը։ Ռիո-Գրանդե-դո-Սուլ նահանգում Լեոնել Բրիզոլան լատիֆունդիստներին զրկում է այն հողի սեփականության իրավունքից, որ գրավել են գյուղացիները։ Գյուղացիները հողը գրավում են նաև Ռիո-դե-Ժանեյրո Բահիա և Պեռնամբուկո նահանգներում։*

*Դեմոկրատական շարժման զարգացման հետ ուժեղանում է պայքարը կոնստիտուցիայի այնպիսի փոփոխությունների համար, որոնք նը-*

պատեին ռադիկալ ագրարային ռեֆորմի և ուրիշ արմատական վերափոխումների կիրառմանը, ինչպես նաև ապահովեին անգրագետների ու զինվորների ձայնի իրավունքը։

Բրազիլիայում հասունանում են այն պայմանները, որոնք կարող են հնարավոր դարձնել այլ տիպի քաղաքական իշխանության հաստատումը, իշխանություն, որին ներկայացնեին այնպիսի ուժեր, որոնք իրոք ձգտում են վերջ տալ իմպերիալիզմից ունեցած կախմանը, վերացնել լատիֆունդիաները, բացել երկրի առաջադիմության, ժողովրդի բարեկեցության լայն ուղին։

Մենք ապրում ենք պատմական նոր դարաշրջանում, ազգային-ազատագրական բուռն ռևոլյուցիաների դարաշրջանում։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմը շարունակում է իր անկասելի առաջընթացը, իսկ իմպերիալիզմը կորցրել է տիրապետությունը մարդկության մեծամասնության նկատմամբ։ Դա տեղի է ունենում այնպիսի պայմաններում, երբ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը, թևակոխելով իր երրորդ էտապը, ավելի ու ավելի է սրվում։

Կուբայի ռևոլյուցիայի հաղթանակը հզոր ներգործություն է ունենում ժողովրդական լայն մասսաների մտքերի վրա և նպաստում է Բրազիլիայում դեմոկրատական պրոցեսի է՛լ ավելի արմատականացմանը։ Հենց այդ պատճառով էլ Բրազիլիայի տիրող դասակարգերը, որոնց շարքերում քիչ չեն լկտի հակակոմունիստները, չեն համարձակվում ինտերվենցիոնիստական ավանտյուրա սկսել Կուբայի դեմ, չնայած հյուսիսամերիկյան իմպերիալիստների կողմից գործադրվող ճնշմանը։ Պունտա-դել-Էստեում վերջերս տեղի ունեցած խորհրդակցություններում Բրազիլիայի գրաված դիրքը, որը տարբերվում էր ԱՄՆ-ի դիրքից, երկրի մասսայական դեմոկրատական շարժման ուժի արտահայտությունը հանդիսացավ։

Մենք կանգնած ենք մի նոր իրադրության հանդեպ, որը բնորոշվում է ազատագրական դեմոկրատական պայքարում բանվոր դասակարգի և ամբողջ ժողովրդի ձեռք բերած հաջողություններով։ Ուժերի հարաբերակցությունը արդեն դասավորվել է ոչ հօգուտ պուչիստների ու ժողովրդի մյուս թշնամիների, որոնք ստիպված են իրենց գործողությունները թաքցնել ժողովրդից, դիմել տեռորի։ Բրազիլիայում աճում և ավելի ու ավելի վճռականորեն է դրսևորվում մասսաների ձգտումը դեպի դեմոկրատիա, խաղաղություն, առաջադիմություն և սոցիալիզմ։ Այս նոր իրադրությունը հակասում է այն փաստը, որ մինչև հիմա չի վերացվել կոմունիստական պարտիայի՝ դեմոկրատիայի համար մղվող պայքարի ամենից ավելի փորձված ու հետևողական ուժի արգելման մասին օրենքը։

Որքան զարգանում և ավելի ու ավելի արմատական է դառնում դեմոկրատականացման պրոցեսը, այնքան ավելի անհրաժեշտ է դառնում կոմունիստական պարտիայի օրինականացումը։ Դա բանվոր դասակարգի առավել առաջավոր ուժերին հնարավորություն կտա ազատ կերպով մասնակցելու դեմոկրատական շարժմանը, առանց որի անհնարին է մինչև վերջ հասցնել ռևոլյուցիոն այն վերափոխումները, որոնք նպատակ ունեն նորոգել բրազիլական հասարակությունը։

Բրազիլական արդարադատությունը դեմոկրատական շարժման նոր հաջողությունների ազդեցության տակ արդարացրեց կոմունիստներին՝ պրովոկացիոն ճանապարհով նրանց դեմ հարուցված դատական պրոցեսներում և հաստատեց կոմունիստների՝ քաղաքական ազատ գործունեության իրավունքը։ Հարկավոր է նկատի ունենալ նաև պառլամենտի՝ վերջերս ընդունած օրենքը՝ 1934 թվականից հետապնդվող բոլոր քաղաքական գործիչներին լայն ամնիստիա շնորհելու մասին։ Այս փաստերի լույսի տակ առանձնապես ստիպողական է դառնում ընտրությունների օրենքի հակադեմոկրատական և դիսկրիմինացիոն դրույթների վերացման (և որքան շուտ, այնքան լավ) անհրաժեշտությունը, օրենք, որի 58-րդ հոդվածը կոմունիստներին արգելում է մասնակցել ընտրություններին և զրկում է նրանց իրենց թեկնածուներն առաջադրելու իրավունքից։

Բրազիլիայի դեմոկրատական շարժումը ամբողջապես պաշտպանում է կոմունիստական պարտիայի պայքարը որպես քաղաքական պարտիա գրանցվելու իրավունքի համար։ Անխոնջ կերպով ծառայելով բրազիլական ժողովրդին, կոմունիստները արժանացել են ժողովրդական լայն մասսաների հարգանքին։ Բրազիլիայի ընտրական օրենսգրքում ասված է, որ ամեն մի քաղաքական պարտիա գրանցված լինելու համար պետք է ներկայացնի ընտրողների 50 հազար ստորագրություն։ Ամբողջ երկրում արդեն ավելի քան 70 հազար ընտրողներ տվել են իրենց ստորագրությունները ի պաշտպանություն կոմպարտիայի։ Կոմպարտիայի քառասնամյակի օրերին տեղի ունեցան կոմունիստների հետ համերաշխության և կոմպարտիան ընտրական ցուցակների մեջ մտցնելու կամպանիայի պաշտպանության ժողովրդական խոշոր ցույցեր։

Կոմպարտիայի լիակատար օրինականացման հարցը պահանջում է անհապաղ և վերջնական լուծում։

ԿԱՌԼՈՍ ՄԱՐԻԳԵԼԼԱ

«Проблемы мира и социализма», № 5, 1962 թ.։

# Գիտության աշխարհում

## ԿԻԲԵՌՆԵՏԻԿԱՆ ԾԱՌԱՅԵՑՆԵԼ ԿՈՄՈՒՆԻԶՄԻՆ

Ա. ԲԵՐԳ

Ակադեմիկոս, ՍՍՌՄ ԳԱ Կիբեռնետիկայի գծով գիտական խորհրդի նախագահ

1. Կիբեռնետիկան ուսումնասիրում է կառավարման պրոցեսները այն բարդ դինամիկ սիստեմներում, որոնց մեջ ընդգրկված են մարդու գործունեությունն ու կյանքը։ Դրանք կենդանի բնության, մարդկային հասարակության և արդյունաբերական արտադրության բարդ դինամիկ սիստեմներ են։

Ամենաբարդ սիստեմը, իհարկե, կենդանի բնությունն է։

Բայց կենդանի բնության ուսումնասիրությունը կատարվել է շատ հազարամյակների ընթացքում էմպիրիկ եղանակով՝ փաստերի կուտակման, դրանց սիստեմավորման և զուգորդման միջոցով։ Մաթեմատիկական մեթոդները հազվագյուտ և քիչ էին կիրառվում։ Ժամանակակից ամբողջ մաթեմատիկան զարգացել է ոչ թե ի պատասխան կենդանի բնության ուսումնասիրման պահանջի, այլ տեխնիկայի, ֆիզիկայի և աստղագիտության պահանջներին համապատասխան։

Երբ բավարար կերպով լուծվում է առաջին խնդիրը՝ բնության տարերային ուժերի ենթարկումը մարդուն, երբ երկրի վրա ապրում են առողջ ու աշխատունակ մարդիկ, երբ հաջողվում է կանխել ծանր հիվանդությունները և շատ տարիներ պահպանել մարդկանց աշխատունակությունը, այն ժամանակ ծագում է նոր պրոբլեմ՝ ինչպես ամենալավ ձևով կազմակերպել առողջ մարդկանց աշխատանքն ու կյանքը, դրանց հոգեկան ու նյութական պահանջները լիովին բավարարելու համար։

Մեր պարտիայի Ծրագրում նշված է, որ կոմունիստական հասարակությունը ի տարբերություն բոլոր նախընթաց սոցիալ-տնտեսական ֆորմացիաների, կազմավորվում է ո՛չ թե տարերային ձևով, այլ մարքսիստական-լենինյան պարտիայի կողմից ղեկավարվող ժողովրդական մասսաների գիտակից ու նպատակասլաց գործունեության շնորհիվ։ Կոմունիզմի շինարարության ողջ աշխատանքի ղեկավարությունը պարտիայի կողմից հիմնված է հասարակության զարգացման օրենքների իմացության վրա և դա տալիս է նրան կազմակերպված պլանաչափ և գիտականորեն հիմնավորված բնույթ։

Միանգամայն բնականորեն հարց է ծագում՝ չի՞ կարող արդյոք բարդ պրոցեսների կառավարման նոր գիտությունը՝ կիբեռնետիկան, ծառայություն մատուցել կոմունիզմին։

Արտակարգ բարդ են այն օրինաչափությունները, որոնց ենթարկվում է մարդկային մեծ կոլեկտիվների կազմակերպված գործունեությունը որոշակի նպատակների հասնելու համար։ Դրանք այնքան բարդ են, որ հումանիտար գիտությունների որոշ ներկայացուցիչների մոտ կասկած է առաջանում, թե արդյոք հնարավոր է այդ օրինաչափությունների իմացության և ձևակերպման համար կիրառել մաթեմատիկական մեթոդները։ Բայց այդ կասկածները հիմնավորված չեն։ Ներկայումս արդեն շատ բան է արվում հաշվառումը, մատակարարումը, պլանավորումը, տնտեսական հաշվարկումները բարելավելու համար։ Բայց այդ միայն սկիզբն է։ Ամեն տարի մաթեմատիկան կլուծի շատ ավելի դժվարին խնդիրներ։

Կիբեռնետիկայի լայն կիրառման կարևոր բնագավառը մարդու հասարակա-արտադրական գործունեությունն է։ Երբ անցյալ ժամանակներում աշխատանքի պարզագույն գործիքների, հետագայում հասարակ հարմարանքների և մեխանիզմների, իսկ հետո նաև մեքենաների կիրառումը պրոգրեսիվ էր, ապա վերջին տասնամյակներում ամենայն խստությամբ դրված է արտադրողական աշխատանքի կառավարումն ավտոմատացնելու հարցը։ Քաջ հայտնի է, թե այդ հարցին ներկայումս որքան շատ ժամա-

նակ է հատկացվում: Բայց մեզ վաղուց արդեն չի բավարարում առանձին կարևոր կամ օժանդակ օպերացիաների պարզ ավտոմատացումը: Խոսքն աշխատանքի այնպիսի կազմակերպման մասին է, որի դեպքում նրա էֆեկտիվությունը լինի ամենաբարձրը: Ընդսմին անհրաժեշտ է առաջադրված նպատակին հասնել ամենափոքր ծախսումներով, կամ հասնել ամենակարճ ժամանակում և հենց նույն ծախսումներով հասնել ավելի մեծ նպատակների: Խոսքը վերաբերում է աշխատանքի օպտիմալ (ամենալավ) պայմանների ստեղծմանը, աշխատանքի օպտիմալ կառավարմանը, դրա համար կազմակերպման ամենահարմար ձևեր, աշխատանքի մեթոդներ և տեխնիկական միջոցներ կիրառելուն:

Այսպիսով, կիբեռնետիկայի առաջին խնդիրն է ուսումնասիրել այն բարդ պրոցեսներն ու օպերացիաները, որոնք տեղի են ունենում կենդանի բնության, մարդկային հասարակության և արտադրության մեջ՝ ամենաձեռնտու եղանակով առաջադրված նպատակներին հասնելու համար:

**2**. Կիբեռնետիկան ծնվել է ի պատասխան մարդու կողմից գիտակցված պահանջի՝ բարդ պրոցեսների և օպերացիաների կառավարման մեթոդներն ու միջոցները բարելավելու համար: Դա ամեն մի պրոգրեսիվ նախաձեռնության ծնման օրինաչափ ընթացքն է: Նրա հաջողության համար անհրաժեշտ է մի շարք պայմանների առկայությունը: Կառավարման բնագավառում այն հանգում է լուծվող խնդիրների բարդությանը համապատասխանող մաթեմատիկական ապարատի առկայությանը և բազմաթիվ արագագործ և հուսալի այն տեխնիկական միջոցների առկայությանը, որոնք անհրաժեշտ են մաթեմատիկական լեզվով արտահայտված հրամանների իրականացման համար:

Հարկավոր է նշել, որ բարդ պրոցեսների կառավարման պրոբլեմի լուծումը պահանջում է կատարել ևս մեկ պայման: Բարդ սիստեմները, որոնք ընդունակ են իրենց վիճակը փոփոխելու, կազմվում են բազմաթիվ փոխադարձաբար կապված կառուցվածքային տարրերի միջոցով: Ներգործությունը այդ տարրերի վիճակը բնորոշող պարամետրերի վրա, ահա հենց այդ է կառավարումը: Ուստի նախքան կառավարումն սկսելը անհրաժեշտ է մանրամասն ծանոթանալ բարդ սիստեմի կառուցվածքին և նրա այն բաղադրիչ տարրերի ֆունկցիաներին, որոնց մեծ մասը փոխադարձ կապված է և փոխադարձաբար ներգործում է:

Այդ նշանակում է՝ անհրաժեշտ է ունենալ մանրամասն ինֆորմացիա սիստեմի կառուցվածքի և նրա մեջ գործող օրինաչափությունների մասին: Միայն դրանք գիտենալով կարելի է կառավարել՝ իրականացնել նպատակասլաց ներգործությունը:

Այսպիսով, կիբեռնետիկայում տարբերում են կառավարման օբյեկտներ, այսինքն՝ այն բարդ դինամիկ սիստեմները, որոնք մենք պատրաստվում ենք մի վիճակից փոխադրել մյուսը, և կառավարման սուբյեկտներ, այսինքն՝ այն սարքերը, որոնք մենք կիրառում ենք կառավարման օբյեկտի վրա կառավարող ներգործությունն իրականացնելու համար:

Կառավարման օբյեկտներ, այսինքն՝ կառավարվող սիստեմներ, կարող են լինել, ինչպես արդեն ասացինք, կենդանի բնության, մարդկային հասարակության և արդյունաբերական արտադրության օբյեկտները:

Կառավարման սուբյեկտներ մեծ մասամբ հանդիսանում են մարդիկ, իսկ այժմ ստեղծվում են կառավարող սարքեր, որոնց օգնությամբ իրականացվում է մշակումը և կառավարման հրամանների հանձնումը: Այդ կառավարող սարքերը էլեկտրոնային ավտոմատիկայի միջոցներ են, մասնավորապես մաթեմատիկական էլեկտրոնային մեքենաներ:

**3**. Շատ հետաքրքիր է մարդու հասարակական աշխատանքային գործունեության մեջ կիբեռնետիկայի գաղափարների և միջոցների կիրառելիության հարցը: Այդ գործունեությունը խիստ բազմազան է, բարդ և բազմաթիվ պատահական ներգործությունների ենթակա: Դրան մասնակցում են միլիոնավոր մարդիկ, որոնք կատարում են ամենաբազմապիսի օպերացիաներ:

Կարելի՞ է արդյոք բարելավել այդպիսի բարդ սիստեմի կառավարումը: Իրագործելի՞ է արդյոք այն, ուտոպիա չէ՞ արդյոք դա կամ մաթեմատիկայով ու տեխնիկայով հրապուրվել: Հարցի պատասխանը սկսենք առավել բարդ երևույթների ու պրոցեսների՝ կենդանի բնության դինամիկ սիստեմների քննարկումից:

Բարդությունը ո՛չ միայն նրանում է, որ կենդանի օրգանիզմները կազմված են հարյուր միլիարդավոր բջիջներից, այլ գլխավորապես նրանում, որ այդ անթիվ բջիջները կենդանի են ու փոխադարձաբար կապված, հիանալի կերպով կազմակերպված են և նրանց ու ամբողջ օրգանիզմի գործունեությունը ամբողջապես զարմանալիորեն նպատակահարմար կերպով համաձայնեցված է: Կենդանի բնության բարդ սիստեմները, չնայած այն բանին, որ նրանք հաճախ բառիս իսկական իմաստով գտնվում են մեր ձեռքերում, մարդու ստեղծած հասարակական սիստեմներից շատ ավելի բարդ են կազմակերպված:

Հազարամյակներ շարունակ մարդն զբաղվել է կենդանի բնության ուսումնասիրությամբ և այստեղ, անշուշտ, ձեռք են բերվել փայլուն հաջողություններ: Սակայն պետք է խոստովանել, որ այն մեթոդներն ու միջոցները, որոնք մարդն իր տրամադրության տակ ուներ հսկայական ժամանակամիջոցի ընթացքում, հաճախ չէին համապատասխանում ուսումնասիրվող պրոցեսների ու երևույթների բարդությանը: Հայտնի է, որ կենդանաբանները, ուսումնասիրելով կենդանի բնության միկրոսկոպիկ օբյեկտները, հաճախ սկսում են այն բանից, որ նրանց սպանում են... Կենսաբանների հիմնական գործիքը էլեկտրոնային միկրոսկոպն է՝ ամեն մի կենդանի օրգանիզմի ակնթարթային, անմիջական սպանողը: Երբ բիոֆիզիկայում դեռ կենդանի մատերիան ուսումնասիրելու փորձեր են արվում, քանի նա կենդանի է, ապա ի՞նչ ասել բիոքիմիայի մասին: Իսկ կենդանի օրգանիզմների և նրանց բաղադրամասերի ֆունկցիաների ուսումնասիրման հետ կապված ֆիզիոլոգների փորձերը կարճ ժամանակից հետո միշտ էլ բերում են նույն արդյունքի:

Անցյալ տարվա ամռանը Մոսկվայում բիոքիմիայի գծով կայացած միջազգային կոնգրեսում զեկուցումների զգալի մասը շոշափում էր կիբեռնետիկայի կիրառման պրոբլեմները բիոքիմիայում:

Բայց ի՞նչն է դժվարացնում նոր մեթոդների լայն օգտագործումը բիոքիմիայում: Գլխավորապես բիոքիմիկոսների՝ իրենց հետազոտություններում կիբեռնետիկայից օգտվելու անսովորությունը: Այդ նշանակո՞ւմ է արդյոք, որ բիոքիմիկոսները պետք է վերասովորեն: Ոչ, բայց այդ նշանակում է, որ բիոքիմիական հետազոտություններին պետք է մասնակից դարձվեն մաթեմատիկոսներն ու էլեկտրոնիկայի մասնագետները, որոնք որոշ չափով ծանոթ են կենսաբանությանը, մասնավորապես բիոքիմիային, իսկ իրենք՝ բիոքիմիկոսները, իհարկե, պետք է ընդլայնեն իրենց մաթեմատիկական տեսադաշտը:

Ես միանգամայն գիտակցականորեն վերցրի բիոքիմիայում կիբեռնետիկայի օգտագործման հնարավորության օրինակը մի այնպիսի բնագավառում, որտեղ, թվում էր, թե դրա համար ոչ մի հիմք չկա: Կյանքն ամեն օր հերքում է նման տեսակետը: Առաջավոր գիտնականները գիտակցել են այդ գիտության մեջ կիբեռնետիկայի մեթոդների լայն կիրառման անհրաժեշտությունը: ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի կենսաբանական բաժանմունքի հատուկ նստաշրջանում այդ պրոբլեմները կստանան իրենց հետագա զարգացումը:

Կիբեռնետիկան ու էլեկտրոնիկան հատուկ տեղ են գրավում բժշկության մեջ: Այստեղ իրականացվում է երկու հնարավորություն: Առաջին, առանձին օրգանների կամ ամբողջ օրգանիզմի վիճակի մասին ինֆորմացիա հավաքելը հիվանդության դիագնոզի հատկանիշներն ըստ խմբերի մշակելու նպատակով: Եվ երկրորդ, անմիջական էներգետիկ ներգործությունը առանձին օրգանների վրա բուժիչ նպատակներով: Վերջապես, կիբեռնետիկան անմիջական օգնություն է ցույց տալիս վիրաբույժներին վիրահատությունների ժամանակ: Մշակվել է թոքերի, երիկամների, սրտի և մի քանի այլ օրգանների ժամանակավոր փոխարինման մեթոդիկան: Ծրնվում է նաև բժշկական էլեկտրոնիկայի նոր, արտակարգ հեռանկարային բնագավառը՝ սրտի էլեկտրաստիմուլյացիան: Սրտի ներսը մտցված կամ արտաքին էլեկտրոդները սնում են սրտի մկանները նրա աշխատանքին խթանող էլեկտրական լարման ռիթմիկ իմպուլսներով: Արդեն առկա են առաջին հաջողությունները, որոնք բժշկական աշխարհում լայնորեն հայտնի են՝ որոշ հիվանդներ շատ ամիսներ է, որ ապրում են գրպանի մարտկոցից սնվող սրտի խթանիչներով:

**4**. Գոյություն ունի մի անհիմն կարծիք, որ մաթեմատիկան և առավելապես էլեկտրոնիկան, չխոսելով արդեն կիբեռնետիկայի մասին, շատ քիչ են պետք գյուղատնտեսության վերելքի համար: Այդ կարծիքը սխալ է: Գյուղատնտեսության մեջ պրոգրեսը հնարավոր չէ առանց աշխատանքի արդյունքների հաշվառումը բարելավելու և, առաջին հերթին, առանց ինֆորմացիան ժամանակին ու որակով հավաքելու և այն մաթեմատիկական վիճակագրության մեթոդներով մշակելու:

Երկրորդ, մաթեմատիկական մեթոդների կիրառումը ագրոբիոլոգիայում նույնպես անհրաժեշտ է, ինչպես և կենսաբանության մեջ ընդհանրապես: Ցոտ-սինթեզը, ֆիզիկա-քիմիական երևույթները կամ պրոցեսները, որոնք ընկած են ողջ կյանքի հիմքում երկրի վրա, ենթարկվում են որոշակի օրինաչափությունների: Հայտնի է, որ արհեստական պայմաններում, ավելացնելով ճառագայթային էներգիայի օգտագործումը, հաջողվում է զգալի չափով բարձրացնել բերքատվությունը: Բնական պայմաններում արեգակնային ճառագայթները օգտագործվում են աննշան տոկոսով: Անկասկած այդ դրությունը հավերժ չի պահպանվի:

Երրորդ, գոյություն ունեն մաթեմատիկական օրինաչափություններ, որոնք բերքատվությունը կապում են հողի մեջ մտցվող պարարտանյութերի որակի ու քանակի հետ:

Չորրորդ, տրակտորների օգնությամբ դաշտերի մշակման մեթոդը իդեալական չէ՝ քայքայվում է հողի կազմը և կարծրանում է հողը: Երկրագործության ինտենսիվության բարձրա-

ցումը պահանջում է ավելի կատարյալ եղանակներ ու մեխանիզմներ:

Հինգերորդ, անհրաժեշտ է, ինչպես այդ հաճախ ասվել է գյուղատնտեսության վերաբերյալ ընդունված որոշումներում, ապահովել կայուն և բարձր բերք՝ անկախ եղանակից և նույնիսկ կլիմայից: Այդպիսի դժվար պրոբլեմի նկատմամբ գիտական մոտեցման դեպքում, օգտագործելով չորացման և արհեստական ոռոգման կատարյալ մեթոդները, մասնավորապես այդ պրոցեսների կառավարումը հեռվից (ժամանակին հավաքող և մշակվող ինֆորմացիայի հիման վրա), կարելի է այդ հարցը համարել լիովին իրագործելի:

Կարելի է շոշափել նաև սերմերի և բազմացման օրգանների վրա ներգործելու պրոբլեմը՝ ցանկալի հատկությունների, նույնիսկ կենդանիների սեռի ստացման նպատակով: Կարելի է հիշեցնել գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման անհրաժեշտությունը: Բայց ասվածն արդեն բավական է, որպեսզի համաձայնենք, որ մաթեմատիկական մեթոդների և ժամանակակից ավտոմատիկայի միջոցների, մասնավորապես, հաշվիչ մեքենաների կիրառմամբ ամենամոտ տարիներին գյուղատնտեսության մեջ տեղի կունենա «արդյունաբերական ռևոլյուցիա»: Շատ կարևոր է նշել, որ այսօր արդեն այն սկսվել է:

Ամփոփելով այն ամենը, ինչ ասվել է, կարելի է ապացուցված համարել կիբեռնետիկայի կիրառման խիստ անհրաժեշտությունը՝ կենդանի բնությունն ուսումնասիրող և այն իր շահերին ենթարկելու ձգտող մարդու գործունեության արդյունավետությունը բարձրացնելու համար:

**5** Էկոնոմիկայում լուծվող պրոբլեմները բարդ են, բայց շատ ավելի պարզ այն պրոբլեմներից, որոնք վիճակվում է ուսումնասիրել կենդանի բնության մեջ: Մաթեմատիկական մեթոդների կիրառման անհրաժեշտությունն այստեղ ոչ մի կասկած չի կարող առաջացնել: Հաշվիչ էլեկտրոնային տեխնիկայի օգտագործման նպատակահարմարությունը նույնպես կարծես թե վիճելի պետք է լինի: Եվ այնուամենայնիվ դեռևս կան տնտեսական գիտության առանձին ներկայացուցիչներ, որոնք այդ դրույթներից անհրաժեշտ հետևություններ չեն անում:

Էկոնոմիկայի մեջ մաթեմատիկական մեթոդների արմատավորման դժվարությունը բացատրվում է ըստ երևույթին, նույնպես նրանով, որ որոշ տնտեսագետներ բավարար մաթեմատիկական պատրաստություն չունեն: Դա փոքր-ինչ տարօրինակ է հնչում. ողջ տնտեսական գիտությունը հիմնվում է հաշվարկումների վրա: Բայց խոսքը ոչ թվաբանության և ոչ էլ պարզ ու բարդ տոկոսների մասին է: Խոսքը բարձրագույն մաթեմատիկայի հիմունքների ու նրա որոշ հատուկ բաժինների մասին է: Այդ բնագավառից առաջացած խնդիրները ծագում են անխուսափելիորեն, երբ հարց է դրվում բարձրացնել ժողովրդական տնտեսության կառավարման արդյունավետությունը:

Այժմ արդեն միանգամայն որոշակի պարզվել է, որ միայն էլեկտրոնային մեքենաներով կարող են բավարար լուծվել վիթխարի մասշտաբների և ամենաբարդ կառուցվածքի սոցիալիստական ժողովրդական տնտեսության ամենակարևոր ու դժվարին տնտեսական խնդիրները:

Ինչպես և կենսաբանության բնագավառում, ուր կենդանի բնության օրենքների իմացությունը պետք է հիմնվի լիարժեք ինֆորմացիայի հավաքման ու վերամշակման վրա, ժողովրդական տնտեսության կառավարման գործում առաջնակարգ դեր է խաղում արտադրական և տնտեսական գործունեության մասին ժամանակին ինֆորմացիա հավաքելը: Նախնական ինֆորմացիայի հավաքման կարևորությունը նշել է դեռ Վ. Ի. Լենինը: Նա ասում էր, որ սոցիալիզմի տնտեսական շինարարության բնագավառում առաջին պլանի վրա են քաշվում հաշվառման կազմակերպումը և արտադրության ու արդյունքների բաշխման վերահսկողությունը: Նա հատկապես նշում էր, որ առանց դրա չի կարելի անցնել արտադրության կառավարմանը և ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր նյուղերի կարգավորման աշխատանքը:

Հաշվառքի մեթոդներն ու միջոցները պետք է համապատասխանեն ժողովրդական տնտեսության պահանջներին: Էլեկտրոնային մեքենաները երբեք չեն կարող որևէ օգուտ բերել, եթե նրանց մեջ մտցվող նախնական ինֆորմացիան անբավարար լինի: Անշուշտ, հակասական, թերի և ուշացող ինֆորմացիայի հիման վրա չի կարելի կոմունիզմ կառուցել: Հենց աշխատողների կոմունիստական, բարձր կազմակերպված ազատ հասարակությունը կպլանավորի ժողովրդական տնտեսության կառավարումը լիարժեք նախնական ինֆորմացիայի հիման վրա և այդ որքան շատ հասկանան տնտեսագետները, այնքան ավելի լավ կլինի:

Մասսայական ինֆորմացիան պետք է մշակվի մաթեմատիկական վիճակագրության մեթոդներով: Լավ հայտնի է, թե ինչ նշանակություն էր տալիս Վ. Ի. Լենինը վիճակագրության ուսումնասիրմանը և ինչպիսի զայրույթով էր նա ծաղրում այն տնտեսագետներին, որոնք թերագնահատում էին այդ գիտությունը: Բայց այդ ժամանակվանից անցել են տասնամյակներ, և ժամանակակից մաթեմատիկական վիճակագրությունը զարգացել է: Այդ իսկ պատճառով պետք է միջոցներ ձեռք առնվեն վիճակագրական գիտությունը մեր երկրում պատշաճ բարձրության վրա դնելու համար: Մեր տնտեսական գիտությունը պետք է հիմնվի մաթեմատիկական վիճակագրության առաջնակարգ գիտա-հետազոտական ինստիտուտի աշխատանքի վրա:

Մեր տնտեսագետները քիչ և անբավարար են զբաղվում գիտության վրա կատարած ծախսումների տնտեսական արդյունավետության օբյեկտիվ որոշման խնդիրների լուծմամբ: Այդ պատճառով նրանք չեն կարող պատասխանել այն հարցին, թե Սովետական Միությանը ինչ է նստում վիճակագրական գիտության անբավարար վիճակը: Իսկ այդ պետք է անել:

Գյուղատնտեսական նախնական ինֆորմացիայի և նրա մշակման ցածր մակարդակի մասին վերևում արդեն ասվել է: Բայց արդյունաբերական ու գյուղատնտեսական վիճակագրության հետ մեկտեղ գոյություն ունի նաև կապի, տրանսպորտի, առևտրի, բժշկական, ֆինանսական և այլ վիճակագրություն:

Ինչպիսին է վիճակն այստեղ: Առանց մաթեմատիկական վիճակագրության տեսության զարգացման կիրառական վիճակագրությունը միշտ ետ կմնա ժողովրդական տնտեսության կառավարման պահանջներից և վիճակագրական ինֆորմացիայի վերամշակման ժամանակակից մեթոդներն ու միջոցները չեն կարող օգտագործվել:

**6.** Սոցիալիստական տնտեսության հիմքը պլանավորումն է: Այն հիմնվում է երկրի պահանջմունքների աճի տենդենցների ճիշտ հաշվառման վրա: Այդ պահանջմունքների բավարարումը պետք է ապահովվի ամենաարդյունավետ եղանակով: Պարտիայի Ծրագրում ասվում է. պլանավորման և տնտեսության ղեկավարման բոլոր օղակներում գլխավոր ուշադրությունը պետք է կենտրոնացվի նյութական, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսների, բնական հարստությունների առավել ռացիոնալ ու արդյունավետ օգտագործման և ավելորդ ծախքերի վերացման վրա, հասարակության շահերի նվազագույն ծախսերով առավելագույն արդյունքների հասնելու նպատակով: Ժողովրդական տնտեսության մասշտաբների աճումը, գիտության և տեխնիկայի արագ զարգացումը պահանջում են պլանավորման, հաշվառման վիճակագրության գիտական մակարդակի բարձրացում:

Կարո՞ղ է արդյոք կիբեռնետիկան օգնել այդքան կարևոր խնդիրների լուծմանը:

Ո՛չ միայն կարող է, այլ արդեն օգնում է, իսկ հետագայում էլեկտրոնային մեքենաների ավելի լայն օգտագործման դեպքում այդ օգնությունը կլինի *վճռական*: Հնարավորություն է բացվում կիբեռնետիկայի օգնությամբ ապահովել բազմաճյուղ ժողովրդական տնտեսության *օպտիմալ* (ամենաձեռնտու) պլանավորումը: Իրագործելի է դառնում ո՛չ թե էպիզոդիկ, միշտ ուշացող, այլ ընթացիկ, անընդհատ պլանավորումը:

Սովետական Միությունում մշակվել են, այսպես կոչված, գծային ծրագրման մաթեմատիկական մեթոդները, որոնք թույլ են տալիս մաթեմատիկական եղանակով գտնել պրոցեսի որակը բնորոշող որոշ փոփոխական մեծությունների օպտիմալ արժեքը: Հետագա զարգացում են ստացել դինամիկ ծրագրման մեթոդները (տե՛ս «*Техника молодежи*», № 9, 1961 թ.): Ավելի ու ավելի մեծ թվով տաղանդավոր երիտասարդ մաթեմատիկոսներ են ներգրավվում պլանավորման և ծրագրման մաթեմատիկացման պրոբլեմի գործում: Եվ դա միայն սկիզբն է: Լավ օրինակ կարող է ծառայել երիտասարդ մաթեմատիկոսների-տնտեսագետների կոլեկտիվի նորերս լույս տեսած «*Применение математики и электронной техники в планировании*» (*Госэкономиздат, 1961*) գիրքը: Ցանկալի է, որ նրա հետ ծանոթանան ոչ միայն տնտեսագետները: *Ես դիմում եմ բոլոր երիտասարդ մասնագետներին՝ ձեր գործունեության մեջ ավելի համարձակ օգտագործեք կիբեռնետիկայի վերաբերյալ գրականությունը, մասնավորապես էկոնոմիկայի բնագավառում*:

Անհրաժեշտ է մի քանի խոսք ասել այն մասին, թե ինչ վիճակումն է կապիտալ ներդրումների և նոր տեխնիկայի տնտեսական էֆեկտիվության գնահատման գործը: Այստեղ դրությունը միանգամայն բավարար է: Այդ բարդ գործում անհրաժեշտ է գիտականորեն հիմնավորված մոտեցում: Ցավն այն չէ, որ մեթոդիկաներ չկան, այլ ընդհակառակը, դրանք չափազանց շատ են և բոլորն էլ հիմնվում են տարբեր ելակետային սկզբունքների և դրույթների վրա: Մեր տնտեսագետները դեռ չեն ստեղծել ֆունդամենտալ, հիմնական փաստաթղթեր, որոնք մեր պլանային պետության մեջ պետք է լինեն անբերի, բոլորի համար պարտադիր և թույլ չտան ոչ մի կամայական մեկնաբանություն: Ներկայումս գործող մեթոդիկաներով ինչ ուզես կարող ես հիմնավորել: Կիբեռնետիկայի կիրառումը էկոնոմիկայում վերջ կտա դրան:

Մեր տնտեսագետները հիմնովին խճճել են գների կազմման հարցերը: Այժմ փորձեր են արվում այդ դրությունը օբյեկտիվ պատճառներով արդարացնելու: Շատ բարդ և մեծածավալ հաշվարկումների կատարման համար ժամանակակից մաթեմատիկական մեթոդների ու նոր

տեխնիկական միջոցների կիրառման անհրաժեշտության հենց թերագնահատումը հանգեցրեց այն դժվարություններին, որոնք այժմ բոլորի համար պարզ են: Որքա՞ն ժամանակ և ուժ կըպահանջվի, որպեսզի կարելի լինի ուղղել թույլ տրված սխալները: Ո՞վ է պատասխանատվություն կրում դրանց կուտակման համար: Տընտեսագետները: Պարտիայի նոր Ծրագրում պարզ ցուցումներ են տրվում գների սահմանման մեթոդների բարելավման գործում լուրջ գիտական աշխատանքներ տանելու համար: Կիբեռնետիկան այստեղ ևս կարող է էական օգնություն ցույց տալ:

**7.** Կիբեռնետիկայի կիրառման լայն բնագավառ է մարդու արտադրական գործունեությունը: Քանի որ ակներև է, որ տեխնիկական պրոգրեսըն ուղղված է աշխատանքի էֆեկտիվության բարձրացման նպատակին, տեխնիկայում և արտադրության մեջ կիբեռնետիկայի կիրառման դեմ քչերն են հանդես գալիս: Բայց այստեղ էլ դժվարություններ կան: Հետամնաց տեխնոլոգիայի համար կառավարման ժամանակակից բարձր էֆեկտիվության միջոցների կիրառումը միշտ չէ, որ իմաստ ունի: Երբեմն ձեռք է բերվում միայն թվացող պրոգրես, իսկ տնտեսական արդյունավետությունը խիստ աննշան է: Պետք է պատասխանատվության ենթարկել անբարեխիղճ մարդկանց, որոնք զբաղվում են «տեխնիկական աչքակապությամբ», երբեմն ապլոմբով ցանկալին հրամցնում են որպես իրական:

Ներկայումս մեր արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության մեջ, տրանսպորտում և աշխատանքային գործունեության մյուս բնագավառներում մեքենայացված է, կոպիտ ասած, աշխատանքների 50 տոկոսը, ընդ որում տարբեր ճյուղերում այդ թիվը տատանվում է բավական լայն սահմաններում՝ 20-ից մինչև 60 տոկոսի: Սովորաբար չեն մեքենայացվել, այսպես կոչված՝ «օժանդակ» աշխատանքները՝ բեռնման, բեռնաթափման, միջօպերացիոն, հումքի, կիսաֆաբրիկատների տեղափոխությունն ու մատուցումը և այլն: Գրեթե չի մեքենայացված նաև ներգործարանային գործավարությունը՝ հաշվառումը, վերահսկումը, մատակարարումը, աշխատավարձի հաշվարկումը, խոտանի հաշվառումը և այլն:

Ոմանք կարծում են, թե օժանդակ աշխատանքները քիչ կարևոր են և այնքան էլ աշխատատար չեն, ինչպես հիմնական արտադրությունը: Դա պատրանք է: Այդ կարող են պնդել միայն այն մարդիկ, որոնք արտադրությունը բոլորովին չգիտեն: Արտադրության մեջ չկան կարևոր և ոչ կարևոր աշխատանքներ: Կան միայն ավելի ճշգրիտ, ավելի շտապ, ավելի պատասխանատու, ավելի աշխատատար աշխատանքներ: Երբ հաստոցների բարձր արտադրողականության ավտոմատացված գիծը պարապուրդ է տալիս կազմակերպական անկապակցությունների պատճառով կամ ձեռքի չմեքենայացված աշխատանքով անհրաժեշտ առարկաների մատուցումը ձըգձգելու հետևանքով, դրանից տուժում է ամբողջ արտադրությունը:

Կյանքը կարող է ստիպել կոմպրոմիսի դիմել և փողերը ծախսել տեխնոլոգիայի ու սարքավորման մասնակի արդիականացման, հնացած տեխնիկայի մասնակի ավտոմատացման վրա: Բայց, որոշում ընդունելով, պետք է մանրազնին տընտեսական վերլուծություն կատարել. կարող է պատահել, որ առաջին հայացքից ավտոմատացումը նպատակահարմար լինի, բայց փորձարկման ժամանակ չի դիմանա ժամանակի ստուգմանը և կպահանջի անընդհատ ու խոշոր ծախսումներ շարքից դուրս եկած սարքավորումը նորոգելու և փոխարինելու համար: Դա կարևորագույն տնտեսական պրոբլեմ է, որը վերաբերում է կապիտալ ներդրումների արդյունավետության ոլորտին: Մեզ մոտ միշտ չէ, որ այն բավարար կերպով է լուծվում: Տնտեսական հաշվարկումների կիբեռնետիկական մեթոդները թույլ են տալիս լուծել առաջներում անիրագործելի թվացող խնդիրները՝ ճշտորեն որոշել կապիտալ ներդրումների արդյունավետությունը:

Արդյունաբերության մեջ ավտոմատացման ժամանակակից մեթոդների ու միջոցների կիրառման համար անհրաժեշտ է արտադրության յուրահատուկ մաթեմատիկացում: Անհրաժեշտ է մաթեմատիկոսներին լայնորեն ներգրավել արդյունաբերության մեջ: Պետք է պարզ լինի, որ երբ մաթեմատիկայի լեզվով չի արտահայտվել բարդ արտադրական սխեմի կառավարման հրամանների հաջորդականությունը, ապա կիբեռնետիկան օգնել չի կարող: Հաշվիչ և կառավարող էլեկտրոնային մեքենաները կարող են միայն հրամանների վերամշակել նրանց մեջ մատուցվող ինֆորմացիան: Իսկ կատարելագործել անպետք կամ սխալ ինֆորմացիան նրանք գործնականորեն չեն կարող:

Ճիշտ, էլեկտրոնային մեքենաները, երբ նրանք դրա համար հատուկ համարեցված են, կարող են որոշ չափով ուղղել մարդու թույլ տըրված սխալները, կարող են բացահայտել մի այնպիսի ինֆորմացիա, որը մարդու համար թաքնըված է հակասությունների, խանգարումների և աղմուկի մեջ, կարող են հրաժարվել սխալ հրամանի հաղորդումից: Մեքենաներին նույնիսկ կարելի է «սովորեցնել» արտադրություն կառավարել, և նրանք հայտնի չափանիշներով կմշակեն առանձին ագրեգատների աշխատանքի ավելի կատարյալ եղանակներ: Բայց այդ պրոբլեմները



վերաբերում են, երբ կարելի է այսպես արտահայտել, թող ների ինձ փիլիսոփաները, մեքենաների «հոգեբանությանը»:

Պետք է լրջորեն խոսել մեքենաների ուսուցման միանգամայն իրական և հաջողությամբ իրագործելի խնդրի մասին: Ավելին, ոչ մի կասկած չկա, որ էլեկտրական մեքենաների ուսուցման և ինքնուսուցման փորձի հիման վրա կվերանայվի մարդկանց, մասնավորապես երեխաների ուսուցման այժմյան սիստեմը: Դա ոչ ոքի չպետք է զարմացնի: Երեխաների ուսուցման մեթոդներում պրոգրեսի տեմպերը չափազանց դանդաղ են և այսօր քիչ են տարբերվում այն տեմպերից, որպիսիք կիրառվում էին հարյուրավոր, թերևս նաև հազարավոր տարիներ սրանից առաջ:

**8.** Ցավոք սրտի հարկ է ասել, որ դեռ բոլորովին վերջերս, 1955—1957 թվականներին և նույնիսկ ավելի ուշ, մեր գրականության մեջ թույլ են տրվել կոպիտ սխալներ կիբեռնետիկայի նշանակությունն ու հնարավորությունները գնահատելու գործում: Դա մեր երկրում լուրջ վընաս է հասցրել գիտության զարգացմանը, հանգեցրել է շատ տեսական դրույթների և նույնիսկ հենց էլեկտրոնային մեքենաների մշակման ձգձգմանը: Մեր օրերում, պարտիայի նոր Ծրագրի ընդունումից հետո, սովետական կիբեռնետիկան զարգանում է անող տեմպով:

Բացվում է էլեկտրոնային մեքենաների մշակման հնարավորությունը մեկ վայրկյանում մի քանի տասնյակ միլիոն օպերացիաների «արագագործությամբ»: Այդ մեքենաները օժտված կլինեն վիթխարի հիշողությամբ և զանազան բարդ խնդիրներ լուծելու ընդունակությամբ, որոնք հին մեքենաների ուժերից միանգամայն վեր են: Մենք կարող ենք թափանցել բնության այնպիսի պրոցեսների և երևույթների գաղտնիքների մեջ, որոնք առաջներում մարդկային իմացության հնարավորությունների սահմաններից դուրս էին ընկած:

Տեսական կիբեռնետիկան այսօր մոտենում է միանգամայն նոր մաթեմատիկական մեթոդների մշակմանը: Ինֆորմացիայի տեսությունը՝ կիբեռնետիկայի հիմունքը, որ մշակվել է հաղորդալարերով կամ ռադիոյով հաղորդագրությունների հաղորդման համեմատաբար պարզ պայմանների համար, կկիրառվի կենդանի բնության մեջ ինֆորմացիայի մշակման, պահպանման և հաղորդման համար: Կլուծվի ամենաբարդ տեխնիկական պրոբլեմը՝ էլեկտրոնային մեքենաների հուսալիությունը կմոտենա այն հուսալիությանը, որին հասել է բնությունը: Այստեղ ապահովվում է ամբողջ սիստեմի բարձր հուսալիությունը, չընայած առանձին տարրերի անհուսալիության:

Արտաքին չափերը, քաշը, մեքենաների համար անհրաժեշտ էլեկտրաէներգիայի քանակությունը շատ անգամ կպակասեն, նրանց արժեքը խիստ կնվազի: Տասը-քսան տարուց հետո էլեկտրոնային մեքենաների կիրառումը կդառնա նույնպես սովորական, ինչպես այսօր (ի ցավ մեզ) հին ռուսական հաշվիչների օգտագործումը: Մեր սերունդները դժվար թե հասկանան, թե ինչպես է մեզ հաջողվել առաջներում սովորական հաշվիչների օգնությամբ պլանավորել սոցիալիստական ժողովրդական տնտեսությունը:

Էլեկտրոնային դիագնոստիկական մեքենաները վստահորեն կդնեն դիագնոզը նույնիսկ անբավարար և հակասական ինֆորմացիայի (հատկանիշների) դեպքում: Փոխարինող ավտոմատացված օրգանների շնորհիվ կհեշտանան ամենաբարդ վիրահատությունները՝ ընդհուպ մինչև սրտինը: Իսկ սրտի հիվանդները իրենց մոտ կունենան սրտի պորտատիվ ստիմուլյատորներ: Նրանք կփոխարինեն նիտրոգլիցերինին, որն այսօր միշտ չէ, որ հաջողությամբ է կիրառվում:

Մրրիկները, պտտահողմերը, թայֆունները, կարկուտը և հեղեղները կկանխվեն հենց իրենց առաջացման սկզբում: Մարդկությունը, վերջապես, կազատվի որոշ անխուսափելի, դեռևս տարերային աղետների սարսափելի հետևանքներից:

Գյուղատնտեսությունը կդառնա մի արտադրություն, որը, ինչպես արդեն ասվել է, կազմակերպված է գիտական հիմքի վրա, կիրառելով մաթեմատիկան, կենսաբանության և քիմիայի նվաճումները, լավագույն կերպով օգտագործելով արեգակնային էներգիան և ջրային ռեսուրսները: Ամենամյա բարձր բերքը սովորական երևույթ կդառնա:

Կապահովվի ամենաբազմազան որակի մըթերքների առատությունը:

Աշխատանքը լիովին կավտոմատացվի և կըթեթևացվի: Տարբերությունը քաղաքի և գյուղի միջև կհարթվի, կանհետանա: Բայց այդ ամենը կկատարվի ոչ թե ինքն իրեն, այլ նպատակասլաց աշխատանքի շնորհիվ, մաթեմատիկայի, ֆիզիկայի, քիմիայի, էլեկտրոնիկայի, կիբեռնետիկայի բոլոր նվաճումներն օգտագործելու միջոցով:

Այդ բոլոր հեռանկարները իրավունք տալի՞ս են արդյոք ասելու, որ կիբեռնետիկան ձգտում է փոխարինել բոլոր գիտություններին և նույնիսկ... դիալեկտիկական մատերիալիզմին: Այսպիսի պնդումը ինձ շատ տարօրինակ է թվում: Ես վստահ եմ, որ կիբեռնետիկան, իսկ ապագայում նաև մարդկային աշխատանքի էֆեկտիվության բարձրացման բոլոր հզոր գիտական մեթոդներն ու միջոցները միշտ էլ ենթակա դեր կխաղան: Կիբեռնետիկան երբեք չի փոխարինի կենսաբանությանը, բայց կօգնի նրան ավելի

արագ զարգանալու: Ավելին, առանց կիբեռնետիկայի հնարավորություններն օգտագործելու կենսաբանության պրոգրեսը հնարավոր չէ: Դա վերաբերում է նաև մնացած բոլոր գիտություններին:

Մատերիալիստական փիլիսոփայությունը որևէ մաթեմատիկական գիտությամբ փոխարինելու հարցադրումը ընդհանրապես անիմաստ է: Որոշ վայ-փիլիսոփաներ զուր են փորձում անալոգիա անցկացնել իդեալիստական ֆիզիկոսների կողմից մաթեմատիկայի ֆետիշացման դեմ Վ. Ի. Լենինի հայտնի դրույթի հետ:

Որտե՞ղ են հնարավորի սահմանները գիտության մեջ և տեխնիկայում: Այդ ոչ ոք չի կարող որոշել: Քանի անգամ գիտության պատմության մեջ անհեռատես գիտնականները ինքնահանգստացման համար նախագուշակում էին հնարավորի սահմանները նորի և արտասովորի համար: Արդարացե՞լ են արդյոք այդ կանխագուշակումները: Երբեք երբեք: Ընդհակառակը, հաճախ ամենահամարձակ սպասումները գերակատարվում էին:

**9**. Մի քանի դիտողություններ այն հարցադրման մասին, թե մեքենան մտածո՞ւմ է արդյոք: Իմ կարծիքով այդ հարցը հետաքրքրություն չի ներկայացնում: Միտքն ու գիտությունը մարդու հասարակական ու աշխատանքային գործունեության արդյունք են: Բանը բոլորովին այն չէ, որ մարդու գլխուղեղում միլիարդավոր ներվային բջիջներ կան, իսկ մեքենայի մեջ՝ միայն հարյուր հազարավոր առանձին տարրեր: Ժամանակի ընթացքում տարբերությունը կարող է հաղթահարվել, թեև հնարավոր է, որ ապագայի մեքենայի համար գտնվեն միանգամայն նոր հատկություններ և դրանք ամենևին չեն պահանջի միլիարդավոր տարրեր: Բանը նաև այն չէ, որ ամեն մի մեքենա ստեղծվել է մարդու միջոցով և այդ պատճառով այն իր ստեղծողից անպայման «հիմար է»:

Մեքենայի, նույնիսկ ամենից ավելի «խելոքի» և մարդու միջև սկզբունքային տարբերությունը, նախ այն է, որ մարդու ստեղծած մեքենան ծնվելու օրից հնանում է, չի վերականգնվում: Նա մեռած է բառիս լիակատար իմաստով: Տասնամյակների ընթացքում մարդը և նրա ուղեղը անընդհատ վերականգնվում են, կենդանի բջիջներում անընդհատ տեղի է ունենում կյանքի գեներացիան՝ մեռածից կենդանի մատերիայի բստեղծումը: Միաժամանակ և նույնպիսի քանակությամբ անընդհատ տեղի է ունենում իր դարը (թերևս, մի քանի վայրկյան, օր կամ տարի) ապրած կենդանի մատերիայի դեգրադացիան և նրա դարձը դեպի մեռած մատերիայի վիճակը: Երկու պրոցեսն էլ փոխադարձ հավասարակշռված են և հատուկ են ամեն մի կենդանի բջջի, քանի նա կենդանի է: Մեռած մատերիան չի մտածում, թեև նա էլ կարող է իր կառուցվածքին և նրա տարրերի մեջ դրված ֆունկցիաներին համապատասխան մի շարք օպերացիաներ ավելի արագ, թերևս և ավելի լավ կատարել, քան մարդը: Բայց չէ որ աստղագիտական տելեսկոպը չի մտածում, երբ «մոտեցնում է» մեզ կոսմիկական մարմինները, գրանցում նրանց հատկությունները և կոորդինատները, դիտվող օբյեկտը «հիշողության մեջ պահում է» լուսանկարների վրա կամ կինոֆիլմերի միջոցով: Արիֆմոմետրը նույնպես չի մտածում: Բայց առանց այդ չմտածող, գիտության զարգացման համար անփոխարինելի սարքերի, պրոգրես հնարավոր չէ:

Երկրորդ, մեկ անգամ ևս, միտքը՝ դա հասարակական կյանքի արդյունք է: Մարդկանց հետ ունեցած շփումից մեկուսացված մարդը կորցնում է մտածելու ընդունակությունը, նա բթանում և խելքը կորցնում է: Խոսքը, իհարկե, լիակատար մեկուսացման մասին է: Առանց ծնողների հետ շփվելու երեխան երբեք չի սովորի մտածել, ինչպես մարդը, թեև նրա ուղեղում կան նույն միլիարդավոր նեյրոնները:

Մեքենային կարելի է շատ բան «սովորեցնել»: Այդ պետք է հիշել: Սակայն մեռած, անընդհատ հնացող և ժամանակի ընթացքում արժեքազրկվող մեքենայի ուսուցումը արմատապես տարբերվում է երեխայի ուսուցումից: Երեխայի ուղեղը կազմված է կենդանի բջիջներից, իսկ մեքենայի հիշողության տարրերը մեռած են:

Չնայած մարդկային ուղեղի և մեռած մեքենայի հիշողության միջև եղած այդ արմատական տարբերություններին, ես ոչ ոքի խորհուրդ չէի տա դնել էլեկտրոնային մեքենաների հնարավորությունների սահմանները:

Ես լավ կոմպոզիտորների կողմնակից եմ, բայց հիշում եմ, որ մոդեռնիստական կակաֆոնիաները նույնպես ստեղծել է մարդու «հանճարը»: Ես կարող եմ մեքենային արգելել, որ այդպիսի զզվելի բաներ ստեղծի: Ապագա կոմպոզիտոր-մեքենաները սկզբում կսովորեն աշխարհի լավագույն կոմպոզիտորների մոտ, իսկ հետագայում, թերևս, նրանց գերազանցեն:

Ասվածը, կարող է նաև ոմանց դուր չգալ: Բայց ի՞նչ արած: Չէ որ երբ հայտնվեցին առաջին մեքենաները, նույնպես խիստ շատ դժգոհներ կային: Նույնիսկ կոտրում էին մեքենաները: Բայց դժգոհները չկարողացան կանգնեցնել տեխնիկայի զարգացումը, արդյունաբերական ռևոլյուցիան: Ցավն, իհարկե, դրանում չէ: Արդյունաբերական ռևոլյուցիան ամրապնդեց ուժեղների իշխանությունը թույլերի վրա և առաջ բերեց սոսկալի հասարակական անարդարություն: Սոցիալիստական հասարակության մեջ զարգացման ուղին այլ է: Մեզ մոտ մարդը ղեկավարում է մեքենաներին, ելնելով ողջ հասարակության շահերից, և ոչ թե հարստության կուտակման, խաբեության և շահագործողների շահույթի համար: Ես հաստատ համոզված եմ, որ էլեկտրոնիկայի, այսինքն՝ կիբեռնետիկայի հետ միություն կազմած մաթեմատիկայի ժամանակակից և ապագա հնարավորությունների ամենալայն օգտագործումը մեր երկրում կոչված է ըզգալիորեն բարձրացնելու կոմունիզմի կառուցման տեմպերը:

Բոլորը, հատկապես երիտասարդությունը, պարտավոր են ուսումնասիրել կիբեռնետիկան, որպեսզի իրենց տրամադրության տակ ունենան աշխատանքի արդյունավետության բարձրացման նորագույն միջոցներ: Այդ ձևով մենք ամենից լավ կապահովենք պարտիայի XXII համագումարի ցուցումների կատարումը՝ գիտության լավագույն նվաճումները կոմունիստական հասարակության շինարարությանը ծառայեցնելու մասին:

---

**ՍՍՌՄ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ 1960-1980 Թ.Թ.**

ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԵՏԱՂԱՄՇԱԿՈՒԹՅԱՆ ԱՐՏԱԴՐԱՆՔԸ /ՄԻԼԻԱՐԴ ՌՈՒԲԼԻ/









# ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

## ՄԵՐ ԼՈՒԿԱՇԻ՛ՆԸ

Դոնի մարզի Կրիմ (Թոփդի) գյուղի մի տան առաջ ուրախ խաղում էին Սրապիոնյանների երեխաները: Սարգիսն այդ ժամանակ տասներկու տարեկան էր: Նա նոր էր ավարտել տեղի տարրական դպրոցը:

— Ձեր որդին պետք է շարունակի ուսումը,— ասել էր նրա ծնողներին ուսուցիչներից մեկը՝ շոյելով պատանու սևուկ վարսերը:

Պատանին սպասումով լի հայացքը հառել էր հոր՝ գյուղացի Լուկյանի արևախանձ դեմքին:

— Մեր մուրազն էլ դա է: Սարգիսս կսովորի, անպայման կսովորի, որ լավ, պիտանի մարդ դառնա:

Երկու ամիս անց Լուկյանը որդուն ուղարկեց Նոր Նախիջևան: Տասնութ տարեկան էր նա, երբ ավարտեց Նոր Նախիջևանի բեմական դպրոցը և մեկնեց Բաքու՝ գիմնազիայում սովորելու:



Բաքու... Սև քաղաք... Բիբի-Հեյբաթ... Նավթաշխարհի պրոլետարիատ: Անա բե որտեղ նա շփվեց կյանքի հետ, կապվեց պայքարի մարդկանց, լավ ծանոթացավ նրանց գոյավիճակին ու ազատաբաղձ հայացքներին: Բաքուն Լուկաշինի ռևոլյուցիոն տարրական դպրոցն էր: Գիմնազիստի համազգեստը չէր խանգարում նրան՝ մտերմանալու նավթոտ ու մրոտ, մաշված բզգեստներով բանվորներին: Ակտիվ մասնակցում էր աշակերտական ցույցերին, վտանգում կյանքը և ուսուցման գործը:

Անա Բիբի-Հեյբաթի հեռավոր տան մի անկյունը, ուր հավաքվել են բանվորներ, ուսանողներ:

— Մեր առջև մարտերի չտրորված արահետներ են՝ լի բազում դժվարություններով: Միշտ էլ դժվար է եղել նոր բան ստեղծելը: Իսկ մենք ստեղծում ենք նոր կյանք, և մեզ հետ է Ռուսաստանի ողջ պրոլետարիատը,— ոգևորված խոսում է ագիտատորը. ոչ մի բառ չի վրիպում ունկնդիրների լսողությունից: Պրոպագանդիստը բանվորների շրջանում արդեն լավ ճանաչված Սարգիս Սրապիոնյանն էր:

Ռուսական առաջին ռևոլյուցիայի ժամանակ նա Պետերբուրգում էր — համալսարանի իրավաբանական ֆակուլտետի, ապա՝ պոլիտեխնիկական ինստիտուտի ուսանող:

— Ռուսական ռևոլյուցիան խոր, հեղափոխիչ ազդեցություն գործեց ինձ վրա: 1906 թվականին ես ընդունվեցի բոլշևիկյան պարտիայի շարքերը: Այդ տարվանից ինձ համար ավելի քան պարզ դարձավ իմ կյանքի նպատակը, իմ գործելակերպը,— հիշում էր նա հետագայում:

Նա սիրում էր կյանքը. իր ողջ գիտելիքները, պրակտիկ ռևոլյուցիոների անսպառ եռանդը նվիրաբերում էր աշխատավոր մարդու երջանկության նվաճմանը: Մասնակցում էր Պետերբուրգում տեղի ունեցած ռևոլյուցիոն ելույթներին, վարում պրոպագանդիստական բուռն գործունեություն: Այդ ամենը, անշուշտ, չէր կարող վրիպել ցարական իշխանությունների ամենախույզ աչքից:

— Երկու անգամ ձերբակալվելուց հետո բռնիպված եղա թողնել Ռուսաստանը: Ինչե՞ր չէի տա ռեակցիայի այդ ծանր տարիներին իմ հայրենիքում լինելու, նրա ռևոլյուցիոն վերելքին ծառայելու համար,— Բեռլինի պուրակներից մեկում Հովսեփ Լազյանը լսեց այդ հայրենակարոտ երիտասարդի անհանգիստ սրտի մորմոքը:

1911 թվականին նա նորից Պետերբուրգում է: Որտեղ և ինչ էլ լիներ նա՝ ցարական բանակ զորակոչված սակրավոր զինվոր, թե այլուր, ամենուրեք կարելի էր լսել բոլշևիկ ագիտատորի մրրկաշունչ կոչերը:

— Զինվորնե՛ր բուրժուազիայի «հայրենասիրական» քարոզած լոզունգներին, դրանք ավելի շուտ հայրենադավ են: Իմպերիալիստների սանձազերծած պատերազմը ժողովրդասպան է:

Նրա շուրջն էին համախմբվում իր զորամասի զինվորները, զինվորագրվում այն գաղափարներին, որոնք այնպես մաչելի ձևով նրանց լուսաբանում էր բոլշևիկ Լուկաշինը:

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի բոցերում ավելի կոփվեց ռևոլյուցիոների կամքը ու դրսևորվեցին բազմակողմանի աշխատանքային ունակությունները: Քաղաքական պայքարի ու մարտերի փորձով իմաստնացած՝ նա անձկում էր անձնուրաց աշխատանքով մասնակցել նոր կյանքի կառուցման հրապուրիչ ու սրբազան գործին:

1918 թվական: Ռուսական հակառևոլյուցիան և համաշխարհային իմպերիալիզմը ձգտում էին խորտակել բանվորների ու գյուղացիների առաջին պետությունը: Դոնում ասպատակում էին Կալեդինի, Կրասնովի, Կոռնիլովի կոնտրռևոլյուցիոն բանդաները: Լուկաշինը ամռանը մեկնում է Դոն՝ այդ բանդաների ջախջախմանը մասնակցելու:

Մեկ տարի անց նա Մոսկվայում է՝ համառուսական Չեկայի հակառևոլյուցիայի դեմ պայքարող հետաքննչական բաժնի պետ և վերահսկիչ հանձնաժողովի անդամ: Անհրաժեշտ էր հայտաբերել ու ջախջախել թշնամու դավադրական ոռջերը: Այստեղ էլ նա ընտրվում է Մոսկվայի Սովետի դեպուտատ:

1921 թվականին Հայաստան է ուղարկվում Լուկաշինը: Ի՞նչ վիճակում կգտնի իր տանջահար և անկոտրում ժողովրդին: Երևանում էլ լենինյան արևն է ծառագել, ողջ ժողովուրդը լծվել է կենսատեղծ աշխատանքի:

Լուկաշինն ընտրվում է ՀԿ(բ)Պ Կենտկոմի առաջին քարտուղար և ժողովրդական տնտեսության խորհրդի նախագահ: Մեկ տարի անց նա ստանձնում է Հայկական ՍՍՌ ժողովրդական կոմիսարների Սովետի նախագահի պաշտոնը:

Անհրաժեշտ էր հանել երկիրն ավերակներից, փրկել ժողովրդին քաղցից, հիվանդություններից, կազմակերպել ղեկավար օրգանների արդյունավետ աշխատանք, միավորել պարտիականների ուժերը, կառավարող օրգանների գործունեության մեջ ներգրավել բանվորներին, գյուղացիներին, ինտելիգենցիային:

Հեշտ չէր կատարել այդ ամենը: Պակասում էր աշխատանքի փորձը պատանի պետության կառավարման գործում:

Ժողտնտխորհի նիստերում քննարկվում էին շինարարության, կուլտուրայի, աշխատանքի, տնտեսության ամենաբազմազան հարցեր: Նիստից շատ առաջ Լուկաշինը բազմակողմանի ուսումնասիրում, պարզում էր դրանց հետ կապված բոլոր խնդրոտների հաղթահարման միջոցները, հուզվում, զայրանում... բայց նիստերին նա միշտ հանգիստ էր, հավասարակշռված: Այստեղ ևս նա աչքի էր ընկնում պետական խոշոր մարդուն վայել նրբանկատությամբ, մարդկանց հանդեպ հարգալից վերաբերմունքով: Համբերությամբ ու տակտով նա շտկում էր սխալվողներին, օգնում նրանց՝ ժամանակին ճիշտ ճանապարհի վրա կանգնելու: Նրա՝ որպես ղեկավարի հմայքն այնքան մեծ էր, որ աշխատանքի բոլոր ընկերներն աշխատում էին հատկապես մարդկայնության օրինակ վերցնել նրանից, նրա նման շատ և ավելի լավ աշխատել, լինել սկզբունքային, ժողովրդին անձնուրաց ծառայել: Օգտվելով սեփական հմայքից, նա հանդես էր գալիս որպես մասսաների տաղանդավոր կազմակերպիչ ու հեղինակավոր դաստիարակ:

1922 թվականի ձմեռն էր, հունվարի 30-ը: Պետական թատրոնի շենքում բացվում էր Հայաստանի բանվորների, գյուղացիների և կարմիրբանակայինների դեպուտատների Սովետների անդրանիկ համագումարը: Նվագախմբի նվագակցությամբ դահլիճով մեկ հնչում է աշխարհի կոմունիստների հիմնը՝ «Ինտերնացիոնալը»:

Կարդացվում են բազմաթիվ շնորհավորական և ողջույնի հեռագրեր. ջերմ ցանկություններ ու հաջողության բազում մաղթանքներ կան այդ փոքրիկ հեռագրաթերթիկներում:

Ամբիոնի մոտ է Կոմունիստական պարտիայի ականավոր գործիչ Սերգո Օրջոնիկիձեն:

— Անդրկովկասյան Երկրային Կոմիտեի և Վրաստանի աշխատավորության անսահման սերն ու ջերմագին ողջույնն եմ բերել մեր դարավոր բարեկամ հայ ժողովրդին:

Համագումարի մասնակիցների բուռն ծափա-

հարությունների տակ նախագահության սեղանի մոտ իր տեղն է գրավում Սերգոն, մե՛ր Սերգոն, ինչպես ասում էին ամենքը՝ և՛ հայերը, և՛ վրացիները, և՛ ադրբեջանցիներն ու ռուսները:

Հինգերորդ նիստում տնտեսական նոր քաղաքականության մասին ելույթ ունեցավ Լուկաշինը: Միջահասակ էր նա, թիկնեղ, սև մազերով, խիտ հոնքերի տակ ծվարած խորաթափանց աչքերով, ազդու, թավ ձայնով: Բազմակողմանիորեն վերլուծելով այն պայմաններն ու հանգամանքները, որոնց բերումով Սովետական իշխանությունն անցել է այդ քաղաքականությանը՝ նա ասաց, որ կիրառելով նոր տնտեսական քաղաքականությունը՝ Սովետական իշխանությունը կկարողանա հաջողությամբ ստեղծել նոր, սոցիալիստական տնտեսություն:

***

Ամենուր կառուցման կարոտ վայրեր են, պապակ հողեր ու դաշտեր: Շիրակի դաշտերը տոչորվում են. մեր հեքիաթների՝ ամեն օր աղջիկ պահանջող ավանդական հրեշը դեռ նստել է ջրի ակունքին: «Ջո՞ւր»,— սկսվում են թզաչափ բարձրացած հասկերը... «Ջո՞ւր»— ծարավից հևում է կորդացած հողը:

Ժողկոմխորհի նախագահն ուրախությունից շողարձակ աչքերով կարդում է իրեն հասցեագրված հեռագիրը: Ալեքպոլի ջրանցքի կառուցման ղեկավարը՝ Արամ Տահզելդյանն է ստորագրել. սկսված է Շիրակի ջրանցքի և էլեկտրակայանի կառուցումը:

— Սկսվե՜ց: Աշխատավորների քրտինքից ակիզբ առած Շիր-Կանալի փրփրաբաշ ալիքները կոռոգեն հնամենի Շիրակի արգասաբեր հողերը: Հիդրոկայանից կհորդեն ջերմությունն ու լույսը: Այդ էներգիայով կբանեն մեր նորակառույց գործարաններն ու ֆաբրիկաները:

Լուկաշինն ուրախանում էր, ինչպես իր անդրանիկ կառույցն ավարտելիս շինարարն է հրճվում:

Բուռն ոգևորությունից ծնված ողջույնի ջերմ հեռագիր է հղվում Շիր-Կանալի կառուցողներին:

Սկսվել էր ծավալուն սոցիալիստական շինարարությունը. կառուցվում էր Երևանը. պետք էին ինժեներներ, շինարարներ, քաղաքը և քաղաքաշինարարությունը սիրող արվեստագետ-ճարտարապետներ:

1923 թվականին Լուկաշինի հրավերով Թավրիզից Երևան է գալիս մեր մայրաքաղաքի ամենաջերմ սիրահարը՝ Ալեքսանդր Թամանյանը:

Լուկաշինի հանձնարարությամբ նա ուսումնասիրում է ճարտարապետական շինարարական գործը Հայաստանում և ներկայացնում զեկուցագիր. «Այն ամենը, ինչ կառուցվել է Հայաստանի տերիտորիայի վրա, բխել է ոչ այնքան Հայաստանի կարիքներից, որքան նրանից դուրս եղած պատճառներից: Ամենուրեք զգացվում է լիակատար արհամարհանք ժողովրդի շահերի ու ազգային կուլտուրայի հանդեպ: Այն ամենի վրա, ինչ արված է, դրված է վհատության և գավառական հետամնացության կնիքը». սրտի ցավով գրում է նա և առաջարկում.

— Անհրաժեշտ է պետական մասշտաբով շինարարություն, կազմակերպված, պլանաչափ և կուլտուրայի ու տեխնիկայի նորագույն պահանջների վրա հիմնված:

Այդ գործին ձեռնամուխ եղավ Լուկաշինը: Ժողկոմխորհին կից ստեղծվեց գերագույն տեխնիկական բաժին, որի վարիչ նշանակվեց Թամանյանը:

Ա. Թամանյանը, Հ. Տեր-Աստվածատրյանը, երկրաբան Հովհաննես Կարապետյանը, ջրաշինարարական կառուցումների ինժեներ Գ. Շիրմազանյանը և ուրիշներ հաճախ էին լինում Լուկաշինի մոտ, խորհրդակցում ու ծրագրում. ամեն ինչում զգում էին նրա խորհուրդների կարևորությունը, նրա ղեկավար մտքի ուժը:

Լուսժողկոմատը որոշեց ավարտել նախկին գիմնազիայի շենքի կառուցումը: Աշխատանքները նախատեսվածից ընդարձակվեցին, ծախսերն ավելացան: Անհրաժեշտ էին նոր ֆինանսական միջոցներ:

— Ես կգնամ Լուկաշինի մոտ, կաշխատեմ համաձայնեցնել,— ասաց Թամանյանը:

Կիրակի էր: Թամանյանը Լուկաշինի մոտ էր. զրուցում էին, ուրախ կատակում, պատկերացնում Հայաստանը մի տասը տարի հետո: Եվ հանկարծ՝

— Սերգեյ Լուկյանի՛չ, գնանք, տեսեք թե ինչպես է բարձրանում մեր այս վերջին կառույցը: Կարծում եմ՝ դահլիճը ձեզ դուր կգա,— առաջարկեց Թամանյանը:

Լուկաշինը հանկարծակիի եկավ. կիրակի էր, իսկ այնտեղ աշխատանքը եռում էր: Դահլիճի նորոգ տեսքով հիացած՝ Լուկաշինը հարցրեց.

— Ինչպե՞ս և ի՞նչ միջոցներով են կատարվում այս աշխատանքները:

— Սպասում ենք այն միջոցներին ու կարգադրություններին, որ կտա այսօր մեր ժողկոմխորհի նախագահը,— պատասխանեց Գրիգոր Շիրմազանյանը:

Լուկաշինը ժպտաց, գոհունակությամբ դիտեց դահլիճը, ջերմորեն բռնեց Թամանյանի թևը, ապա դառնալով իր շուրջը խմբված կառուցող բանվորներին, որոնցից շատերին նա հականե հանվանե գիտեր, ասաց.

— Թեև այս աշխատանքներն առանց ձևակերպման կատարող և հովանավորող Թամանյանն արժանի է հանդիմանության, այնուամենայնիվ, կատարված է լավ և շնորհակալ գործ, — և դառնալով Թամանյանին,— պետք է միայն կազմել և ժողտնտխորհին ներկայացնել կիսատ մնացած աշխատանքների և կահավորման նախահաշիվը:

Այդպես կառուցվեց Երևանի կուլտուրայի տան դահլիճը, որը երկար տարիներ նրա միակ հանդիսասրահն էր:

Ավարտվել էր Շիր-Կանալի կառուցումը: Լուկաշինն իր առանձնասենյակում կարդում էր.

«Շիր-Կանալը փրփուր խասով շէր-առյուծ
է, բաշը՝ լուսին.
Լույս թևերի փաղաքշանքով պիտի ցանցի
ողջ գյուղերին,
Եվ դինամոն կայծակ-փնջով այրի նիրհը
մութ հյուղերի».

Առավոտ էր: Նա կարդացել էր օրվա թերթերը, մտախոհ մոտեցել լուսամուտին ու աչքերի մեջ առել քաղաքը: Բարձրացող շենքերի ամեն մի քարը, կառուցվող գործարանները, դպրոցներն ու նորաբաց փողոցները խայտանքով էին լցնում նրա սիրտը: Հանկարծ դիմացի նեղ փողոցից դուրս է գալիս հնոտիածածկ մի կույր մուրացկան ու ձեռքը պարզած կանգնում անցորդաշատ մի տեղ: Մռայլվում է Լուկաշինի հայացքը, ցավից կծկվում է սիրտը. միջամատի և կտրված ցուցամատի արանքում ծխում է ծխամորճը: «Դեռ կան, դեռ մնում են»,— մորմոքով մտածում է նա ու հիշում այդ օրերի ամենասարամիտ երգիծաբանի խոսքերը. «Մեզ մոտ բնական արատը կապիտալ չէ, ու ոչ ոք թող չմտածի իր խեղված անդամները վաճառքի հանել»:

Արագ քայլերով նա մոտենում է գրասեղանին ու աչքի անցկացնում «Խորհրդային Հայաստանի» մի քանի համարները:

— Չկա, այստեղ էլ չկա:

Հաջորդ օրը Լեռ Կամսարը նրա մոտ էր:

— Այս ի՞նչ է, ձեզ արդեն քիչ ենք հանդիպում: Ձեր խարազանը միշտ պետք է շաչի այն ամենի վրա, ինչ խանգարում է նորի զարգացմանը: Մենք դեռ շատ թերություններ ունենք. սուր աչք և սուր լեզու է պետք:

— Դե, ես և երկնում եմ, և ծնում, ծնունդս չեն ընդուներ, չեն հավներ, ընկեր Լուկաշին, կըսեն ամեն գրածդ չենք տպեր:

— Հա՜, հա՜, հա՜,— սրտաբուխ ծիծաղը լցրեց սենյակը,— դա արգելք չէ, որևէ բան ունե՞ք մոտներդ:

Լեռ Կամսարը նրան մեկնեց մի քանի ձեռագիր էջեր:

— Շիրակի բացմանը գնալիս մեզ ընկերացավ թերևակի «քայքայված» դաշնակցական մը: Դուք միայն սա «Դեպի Շիրակի ջրանցքը» համփուն նոթիս վերջին տողերը կարդացեք:

Լուկաշինը վերցրեց այն ու՝

— «Կառավարությունը երկու տարվա մեջ ծակեց սա հսկա սարը, այդ ոչինչ, բայց ես հինգ տարի ժամանակ կուտամ կառավարությանը և վեց միլիոն բյուջե, եթե սա անծանոթ պզտիկ մարդուն քար գլուխը ծակե...»,— կարդաց, ապա մտախոհ ավելացրեց,— ծիծաղի հետ տխրություն եք բերում: Դուք ճիշտ եք. դժվարին գաղափարական պայքար պետք է մղել այդ քարգլուխներից ազատվելու համար:

Մեկ ժամ անց նրա մոտ էր «Խորհրդային Հայաստանի» խմբագիր Ա. Մռավյանը:

— Լավ չէ, լավ չէ, որ մենք գաղափարական պայքարի այս սուր զենքը զլանում ենք գործածել,— և ֆելիետոնները մեկնեց Մռավյանին:

— Կամսարի՞նն են,— ակնոցներն ուղղելով հարցրեց Մռավյանը,— լա՛վ, կընտրենք, կըտպենք:

— Անհրաժեշտ է տպագրել բոլորը. հաջող են: Չե՞ք տեսնում, որ թերթի ընթերցողները խիստ զգում են դրա կարիքը: Գրական այդ ժանրը պետք է զարգացնել:

Եվ մի քանի օր անց «Խորհրդային Հայաստանում» լույս տեսան Լեռ Կամսարի ֆելիետոնները: Մինչև այսօր էլ մեր տաղանդավոր երգիծաբանը սրտի մորմոքով է հիշում սովետահայ գրականության ջերմ բարեկամին՝ Լուկաշինին:

Այդպես էր նա՝ հուժկու խելքով և քաղաքական սրատեսությամբ ու բազմակողմանի դիտողականությամբ, օժտված արտակարգ աշխատունակությամբ ու եռանդով:

Այդ ամենի հետ մեկտեղ պարզ էր նա, գեղջուկի պես պարզ, անչար ու ամենքին մատչելի, ընկերասեր և կատարյալ հումանիստ: Նրա ժամանակակիցները և աշխատանքի ընկերները պրպտում են, պրպտում իրենց հուշերի ծովում և ոչ մի բացասական գիծ չեն կարողանում հիշել: Ֆիզիկապես խիստ առնական և ուժեղ այդ մարմնի մեջ զգայուն ու փխրուն մի սիրտ էր բաբախում. մանկան պես հուզվող, ժողովրդի ուրախություններով հրճվող, տխրություններով թախծող:

«Պատահում էր՝ հավաքվում էինք մենք ու մեկիս տանը, զրուցում, կատակում, վիճում, երբեմն էլ բանը հասնում էր «զոտեմարտի». Սարգիսը կարող էր մի քանի հոգու միանգամից զգետնել,— պատմում է Ա. Գ. Հովհաննիսյանը: — Հաճախ կինո էինք գնում, և երբ ցուցադրվում էր որևէ զգայացունց նկար, շուտով նա վերանում էր, ամբողջովին տարվում, ապրում դրանով. տեսնում էինք՝ ինչ-որ անհանգիստ է:

— Ի՞նչ եղավ քեզ, Սարգի՛ս,— հարցնում էի ես և մնում անպատասխան:

Զինվորական մոխրագույն շինելի գրպանից Լուկաշինը հանել էր թաշկինակը և սրբում էր

արտասրալից աչքերը»:

Մի թերություն ուներ նա— չէր սիրում գրել: Այդ է պատճառը, որ այսօր, տասնյակ տարիներ անց, դժվար է վերհիշել, ծանոթանալ նրա բեղուն մտքի բոլոր խոյանքներին, որոնց խոսուն վկաներն են Հայաստանի բազում կառույցները, հիդրոկայանները, այն օրերի ոռոգման սիստեմը և արդյունաբերական ձեռնարկություններ ստեղծելու նրա բուռն մտահղացումներն ու նախագծումները:

Լուկաշինն առանձին ջերմությամբ ու հոգատարությամբ էր վերաբերվում նոր սերնդի դաստիարակության գործին, հաճախ էր լինում դպրոցներում և այլ ուսումնական հաստատություններում, մոտ էր կանգնած երիտասարդության կոմունիստական շարժմանը: Նրան շատ հաճախ կարելի էր տեսնել շրջապատված դպրոցական պատանիներով ու աղջիկներով. «Երեխաների հետ այդ փորձառու մարդը, ասես թե, մանկանում էր, գտնում նրանց սրտի ամենակարճ ճամփան, զրուցում, ոգևորում, թև էր տալիս նրանց մատաղ հոգիներին», հիշում են ժամանակակիցները: Այդ բազմազբաղ մարդը ժամանակ էր գտնում ներկա լինելու պատկոմական կազմակերպության տարեդարձի հանդեսին, անձամբ զրուցելու այդ շարժման ղեկավարների հետ, շոյելու պատանիների գանգուրները:

Ամառ էր, տեղատարափ անձրև... Գժվել էր Գետառչայը, հեղեղել Երևանի փողոցները:

Սև ձին քեծած, սրարշավ աղետի ամենավտանգավոր տեղն էր սլանում Լուկաշինը՝ մի խումբ երիտասարդների հետ:

— Տղանե՛ր, այստե՛ղ հասեք, պետք է փրկել այն ծերունիներին,— գոչեց նա:

Եվ հանկարծ տներից մեկից նա լսեց մանկական ճիչ: Օգնություն էին կանչում երկու մանկահասակ երեխաներ:

Ձին սլացավ դեպի այդ տունը: Լուկաշինը ցատկեց ձիուց, ջուրը ծածկեց երկարաճիտ կոշիկները, բարձրացավ ծնկներից էլ վեր: Մեծ դժվարությամբ նա բացեց դուռը և շուտով դուրս եկավ՝ երկու փոքրիկներին ամուր գրկած:

Այդպես ամենուրեք նա հասնում, օգնում էր մարդկանց: Մեր մատաղ սերնդի երջանկությունն ու ապահովությունը նրա մշտական մտահոգության առարկան էին:

Ժողկոմխորհի նիստ էր. մասնակցում էին և մի շարք մասնագետներ՝ Ալ. Թամանյանը, Հ. Տեր-Աստվածատրյանը, Ա. Գասպարյանը, Գ. Շիրմազանյանը և ուրիշներ: Շուտով շահագործման էր հանձնվելու առաջին Երգէսը:

— Հայաստանն այնքան կզարգանա, որ մի քանի տարի հետո մեր նիստի օրակարգը՝ այդ էներգիայի սպառող գտնելու հարցը, ծիծաղելի կթվա. բայց այժմ Երևանը չի կարող սպառել այդքան էներգիա,—ասում էր Ալ. Թամանյանը:

— Ես գիտեի, ես սպասում էի այս օրվան, ասաց հեռատես տնտեսավարը,— և Մոսկվայի ու Լենինգրադի էլեկտրատեխնիկներին պատվիրել էի Արաքսի ջրանցքի և Այղր լճի ջրհան կայանի կառուցման նախագծեր կազմել Արտաշատի և Էջմիածնի հողերը ոռոգելու համար,— և գրասեղանի դարակից հանելով մի քանի նախագծեր, հանձնեց մասնագետներին՝ ծանոթանալու:

— Անմիջապես պետք է ձեռնարկել Այղր լճի ջրհան կայանի կառուցմանը,— և դառնալով Շիրմազանյանին,— ձեզ վրա է դրվում կառուցման աշխատանքների ղեկավարությունը,— ասաց Լուկաշինը:

Նիստը վերջացավ: Երբ բոլորը դուրս էին եկել, նա հիշեց, ինչպես տարիներ առաջ Վերին Ջեյվայի գյուղացիների ուղեկցությամբ ձիով շրջել, ուսումնասիրել էր Այղր լիճը, այդ ջրամբարի շրջակայքի նահիճները, ծարավից տոչորվող արտերը և խիստ մտահոգվել: Այն ժամանակ նա իր մտահղացումը հայտնել էր իրեն ուղեկցող գյուղացիներին:

— Միայն ջրհան կայանը կփրկի ձեր արտերը:

— Այստեղ մի լավ սառնորակ ջրի ակունք էլ կա, այ թե այդ ջուրը հասներ մեզ... մեր խմելու ջուրն էլ բանի նման չէ,— զանգատվել էր գյուղացիներից մեկը:

— Այդ էլ կլինի, ձե՛ր օգնությամբ, ձե՛ր մասնակցությամբ:

Այժմ արդեն կատարում էր այդ պարզ, ջանասեր ու ջրասեր գեղջուկներին տված իր խոստումը:

— Հայաստանը հարուստ է տեքստիլ արդյունաբերության հումքի պաշարներով: Անհրաժեշտ է մեր քաղաքներից մեկում հիմնել տեքստիլ գործարան,— առաջինը զրույցն սկսեց Լուկաշինը:

Իվանովո-Վոզնեսենսկից Երևան էր ժամանել տեքստիլ արդյունաբերության մի խոշոր մասնագետ: Լուկաշինի, Թամանյանի և Հմայակ Մելիք-Ադամիրյանի հանդիպումն էր այդ մասնագետի հետ:

Լուկաշինի առաջարկով տեքստիլ կոմբինատի հիմքը դրվեց Լենինականում:

Նա անմիջականորեն մասնակցել է Երևանի ձեթ-օճառ գործարանի կառուցմանը: Խոշոր է Լուկաշինի դերը այդ տարիների սովետահայ ստեղծագործ շինարարության մեջ: Անգնահատելի աշխատանք է կատարել նա նաև ռեսպուբլիկայի ջրաշինարարության, այն էլեկտրաէներգիայով ապահովելու բնագավառում:



Լուկաշինը օժտված էր նախաձեռնող մտքով և որպես բացառիկ տնտեսավար, բազմակողմանի իրազեկ էր ու գործիմաց, շրջապատված էր այնպիսի ընկերներով, որոնք նույնպես լավ գիտեին երկիրը, նրա ընդերքը, գիտեին որտե՛ղ ի՛նչ կարելի է կառուցել, որտեղից ի՛նչ կարելի է ստանալ: Նրա մոտ հաճախ կարելի էր տեսնել գյուղատնտես Ստ. Կամսարականին, երկրաբան Կարապետյանին և ուրիշների: Նա հինգ մատի պես գիտեր ո՛չ միայն Հայաստանը, այլև Անդրկովկասը, մեր Միությունը: Շատ անհանգիստ բնավորություն ուներ. սկսած գործը երբեք կիսատ չէր թողնի: Նա առանձին հանույքով և կառուցման տենչով էր լինում Հայաստանի գյուղերում:

Հայաստանի Կենտրոնական Գործադիր կոմիտեի 4-րդ գումարման 2-րդ հերթական սեսիայի նիստն է: Ամբիոնի մոտ է Լուկաշինը: Նա խոսում է գյուղատնտեսության զարգացման ուղիների ու հեռանկարների մասին:

—Նոր տնտեսական քաղաքականության պայմաններում ունևոր գյուղացուն որոշ ազատություն է տրվում, և, որպեսզի կուլակը չնստի միջակի և չքավորի վզին, անհրաժեշտ է կազմակերպել կոոպերացիա. կոոպերացիան կուլակության դեմ պայքարելու լավագույն միջոցը կլինի. դրա շնորհիվ էլ պայմաններ կստեղծվեն սոցիալիզմի, գյուղում արտադրական համայնական կարգեր ստեղծելու համար:— Նա խոսում է և ջրաշինարարական աշխատանքների, կառուցող օրգանների աշխատողների պարտաճանաչության և այլնի մասին:

Նիստի մասնակիցները, ասես թե մի պահ ուզում են առարկել իրենց լսածին՝ Գործադիր կոմիտեի նախագահության անդամ Ե. Բակունցի հայտարարությանը.

—Ընկեր Լուկաշինը տեղափոխվում է Թիֆլիս, Անդրկովկասյան ռեսպուբլիկաների Պետպլանի նախագահի պաշտոնով:

—Դժվար է, իհարկե, զրկվել ընկեր Լուկաշինի հմուտ ու եռանդուն ղեկավարությունից, որն ընդգրկում է ո՛չ միայն Սովետական Հայաստանի պետական ապարատը, այլև մեր աշխատանքի բոլոր բնագավառները: Սոցիալիզմի շինարարության ամբողջ աշխատանքը սերտորեն կապված է նրա անվան հետ: Եթե ընկեր Մյասնիկյանը հաշող մարմնավորում է սովետական նոր պետականության գաղափարը, ապա ընկեր Լուկաշինը մնում է իբրև սոցիալիստական տընտեսավարության խոշորագույն գործիչ: Արդյունաբերություն, գյուղատնտեսություն, էլեկտրիֆիկացիա, ոռոգում, կոոպերացում, պետական առևտուր— ահա նրա աշխատանքային գործունեության բարդ ոլորտները,— հրաժեշտի իր խոսքն է ավարտում Աշոտ Հովհաննիսյանը:

Լուկաշինի հուզմունքը համակել է նիստի մասնակիցներին:

Հրաժեշտի նիստ. որքա՜ն ասելիքներ, լավագույն ցանկություններ ունեն մաղթելու ամենքն էլ, խոսելու նրա շնորհակալ աշխատանքի, խոր գործիմացության, մարդկանց նկատմամբ ցուցաբերած ջերմ հոգատարության մասին: Շատերն են ուզում նշել նրա նախաձեռնությամբ ու անմիջական ղեկավարությամբ սկսված, բայց դեռ չավարտված նորակառույցների խոշոր նշանակությունը: Ոչ ոք չի կասկածում, որ հազարավոր կառուցողները կհիշեն իրենց գործերով ապրող ղեկավարին:

Բայց անհնար է մի քանի խոսքով գնահատել նրա բազմաբովանդակ աշխատանքը:

Համեստությունից ու հուզմունքից շիկնել է ժողկոմխորհի 41-ամյա նախագահի դեմքը: Իր խորապափանց հայացքով ընդգրկելով ողջ դահլիճը, ներկաներին ասես թե հասկացնելով, որ ինքը լավ է ըմբռնում այն, ինչով համակված են նրանց սրտերը, Լուկաշինը հրաժեշտի խոսք է ասում.

— Այն ամենը, ինչ կառուցվել է մեզ մոտ երեքից չորս տարվա ընթացքում, կատարել են բանվորներն ու գյուղացիները՝ Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ: Սակայն դա պետք է կրկնապատկվի: Մենք գիտենք, որ մեր ճանապարհը վարդերով չի պատած: Մենք ընթանում ենք պայքարի ուղիներով, պատրաստ հաղթահարելու ամեն մի դժվարություն: Հարատև պետք է լինի մեր ժողովուրդների եղբայրական կապը. այդ է ամեն մի ժողովրդի առաջադիմության, զարգացման երաշխիքը:

Ձեզ հետ աշխատա՛ծ, ձեզնից սովորա՛ծ, ես գնում եմ ծառայելու այդ մեծ գործին:

Գիշերվա ժամը 11-ն էր, երբ նիստը վերջացավ:

Բաժանվելով ընկերներից՝ նա իր հաստատ քայլերն ուղղեց դեպի տուն: Խոհերի ծփանքը սրտում, նա քայլում էր ու վերհիշում իր՝ դառնություններով ու քաղցրություններով լի կյանքը:

Լուկաշինը խիստ մտահոգվում էր իր աշխարհասփյուռ հայրենակիցների վիճակով: 1925 թվականի հունիսի վերջերն էին: Ազգերի լիգային կից Աշխատանքի միջազգային բյուրոյի հանձնարարությամբ Երևան ժամանեց հանձնաժողով՝ դոկտոր Ֆրիտիոֆ Նանսենի նախագահությամբ: Հայաստանի Սովետական կառավարության հետ մեկտեղ քննարկվեց Հունաստանում, Սիրիայում և այլ վայրերում ապաստանած հայերին Հայաստան տեղափոխելու հարցը. ուսումնասիրվեցին ներգաղթի հնարավորություններն ու պայմանները:

Հուլիսի 5-ն է: Լուկաշինը և Սանակ Տեր-Գաբրիելյանը մտահոգ խոսում են ներգաղթ կազմակերպելու մասին. արդեն սկսվել են անմշակ, խոպան հողերի ոռոգման աշխատանքները, ուր բնակեցվելու են հայրենադարձները: Սովետական Հայաստանը պատրաստվեց իր հարկի տակ ընդունելու տասներկու հազար հայեր: Այս մասին Լուկաշինը և Սանակ Տեր-Գաբրիելյանը հեռագրեցին Նանսենին:

1927 թվական, Թիֆլիս: ՀամԿ(բ)Պ Անդրկովկասյան Երկրային Կոմիտեի և Անդրկովկասյան վերստուգիչ հանձնաժողովի միացյալ պլենումի առաջին նիստն է:

—Մենք կառուցում ենք նոր գործարաններ, ձեռնարկություններ. օդ ու ջրի պես մեզ անհրաժեշտ են ինժեներներ, շինարարության վարպետներ, բանիմաց աշխատողներ: Մեր ուսումնական հաստատությունները շատ անելիքներ ունեն այս գործում,— խոսում է պարտիական ու տնտեսական տաղանդավոր ղեկավար Լուկաշինը:

Անդրադառնալով շինարարության պլանայնության խնդրին՝ նա ասում է.

—Երբ մենք շարունակենք աշխատել անսիստեմ, առանց փորձի փոխանակության, առանց հաշվարկի, ապա մենք ոչինչ չենք սովորի շինարարության մեջ: Հօդս կցնդի այն ողջ լավագույն փորձը, որ ձեռք է բերվել այս ամբողջ ժամանակաշրջանում: Մեր կառուցումները կըթանան դանդաղ և թանկ կնստեն:

Ընդամենը երկու տարի է, ինչ նա աշխատում է Թիֆլիսում: Այնտեղ նա եղել է Բանգյուղտեսչության ժողովրդական կոմիսար, Տնտեսական խորհրդի նախագահ, Անդրժողկոմխորհի նախագահի տեղակալ. ամենուրեք, երկրի ինդուստրացման խիստ կարևոր գործում նա ներդրել է իր ողջ եռանդը, աշխատանքի հարուստ փորձը:

Անդրերկրկոմում քննարկվում էր Մուղանի դաշտի ոռոգման պրոբլեմը: Զեկուցումից հետո սկսվեց մտքերի աշխույժ փոխանակություն. ելույթ ունեցան Բունիաթ Զադեն, Սերգեյ Բաղդատյանը, Շալվա Էլիավան և շատ տնտեսավարներ, ինժեներներ, ջրային տնտեսության մասնագետներ:

—Դե, Սարգի՛ս, ի՞նչ է քո կարծիքը այս հարցի կապակցությամբ,— դառնալով Լուկաշինին, հարցրեց նախագահողը՝ Սերգո Օրջոնիկիձեն:

Սարգիսը հանգամանորեն, պարզ ու մատչելի բանաձևում է իր կարծիքը:

—Ընկերնե՛ր. Սարգսի ձևակերպումները, կարծեք թե ճիշտ են, ի՞նչ կարծիքի եք. առարկություններ չկա՞ն,— և դիմելով Լուկաշինին,— դե՛, թելադրիր, թող քարտուղարը գրի որոշումը:

Եվ այսպես լինում էր հաճախ: Լուկաշինի Մոսկվա տեղափոխվելուց հետո էլ շատ հաճախ էր Օրջոնիկիձեն կապվում նրա հետ, խորհրդակցում, դիմում այդ բացառիկ խոշոր տնտեսավարի խորհուրդներին:

Հմուտ պարտիական և տնտեսական ղեկավար գործիչը, զգայուն ընկերն ու ղեկավարը 1927 թվականին ուղարկվում է Մոսկվա, որտեղ ևս պատասխանատու աշխատանք է կատարում ՍՍՌՄ Ժողկոմխորհում և, հատկապես, Պետպլանի սիստեմում: Միութենական մասշտաբի պետական ղեկավար աշխատողին ամենուրեք ուղեկցում են իր աշխատանքի ընկերների մեծ վստահությունը, սերն ու հարգանքը:

1937 թվականին տնտեսական գերազանց աշխատանքի համար Լուկաշինը պարգևատրվում է Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով: Նա ընտրվել է ՍՄԿՊ մի քանի համագումարների դելեգատ, պարբերաբար ընտրվել Անդրերկրկոմի, ՍՍՌՄ Կենտրոնական Գործադիր Կոմիտեի, ՀՍԽՀ Կենտրոնական Գործադիր կոմիտեի, ՀԿՊ Կենտկոմի անդամ:

Կյանքը վերակառուցվում, շինարարությունը ծավալվում էր, հիմնվում էին նոր արդյունաբերական ձեռնարկություններ, դպրոցներ, հիվանդանոցներ: Սոյուզշինի նախագահին՝ Լուկաշինին, խիստ մտահոգում էր էժան և բարձրորակ շինանյութ հայթայթելու խնդիրը: «Բազալտը կարող է հիանալի շինանյութ դառնալ. միայն պետք է ուսումնասիրել այն ձուլելու հնարավորությունը: Ինչպե՞ս անել այդ». մտորումները հանգիստ չէին տալիս պարտիայի այս համառ ու համարձակ մարտիկին:

Բազալտի օգտագործման լավագույն ձևեր ընտրելու, բազալտի մշակման գործն ուսումնասիրելու համար Լուկաշինը մեկնում է Գերմանիա, Չեխոսլովակիա: Մի քանի ամիս անց վերադառնում է, իր հետ բերելով շատ արժեքավոր տեղեկություններ ու նորություններ այդ մասին:

1937 թվական: Բոլշևիկյան պարտիայի շատ ականավոր գործիչների հետ մեկտեղ, երբ Ստալինը «սուրը մերկացրեց և ուղղեց իր դասակարգի, իր պարտիայի դեմ», զոհվեց և անձնվեր բոլշևիկ, հավատարիմ լենինյան, սոցիալիստական շինարարության պայծառ վետերան Սարգիս Լուկյանի Սրապիոնյանը:

Է. ՍԱՐՈՅԱՆ





## ՈՒՇԱԳՐԱՎ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ

*Կոմունիզմ կառուցող մարդը պետք է զինված լինի բարոյականության ճշմարիտ, գիտական թեորիայով: Ահա թե ինչու էթիկայի պրոբլեմների մշակումը, նրանց բազմակողմանի լուսաբանումն ու պրոպագանդումը իդեոլոգիական ֆրոնտի աշխատողների կարևոր և առաջնահերթ խնդիրներից մեկն է, որի վրա մեր ուշադրությունը հրավիրեց պարտիայի XXII համագումարը:*

*Էթիկայի պրոբլեմների մշակումն անհրաժեշտ է նաև արդի կապիտալիստական աշխարհում լայնորեն ծավալված բուրժուական մի շարք էթիկական կոնցեպցիաների մերկացման, նրանց կողմից մարքսիստական էթիկայի սկզբունքների խեղաթյուրման դեմ պայքարելու համար: Այս առումով էլ Մ. Դանիելյանի* «Մարքսիստական-լենինյան էթիկայի մի քանի հարցերը» *աշխատությունը, որը հրատարակել է Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան (ռուսերեն), ուշագրավ երևույթ է:*

*Աշխատությունը գրված է գիտական բարեխղճությամբ: Ուսումնասիրվող նյութը հանգամանորեն վերլուծված է: Հեղինակն աշխատել է խուսափել շաբլոնից և էթիկայի պրոբլեմների նկատմամբ երևան է բերել ինքնուրույն մոտեցում: Գիրքը շարադրված է պատշաճ հստակությամբ. հեղինակը ջանացել է ընդհանրացնել արծարծված նյութը: Աշխատության արժանիքներից մեկն էլ այն է, որ էթիկայի պրոբլեմատիկ հարցերը լուսաբանված են ո՛չ միայն տեսական, այլև պատմա-քննադատական ասպեկտով: Հեղինակը չի սահմանափակվել միայն անցյալի էթիկական կոնցեպցիաների քննադատությամբ: Գրքում մեծ տեղ է գրավում ժամանակակից բուրժուական կոնցեպցիաների քննադատությունը: Աշխատությունը գրված է պարտիայի XX և XXII համագումարների՝ իդեոլոգիայի վերաբերյալ պատմական որոշումների լույսի տակ: Անհրաժեշտ չափով օգտագործված են այդ համագումարների՝ էթիկական դաստիարակությանը վերաբերող նյութերը:*

*Գիրքը բաղկացած է երեք գլուխներից և փոքրիկ առաջաբանից, որտեղ հիմնավորվում և ցույց է տրվում, թե մեր հասարակության զարգացման ներկա էտապում որքան անհրաժեշտ է էթիկայի (բարոյագիտության) ուսումնասիրությունը:*

*Առաջին գլխում հեղինակը տալիս է էթիկայի առարկայի սահմանումը, բացահայտում նրա գործունեության շրջանակները, աշխատում վեր հանել այն յուրահատուկը, որը կազմում է էթիկայի՝ որպես գիտության ներքին բովանդակությունը: Էթիկայի հետազոտության օբյեկտը, գրում է հեղինակը, մարդկանց միջև գոյություն ունեցող հարաբերություններն են: Էթիկան բացահայտում է մարդկանց վարքն ու վարվելակերպը բնորոշող ընդհանուր օրենքներն ու սկզբունքները: Բայց, քանի որ մարդկանց միջև գոյություն ունեցող հարաբերություններն ուսումնասիրվում են նաև այլ գիտությունների կողմից, ուստի բարոյականության էությունը բացահայտելու համար նա անդրադառնում է մորալի և հասարակական գիտակցության այլ ձևերի փոխհարաբերությանը, աշխատում ցույց տալ այն տեղը, որ գրավում է բարոյագիտությունը մարդկանց միջև գոյություն ունեցող հարաբերություններն ուսումնասիրող գիտությունների սիստեմում:*

*Աշխատության այս մասում նա հատկապես ուշադրություն է դարձրել էթիկայի և կրոնի, ինչպես նաև էթիկայի ու իրավունքի փոխհարաբերության վրա: Հեղինակի նման վերաբերմունքը բխում է նրանից, որ հասարակական գիտակցության ձևերից ոչ մեկը էթիկայի հետ այնքան սերտ և անմիջականորեն կապված չէ, ինչպես կրոնն ու իրավունքը: Հայտնի է, որ կրոնն այնքան է ներթափանցել էթիկայի բնագավառը, որ անգամ հավակնություն ունի էթիկայի առարկան իրենով ներգափոխելու: Պատահական չէ, որ կրոնավորները, ինչպես նաև նեոթոմիզմը, քրիստոնեական էկզիստենցիալիզմը էթիկան դիտում են որպես զուտ աստվա-*

ծային գիտություն։ Իբր աստվածն է մարդկանց բարոյական վարքագծի միակ աղբյուրը։ Ցույց տալով նման մտայնության անհիմն լինելը. հեղինակն աշխատում է ապացուցել, որ էթիկան ինքնուրույն գիտություն է՝ օբյեկտիվ բովանդակությամբ ու դասակարգային բնույթով, և այդ նրան հաջողվել է։

Անդրադառնալով բարոյականության և իրավունքի փոխհարաբերությանը, Մ. Դանիելյանը դրանց ընդհանուր կողմը համարում է այն, որ դրանք կարգավորում, գնահատում են մարդկանց վարքը, ուսումնասիրում նրանց վարքի ձևերն ու շարժառիթները։ Դրա հետ մեկտեղ նա ցույց է տալիս որ չպետք է նույնացնել այդ երկու գիտությունների օբյեկտները։ Բարոյական ազդեցության հիմնական մեթոդը հասարակական պարսավանքն ու խրախուսանքն է, իսկ իրավունքի առանձնահատկությունը նրա հարկադրական կողմն է, գրում է հեղինակը։ Նա ճշմարտացիորեն նշում է, որ սոցիալիստական արտադրահարաբերությունները կոմունիստականի վերաճելու պրոցեսում պետության որոշ ֆունկցիաներ անցնում են հասարակական կազմակերպություններին, որի շնորհիվ փոխվում է իրավունքի և մորալի վերոհիշյալ փոխհարաբերությունը։

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում իրավական նորմերի շրջանակները նեղանում են, իսկ մորալի ազդեցության, նրա նորմերի շրջանակները հասարակական հարաբերությունների ոլորտում աստիճանաբար ընդլայնվում։ Եվ, ի վերջո, ինչպես ճիշտ եզրակացնում է հեղինակը, իրավունքը լինելով պատմական կատեգորիա, կոմունիստական հասարակության մեջ իր տեղը զիջում է կոմունիստական մորալին։

Գրքի առաջին բաժնում հեղինակը թռուցիկ կերպով անդրադառնում է մորալի և իրավունքի ծագմանը, հիմնավորում այն թեզը, որ իրավունքը պատմականորեն ավելի ուշ ժամանակաշրջանի արդյունք է, քան մորալը։

Աշխատության երկրորդ գլուխը նվիրված է դետերմինիզմի (պատճառականության) և բարոյական գնահատականի հնարավորության հարցին։ Ինչպես նշում է հեղինակը, էթիկայի ամենաէական և կնճռոտ պրոբլեմներից մեկն այն է, թե հնարավո՞ր է արդյոք բնորոշել մարդկանց վարքագիծը, տալ նրանց արարքների բարոյական գնահատականը։ Այդ հանգամանքը նա հիմնավորում է ազատության և անհրաժեշտության կատեգորիաների փոխհարաբերության երեք ասպեկտների (ընդհանուր փիլիսոփայական, սոցիոլոգիական և ճանաչողության սկզբունքների) միասնական և համակողմանի վերլուծության միջոցով։ Հեղինակը բացատրում է, թե ինչու ազատության և անհրաժեշտության պրոբլեմի գիտական հարցադրումը կարող է հիմք ծառայել մարդկանց վարքի բարոյական գնահատման համար։ Հեղինակի արդարացի դիտողությամբ ազատության և անհրաժեշտության կատեգորիաների ընդհանուր փիլիսոփայական հարցադրումն ունի լուրջ էթիկական իմաստ։

Այս գլխում հեղինակը ցույց է տալիս, որ բարոյական գնահատականի հնարավորության խնդիրը, կապված ազատության և անհրաժեշտության կատեգորիաների փոխհարաբերության հետ, ըստ էության, նոր չէ։ Այն առաջադրվել է դեռևս շատ վաղուց, մինչև մարքսիստական էթիկայի երևան գալը։ Ցույց տալու համար այն նորը և որակականը, որն առնչվում է մարքսիզմի հետ, նա հանգամանորեն վերլուծում է այդ հարցը, սկսած Թովմա Աքվինացուց և վերջացնելով նորագույն ժամանակաշրջանի փիլիսոփայական մտքի կարկառուն ներկայացուցիչների՝ Կանտի, Հեգելի էթիկական հայացքների բացահայտմամբ։ Աշխատության այս մասը աչքի է ընկնում քննադատական բնույթով։ Զանազան փիլիսոփաների էթիկական հայացքներից հեղինակը հաջողությամբ կարողանում է վեր հանել այն, ինչ քննարկվող պրոբլեմի համար կարևոր է ու էական։ Նա գնահատում է նաև զանազան փիլիսոփաների էթիկական հայացքները։ Էթիկայի մինչմարքսյան ուսմունքների նկատմամբ ցուցաբերում է ճիշտ մոտեցում։ Նա հախուռն կերպով չի ժխտում անցյալի էթիկայի դերը մի շարք պրոբլեմների լուծման բնագավառում, այլ բացահայտում է այդ ուսմունքներում եղած դրականը։

Աշխատության արծարծած մյուս կարևոր հարցը բարոյական գնահատման կրիտերիայի օբյեկտիվությունն է։ Արդյո՞ք բարոյականության բոլոր տիպերն են օբյեկտիվ։ Իսկ եթե ոչ, ո՞րն է բարոյականության այս կամ այն տիպի օբյեկտիվության չափանիշը։ Հեղինակի զարգացրած մտքերն այս հարցում հիմնականում հանգում են նրան, որ բնորոշելու համար բարոյականության այս կամ այն տիպի սկզբունքների ճշմարիտ կամ ոչ ճշմարիտ լինելը, պետք է ելնել այն բանից, թե այդ սկզբունքներն ու հայացքները արտահայտո՞ւմ են արդյոք հասարակության զարգացման պրոգրեսիվ տենդենցները, օրինաչափությունը, անհրաժեշտությունը։ Ելնելով բարոյականության ճշմարտացիությունը որոշելու այս չափանիշից, նա եզրակացնում է, որ բարոյականության ոչ բոլոր տիպերն են, որ պատմականորեն և օբյեկտիվորեն ճշմարտացի են եղել։ Այսպես, բուրժուական բարոյականությունն ունի իր արմատներն իրականության մեջ և արտահայտում է բուրժուազիայի դասա-



կարգային շահերը, սակայն այն դառնում է ռեակցիոն, երբ բուրժուազիան դադարում է հասարակության զարգացման պրոգրեսիվ տենդենցների կրողը լինելուց։ Հեղինակի արդարացի դիտողությամբ այս կամ այն մորալի ճշմարտացիությունը որոշելիս պետք է ամենից առաջ հաշվի առնել, թե ո՞ր դասակարգի շահերն է արտահայտում այն, թե տվյալ դասակարգը հասարակական արտադրական սիստեմում ինչպիսի՞ տեղ ու դիրք է գրավում, շահագրգռվա՞ծ է արդյոք հասարակական արտադրական հարաբերությունների կատարելագործմամբ ու առաջխաղացմամբ։

Հեղինակը նշում է, որ երբ տվյալ արտադրահարաբերությունները ծառայում են հասարակության զարգացման պահանջների բավարարմանը, երբ տվյալ դասակարգի շահերն ու իդեոլոգիական հայացքները արտահայտում են հասարակության զարգացման իրական շահերը, նրա անհրաժեշտ պահանջները, այդ դեպքում նրա բարոյական հայացքները հարաբերականորեն ճշմարիտ են։ Եվ, հակառակը, այն դասակարգը, որը շահագրգռված է գոյություն ունեցող հասարակական արտադրական հարաբերությունների պահպանմամբ, որոնք դադարել են պրոգրեսիվ լինելուց և չեն արտահայտում ամբողջ հասարակության շահերը, պրոգրեսը, ապա նրա բարոյական հայացքները, սկզբունքները ճշմարիտ չեն։

Հետևաբար, կոմունիստական բարոյականությունը ժխտելով այն ամենը, ինչ ռեակցիոն է անցյալի բարոյականության մեջ, ինչ հատուկ է շահագործող դասակարգի էգոիստական շահերին, միաժամանակ ժառանգում է աշխատավոր դասակարգերի ստեղծած բարոյական այն նորմերն ու սկզբունքները, մարդկանց համակեցության այն կանոնները, որոնց նշանակությունն անցողիկ չէ և որոնք օբյեկտիվ ճշմարտություն են պարունակում։

Բարոյական հայացքների ճշմարտության նկատմամբ առաջադրած հեղինակի կողմից նշված օբյեկտիվ չափանիշի հետ չի կարելի չհամաձայնել։ Եթե այս կամ այն բարոյականության ճշմարտացիությունը բնորոշելիս հաշվի չառնվի, թե այն արտացոլո՞ւմ է իր մեջ հասարակության զարգացման օբյեկտիվ տենդենցները, անհրաժեշտությունը, մեկընդմիշտ կբացառվեն հասարակական «չարը» «բարուց» տարբերելու օբյեկտիվ հնարավորությունները։ Տվյալ դեպքում բարոյականության բոլոր ձևերն էլ կդիտվեին որպես օբյեկտիվ ճշմարտություններ։ Այդ ձեռնտու է կապիտալիզմի վարձկան սոցիոլոգներին ու բարոյագետներին, որոնք ամեն կերպ ջանում են ապացուցել բուրժուական մորալի «ճշմարիտ» լինելը։

Ընդգծելով գրախոսվող աշխատության մեջ դրականն ու կարևորը, նշենք նաև մի շարք թերությունները։

41—46 էջերում, որտեղ Դանիելյանը վերլուծում է բարոյականության և իրավունքի փոխհարաբերության հարցը, այն միտքն է զարգացնում, որ բարոյականությունը իրավունքից տարբերող այլ հատկանիշների հետ միասին պետք է նշել նաև այն, որ իբր բարոյականությունը ավելի «հեռավոր» կերպով է կապված բազիսի հետ, քան իրավունքը։ Նրա կարծիքով իրավական նորմերն ավելի անմիջական են կապված բազիսի հետ, քան բարոյականը։ Հեղինակը պնդում է, որ եթե մենք անտեսենք իրավունքի և բարոյականության իր նշած տարբերությունը, ապա էթիկայի հարցերը լուսաբանելիս կընկնենք գռեհկաբանության մեջ (էջ 42)։ Հեղինակի նման դատողության հետ չի կարելի համաձայնել։ Այստեղ նա ուղղակի անտեսում է հասարակական գիտակցության ձևերի այն ընդհանուր առանձնահատկությունը, որ նրանք իրենց հարաբերական անկախության, վերացականության մեջ միաժամանակ կոնկրետ են։ Տվյալ դեպքում անդրադառնալով բարոյականության և իրավունքի՝ բազիսի հետ ունեցած կապի հարաբերության հարցին, պետք է նշել, որ այստեղ չի կարելի դրանք հակադրել միմյանց, առավել ևս՝ խոսել նրանցից որևէ մեկի բազիսի հետ ունեցած հեռավոր կամ անմիջական կապի մասին։ Որոշ իմաստով անկախ լինելով բազիսից, հասարակական գիտակցության ձևերը միաժամանակ ակտիվ կերպով խառնվում էին արտադրական հարաբերությունների մեջ, ներգործում նրանց վրա, կարգավորում մարդկանց միջև գոյություն ունեցող հարաբերությունները։ Մեր դիտողության իրավացի լինելը մասամբ երևում է նաև նրանից, որ Մ. Դանիելյանը բարոյականության՝ բազիսի հետ ունեցած հարաբերության մեկնաբանության մեջ այլ կարծիքի է, երբ խոսքը կրոնի և փիլիսոփայության մասին է։ Այսպես, գրքի 42 և ապա 161—163 էջերում նա աշխատում է ընթերցողին հավատացնել, որ բարոյականությունը ավելի անմիջականորեն է կապված հասարակական հարաբերությունների, այսինքն բազիսի հետ, քան կրոնը և փիլիսոփայությունը։

Իսկ ինչո՞ւ նրա կարծիքով իրավունքն ավելի անմիջականորեն է կապված բազիսի հետ, քան բարոյականությունը։ Դրանով նա աշխատել է հակադրվել բուրժուական սոցիոլոգների շրջանում տարածված այն մտայնությանը, ըստ որի, երբ մարքսիստական բարոյականության

սկզբունքները սոցիալիստական արտադրահարաբերությունների զուտ հայելանման, անմիջական արտացոլումն են։ Նման պնդումը մտացածին է, հակագիտական։ Սակայն այդպիսի պնդումների հերքման համար հեղինակի պատճառաբանությունները համոզիչ չեն։ Պնդելով, որ մարքսիստական էթիկայի սկզբունքների կապը սոցիալիստական բազիսի հետ չափազանց հեռավոր է, նա ընկնում է մի այլ ծայրահեղության մեջ, օբյեկտիվորեն առիթ է տալիս ենթադրելու, որ իբր սոցիալիստական մորալի սկզբունքները սերտորեն չեն կապված նրա բազիսի հետ, որ նրանք անմիջականորեն չեն արտահայտում մեր արտադրահարաբերությունների իրական վիճակը։

Գրքի առաջին մասում կարդալով բարոյականության՝ հասարակական գիտակցության այլ ձևերի հետ ունեցած փոխհարաբերությունների մասին, ընթերցողին թվում է, որ Մ. Դանիելյանը կանդրադառնար նաև բարոյականության և հոգեբանության փոխհարաբերությանը, ցույց կտար նրանց ընդհանուր և տարբերիչ կողմերը։ Դրանից գիրքը կշահեր։ Սակայն հեղինակը ոչ միայն ուշադրություն չի դարձրել այդ կարևոր հարցի վրա, այլ ակնարկ անգամ չի արել այդպիսի պրոբլեմի գոյության մասին։ Աշխատության այս մասում էթիկայի և էսթետիկայի փոխհարաբերությանը քիչ տեղ է տրված։ Գրքի առաջին գլուխը գիտականությամբ զիջում է մյուս երկու գլուխներին։

Էթիկայի առարկայի սահմանումն, անշուշտ, արժանի է ուշադրության։ Սակայն, երբ հեղինակը խոսում է էթիկայի առարկայի և նրա առանձնահատկության մասին, ընթերցողը դեռևս չի կարողանում կողմնորոշվել, թե որն է էթիկայի առանձնահատկությունը։ Ճիշտ է, էթիկան ուսումնասիրում է անհատի և հասարակության շահերի փոխհարաբերությունը, ի դեպ այդ հարցով զբաղվում են նաև իրավունքը, սոցիոլոգիան և այլն, բայց ընթերցողն այդպես էլ չի գտնում այն հարցերի պատասխանը, թե անհատի և հասարակության փոխհարաբերության պրոբլեմին ինչպես է մոտենում էթիկան և ինչպիսի սպեցիֆիկ օրինաչափություններ է հաստատում։ Այստեղ պետք է նշել նաև մի կարևոր հանգամանք։ Այդ այն է, որ Մ. Դանիելյանը էթիկայի առարկայի հիմնական խնդիրը նույնացնում է նրա առարկայի, առանձնահատկության հետ։ Թե որքանով է նման մոտեցումը ճիշտ, գիտական, դա վիճելի և առանձին լուրջ, գիտական հետազոտության նյութ է, որի շուրջ պետք է մտածեն նաև մեր փիլիսոփաները։ Այնուհետև, էթիկայի առարկայի բնորոշման ժամանակ հեղինակը երբեմն «սկզբունք» հասկացությունը հասցնելով մինչև «օրենք» հասկացության աստիճանի (էջ 9), հանգում է այն եզրակացության, որ էթիկան ուսումնասիրում է մարդկանց վարքի ընդհանուր օրենքներն ու սկզբունքները։ Անվիճելի է, որ «օրենք» և «սկզբունք» հասկացությունները նույնը չեն։ Սակայն որոշ դեպքերում «սկզբունք» հասկացությունը օգտագործվում է «օրենք»-ի իմաստով։ Հեղինակին պետք է խորհուրդ տալ, որ փիլիսոփայական տերմինների գործածման ժամանակ ցուցաբերի որոշ զգուշություն, այլապես տերմինները ոչ իրենց իմաստով օգտագործելը կարող է տեղիք տալ մտքերի խառնաշփոթության։

Գրախոսվող աշխատության թերություններից է նաև այն, որ հեղինակը շատ է ծանրացել էթիկայի պրոբլեմների պատմա-քննադատական կողմերի վրա, որից պրոբլեմների տեսական կողմը որոշ իմաստով տուժել է։

Վերջապես, վերլուծելով Կանտի էթիկական հայացքները, չգիտես ինչու, նա ակնարկ անգամ չի անում նրա կատեգորիկ իմպերատիվի սկզբունքի մասին և չի բացահայտում նրա բովանդակությունը։ Ավելին, ընթերցողը սպասում է, որ հեղինակը ցույց կտա, թե Կանտի էթիկական այդ ֆորմուլան այժմ ինչպես է օգտագործում ժամանակակից ռևիզիոնիզմը մարքսիզմի դեմ մղվող պայքարում։ Մինչդեռ, ցավոք սրտի, այս հարցին ևս հեղինակը չի անդրադարձել։ Գրքում կան անհաջող դարձվածքներ, կրկնություններ և այլն։

Չնայած հիշյալ թերություններին, այնուամենայնիվ, գիրքն ամբողջությամբ վերցրած, դրական երևույթ է և կարող է հետաքրքրություն ներկայացնել փիլիսոփաների, հոգեբանների, մանկավարժների, ինչպես նաև էթիկայի հարցերով զբաղվող մասնագետների համար։

Լավ կլիներ, եթե հեղինակն աշխատության հետագա վերամշակման ընթացքում որոշ տեղ հատկացներ նաև սփյուռքահայ ժամանակակից էթիկական մի շարք ոչ գիտական կոնցեպցիաների քննադատությանը, մանավանդ որ այդ մասին առատ նյութ կա։

Հրատարակչական կազմակերպությունները օգտակար գործ կկատարեն, եթե սույն աշխատությունը թարգմանեն և հրատարակեն հայերեն։

Ա. ԹԵՎՈՍՅԱՆ



## ՆՈՐ ԹԵՐԹԵՐ, ՄԵԾ ԽՆԴԻՐՆԵՐ

Գյուղատնտեսության կառավարումը վերակառուցվելու կապակցությամբ ռեսպուբլիկայում ստեղծվել են ՀԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի միջշրջանային տասնմեկ թերթ, որոնք լույս են ընծայվում կոլտնտեսային-սովխոզային տերիտորիալ արտադրական վարչությունների կենտրոններում։ Այդ թերթերը կոչված են գյուղական բոլոր կազմակերպություններին ու աշխատավորներին մոբիլիզացնելու և պայքար ծավալելու ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Մարտյան պլենումի որոշումները կյանքում հետևողականորեն կենսագործելու, գյուղատնտեսության հետագա զարգացման ասպարեզում վճռական բեկում ստեղծելու համար։

Առաջինը լույս ընծայվեցին «Արարատ» (Արտաշատի կոլտնտեսային-սովխոզային տերիտորիալ արտադրական վարչության) և «Շիրակ» (Ախուրյանի կոլտնտեսային-սովխոզային տերիտորիալ արտադրական վարչության) թերթերը։ Նրանց առաջին համարը ընթերցողին հասավ սովետական մամուլի օրը, մայիսի 5-ին, երբ ամբողջ երկիրը տոնում էր մեր պարտիայի Կենտկոմի մարտյան օրգան «Պրավդայի» փառապանծ 50-ամյակը։

«Արարատ» և «Շիրակ» թերթերն իրենց առաջին համարից սկսած կոլտնտեսականներին ու սովխոզների բանվորներին լայնորեն պարզաբանում են ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումները, կոլտնտեսությունների ու սովխոզների առջև դրված կոնկրետ խնդիրները, դրանց հաջող լուծման միջոցները, գյուղի աշխատավորների կոնկրետ անելիքները։ Թերթերը գյուղատնտեսության բոլոր աշխատողներին կոչ են անում ակտիվորեն մասնակցելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը, վճռականորեն ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, պատվով կատարելու սոցիալիստական պարտավորությունները։

«Արարատ» թերթն իր մայիսի 5-ի համարի երկու էջը հատկացրել է ընթացիկ գյուղատնտեսական տարվա խնդիրներին։ «Յոթնամյակի չորրորդ տարում նվաճենք նոր բնագծեր» ընդհանուր խորագրի տակ հետաքրքրական հոդվածներ, ճեղթակցություններ ու ինֆորմացիաներ են տպագրված Արտաշատի, Վեդու և Մեղրու շրջաններից։ «Մեր մարտական խնդիրը» հոդվածում Արտաշատի կոլտնտեսային-սովխոզային տերիտորիալ արտադրական վարչության ՀԿՊ Կենտկոմի պարտկազմակերպիչ Օ. Հովակիմյանը խոսում է ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումների նշանակության մասին և նշում այն հիմնական բնագծերը, որոնք պետք է նվաճվեն 1962 թվականին։ Թերթում կարդում ենք.

> «Մեր առաջնահերթ ու մարտական խնդիրն է՝ ապահովել ավելի քան 4 հազար տոննա մսի, 16,5 հազար տոննա կաթի, 7 միլիոն հատ ձվի, մոտ 250 տոննա բրդի արտադրությունը: Ագրոկոմպլեքսի ճիշտ կիրառման միջոցով հեկտարից ստանալ 29,2 ցենտներ բամբակ, 81,8 ցենտներ խաղող, 63 ցենտներ ծառապտուղ և 262,7 ցենտներ բանջարեղեն»:

Սրանք սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորություններից են, որոնց կատարման համար թերթը կոչ է անում՝ խոսքը գործի վերածել։

1962 թվականին Ամասիայի, Ղուկասյանի, Ախուրյանի, Անիի և Արթիկի շրջանների կոլտնտեսությունների ու սովխոզների առջև դրված խնդիրների և սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների մասին ընթերցողներին սիստեմատիկաբար ծանոթացնում է նաև «Շիրակ» թերթը։ «Շիրակը», իհարկե, միայն դրանով չի բավականանում։ Նա իր հիմնական ուշադրությունը բևեռում է գլխավորի՝ սոցիալիստական պարտավորությունների կատարման վրա։ «Առաջավոր փորձին լայն ճանապարհ» (№ 3), «Քո փառքը, քո պատիվը, Շիրակի աշխատավոր» (№ 4), «76 հազար տոննայի համար» (№ 5), «Ճակնդեղագործ, պայքարիր 800 հազարի համար» (№ 7) առաջնորդողներում թերթը ոգեշունչ խոսքերով բոլորին մոբիլիզացնում է ավելի լավ աշխատելու և երկրին ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ տալու։ Անասնաբուծության աշխատողներին հիշեցնելով,

որ ընթացիկ տարում պետք է արտադրեն 298.560 ցենտներ կաթ, 63.133 ցենտներ միս, 4.974 ցենտներ բուրդ, 5 միլիոն 420 հազար ձու, թերթը գրում է.

> «Աշխատանքով՝ ազնիվ ու նվիրված աշխատանքով միայն կարող ենք իրագործել այդ ամենը: Իսկ դու, աշխատասեր շիրակցի, որ օժտված ես խիզախելու և ստեղծելու վիթխարի կարողությամբ, կարող ես նվաճել այդ բարձունքը ևս: Թող քո բեղուն աշխատանքից ծնվեն մեծամեծ բարիքներ, թող ճասատ մնա ճարազատ պարտիայի տված քո սրտաբուխ խոսքը, և գործերիդ գնով ծնվի առատությունը»:

Արտաշատի և Ախուրյանի կոլտնտեսային-սովխոզային աշխատավորներն աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում որոշակի հաջողությունների են հասել: «Արարատ» և «Շիրակ» թերթերը միանգամայն ճիշտ են վարվում, երբ լայնորեն մասսայականացնում ու պրոպագանդում են առաջավոր տնտեսությունների ու արտադրության նորարարների փորձը, որն իրենց ամենահիմնական ու գլխավոր անելիքներից մեկն է:

«Առաջավորների փորձը բոլորին» ռուբրիկայով «Արարատ» թերթի № 1-ում տպագրված է Արտաշատի շրջանի Քաղցրաշեն գյուղի կոլտնտեսության բրիգադավար Վ. Հակոբյանի հոդվածը, ուր խոսվում է ագրոտեխնիկական այն միջոցառումների կենսագործման մասին, որոնք ապահովում են խաղողի բարձր բերքի ստացումը: Ընկ. Վ. Հակոբյանն իր հոդվածում գրում է.

> «Անցած տարի մենք հեկտարից ապահովեցինք 270 ցենտներ խաղող, սակայն այդ մեզ համար սահման չէ:
>
> Այս գարնան սկզբից, ծավալելով սոցիալիստական գործարար մրցություն, պայքարում ենք հեկտարից 300 ցենտներ խաղող ստանալու նշանաբանով»:

Անվանի բրիգադավարը համոզիչ փաստերով պատմում է ձեռնարկված այն միջոցների մասին, որոնք կապահովեն հեկտարից 300 ցենտներ խաղողի ստացումը:

«Աշխատել, ստեղծագործել առաջավորների օրինակով» ընդհանուր վերնագրի տակ «Շիրակի» № 4-ում նյութեր են զետեղված առաջավոր անասնապահների, կթվորների, № 5-ում՝ թռչնապահների, մեխանիզատորների և ուրիշների մասին, որոնք հրաշալի օրինակ են ցույց տալիս ՍՄԿԿ Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումների իրականացման գործում: Սակայն, հարկ է նշել, որ առաջավոր փորձը դեռևս խորությամբ չի լուսաբանվում, այդ թեմայով գրած առանձին նյութեր մակերեսային են, ինֆորմացիոն բնույթի: Ցանկալի է, որ «Արարատ» և «Շիրակ» թերթերը ավելի հետևողականորեն լուսաբանեն գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, ցույց տան ուսանելին, օրինակելին, որը պետք է ամենուրեք արմատավորվի: Թերթերը պետք է հետևեն, որպեսզի այն, ինչ կիրառվում է առաջավոր տնտեսություններում և նրանց համար ապահովում արտադրության բարձր մակարդակ, դառնա բոլոր կոլտնտեսությունների ու սովխոզների սեփականությունը:

Իրենց ուշադրությունը բևեռելով գյուղատնտեսական արտադրության հիմնական հարցերի վրա նորաստեղծ թերթերը լուսաբանում են նաև գյուղատնտեսության կառավարման նոր օրգանների և պարտիական կազմակերպությունների համագործակցված աշխատանքը, նրանց գործունեության նոր ձևերն ու մեթոդները, որոնք մեծապես նպաստում են պարտիայի առաջադրած խնդիրների հաջող իրականացմանը:

Գովելի է, երբ թերթերում հանդես են գալիս գյուղատնտեսության կառավարման նոր օրգանների աշխատողները և պատմում օրվա հրատապ խնդիրների և դրանց լուծման մասին: «Շիրակ» թերթում տպագրված իրենց հոդվածներում կարևոր հարցեր են բարձրացրել Ախուրյանի կոլտնտեսային-սովխոզային տերիտորիալ արտադրական վարչության ՀԿՊ Կենտկոմի պարտկազմակերպիչ Հ. Իկիլիկյանը, տեսուչ-կազմակերպիչներ Ա. Սարոյանը, Պ. Մանուկյանը: Ա. Սարոյանը թերթի № 4-ում պատմում է, թե ինչպես իր սպասարկած Գետափ, Փանիկ, Սպանդարյան, Պարնի, Գեղանիստ գյուղերի կոլտնտեսությունների ամբողջ վարելահողի 40—42 տոկոսը զբաղեցնում էր կորնգանը, որը չէր լուծում կերի բազայի ստեղծման հարցը, խանգարում էր հողի ռացիոնալ օգտագործմանը: Ահա թե ինչու կոլտնտեսություններն իրենց օգնությամբ վերացնում են հողագործության խոտադաշտային անանկ սիստեմը, սկսում ավելի ռացիոնալ օգտագործել հողը, ընդարձակել այնպիսի արժեքավոր կերաբույսերի ցանքատարածությունները, ինչպիսիք են՝ եգիպտացորենը, շաքարի ճակնդեղը, ոլոռը և այլն: Դրա հետ միասին լուրջ աշխատանք է կատարվում ցանքերի լիարժեքությունն ապահովելու և մեքենայական աշխատանքի ծավալն ընդարձակելու ուղղությամբ:

Թերթի հաջորդ համարում տեսուչ-կազմակերպիչ Պ. Մանուկյանը հանգամանորեն պատմում է կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպման նոր ձևերի մասին, որոնք նպաստում են արտադրության միջոցների ռացիոնալ օգտագործմանն ու աշխատանքի արտադրողականության բարձրացմանը: Նա բերում է Շիրակի կոլտնտեսության օրինակը, ուր դաշտավարական նախկին չորս և տրակտորային մեկ բրիգադայի փոխարեն կազմակերպված է տրակտորա-դաշտավարական երկու բրիգադա. բրիգադները ղեկավարում են անվանի մեխանիզատորներ Հարություն Մարտիրոսյանը և Շուրա Քոչարյանը: Այս խոշոր բրիգադներում ավելի արդյունավետ են օգտագործվում մեքենաներն ու գործիքները, կրճատվում է ձեռքի աշխատանքը, արտադրության մեջ արմատավորվում են հողամշակության առաջավոր մեթոդներ, որոնց շնորհիվ բարձրանում է բերքի համախառն արտադրանքը և դրանից ստացվող դրամական եկամուտը: Բավական է ասել, որ կոլտնտեսությունը 1958 թվականի 90 հազար ռուբլու փոխարեն 1961 թվականին ստացել է 150 հազար ռուբլու եկամուտ: Այնուհետև Մանուկյանը գրում է.

> «Տրակտորա-դաշտավարական բրիգադայի կազմակերպման գործում մի նոր ձև ենք մտցրել Ղարիբջանյանի, Երազգավորսի, Գետքի և Առափիի կոլտնտեսությունները: Այստեղ բրիգադիրը և մեխանիկը վարձատրվում են ոչ թե երաշխավորված մինիմումով, ինչպես մեխանիզատորները, այլ կոլտնտեսության ղեկավար աշխատողների վարձատրման սկզբունքով: Այս բանը բարձրացնում է բրիգադների ղեկավար աշխատողների նյութական շահագրգռվածությունը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, բոլոր կուլտուրաներից բարձր բերք ստանալու ուղղությամբ»:

Կարևոր հարցին նվիրված այս հոդվածն ավելի կշահեր, եթե հեղինակը մի քանի թվական փաստերով ցույց տար, թե աշխատանքի կազմակերպման նոր ձևերի կիրառումը որքանով է բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը, ինչպես է նպաստում անարտադրողական ծախսերի կրճատմանն ու արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը:

Խմբագրությունը փորձել է ցույց տալ նաև կոլտնտեսային-սովխոզային տերիտորիալ արտադրական վարչության տեսուչ-կազմակերպիչ Ս. Հարությունյանի աշխատանքը. դա լավ է, խրախուսելի: Բայց այդ լավ մտահղացումն ինչպես հարկն է չի արտացոլվել թերթում: Թերթի № 2-ում «Պատմում են թվերը» թղթակցությունում կարդում ենք:

> «Միջշրջանային վարչության տեսուչ-կազմակերպիչ ընկ. Ս. Հարությունյանը, որ նոր է եկել Անիի շրջանի գյուղերից, բերում է ծոցատետրը, որը ծայրե-ծայր լի է թվերով»:

Անասնապահների հաջողությունների վերաբերյալ չոր թվերով լի է նաև վերոհիշյալ փոքր թղթակցությունը: Իսկ թե այդ հաջողություններն ինչպե՞ս են ձեռք բերված և տեսուչ-կազմակերպիչն ի՞նչ է արել տվյալ գործում, գաղտնիք են մնում:

Գյուղատնտեսության կառավարման նոր օրգանները բեղմնավոր աշխատանք են ծավալել կոլտնտեսություններում ու սովխոզներում: Արդեն զգացվում է նրանց գործունեության բարերար ազդեցությունը գյուղատնտեսության արտադրության բարձրացման վրա: Այդ են ցույց տալիս տեղերից ստացվող բազմաթիվ հաղորդագրությունները կոլտնտեսություններում ու սովխոզներում կազմակերպական աշխատանքի ուժեղացման, արտադրության մեջ գիտության նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորման, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման ու սոցիալիստական պարտավորությունների կատարման մասին: Դրանք պետք է իրենց վառ արտացոլումը գտնեն միջշրջանային թերթերում, լայն տեղ գրավեն նրանց էջերում:

Կոլտնտեսային-սովխոզային տերիտորիալ արտադրական վարչությունների, ՀԿՊ Կենտկոմի պարտկազմակերպիչների ու նրանց հրահանգչական խմբերի օգնությամբ գյուղատնտեսության վերելքի համար լայն պայքար են ծավալել գյուղական սկզբնական պարտիական կազմակերպությունները:

Դրվատելով առաջավոր պարտկազմակերպությունների օրինակելի աշխատանքը, «Շիրակ» և «Արարատ» թերթերը միաժամանակ քննադատում են այն սկզբնական պարտիական կազմակերպություններին ու նրանց բյուրոներին, որոնք իրենց աշխատանքը դեռևս չեն վերակառուցել նոր խնդիրներին համապատասխան և, ինչպես հարկն է, պայքար չեն ծավալում գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա վերելքի համար: «Արարատ» թերթի մայիսի 8-ի համարում խիստ քննադատության է ենթարկված Արտաշատի շրջանի Ծաղկաշեն գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտկազմակերպությունը, որը ձևական մոտեցում է ցուցաբերում սոցիալիստական մրցության նկատմամբ, անհրաժեշտ պայքար չի կազմակերպում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման համար: Եվ այդ այն դեպքում, երբ կոլտնտեսությունում ձգձգվում են դաշտային աշխատանքները, անցած տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ 10 տոկոսով պակասել է կաթի արտադրությունը, դանդաղ է կատարվում պետությանը մսի վաճառքի պլանը:

Միջշրջանային թերթերը լինելով սովետական մամուլի նոր մարտական ջոկատը, ավելի լայնորեն կծավալեն քննադատությունը և իրենց էջերում կվերհանեն բոլոր նրանց, ովքեր ան-

պատասխանատու կերպով են վերաբերվում տնտեսությունը վարելուն։

«Արարատ» և «Շիրակ» թերթերը նոր են ծավալում իրենց գործունեությունը։ Հենվելով հեղինակային լայն ակտիվի ու բանգյուղթղթակիցների վրա՝ թերթերը պետք է ավելի խոր ու լայնորեն լուսաբանեն կոլտնտեսային ու սովխոզային արտադրության կազմակերպման ու ղեկավարման, եղած արտադրական միջոցների ռացիոնալ օգտագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցերը։ Թերթի էջերում իրենց պատշաճ տեղը պետք է գրավեն նաև կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների նյութական շահագրգռվածության բարձրացման, հողագործության ինտենսիվ սիստեմների կիրառման և նման մի շարք արմատական հարցեր, որոնց հաջող լուծումից է կախված գյուղատնտեսական մթերքների առատության ստեղծումը։

«Արարատի» և «Շիրակի» խմբագրություններ ը պետք է լուրջ ուշադրություն նվիրեն թերթերի ձևավորման, դիդակտիկ նյութերի, տառատեսակների ճիշտ օգտագործման և տպագրության որակի վրա։ «Շիրակի» խմբագրությունը լրջորեն պետք է զբաղվի նաև թերթի լեզվի մշակմամբ, որպեսզի թույլ չտրվեն լեզվական ու ոճական այնպիսի սխալներ, ինչպիսիք տեղ են գտել թերթի մի քանի համարներում։

Միջշրջանային թերթերի աշխատանքի բարելավման գործում մեծ են պարտկազմակերպիչների անելիքները. ՍՄԿՊ Կենտկոմի որոշմամբ նրանք պետք է ամեն օր զբաղվեն տերիտորիալ արտադրական վարչություններին առընթեր միջշրջանային թերթերի աշխատանքով և լինեն պատասխանատու լինեն այն բանի համար, որ այդ թերթերը դառնան գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ու մթերումներն ավելացնելու ուղղությամբ պարտիայի միջոցառումների կատարման իսկական կազմակերպիչներ, գիտության նվաճումների, լավագույն տնտեսությունների և գյուղատնտեսական արտադրության առաջավորների փորձի պրոպագանդիստներ։

---




# Մեզ գրում են

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԽՄԲԵՐ

Ախուրյանի շրջանի Ազատանի կոլտնտեսությունում կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխման շնորհիվ արտադրության վճռական բոլոր տեղամասերում՝ դաշտավարական բրիգադներում և անասնաբուծական ֆերմաներում ստեղծվել են պարտիական խմբեր։

Պարտիական խմբերն ագիտատորների միջոցով սիստեմատիկաբար կազմակերպում են զրույցներ, գրքերի ու թերթերի բարձրաձայն ընթերցանություններ, պարզաբանում Կոմունիստական պարտիայի ներքին ու արտաքին քաղաքականության հարցերը, ՍՄԿՊ նոր ծրագիրը, այն սերտորեն կապելով կոլտնտեսության, բրիգադայի ու ֆերմայի առջև կանգնած կոնկրետ խնդիրների հետ։ Նրանք լույս են ընծայում պատի թերթեր, զբաղվում կոմունիստների ու անկուսակցական ակտիվիստների քաղաքական կրթության, ինչպես և մամուլի տարածման, ագրոզոոտեխնիկական ուսուցման հարցերով։

Պարտիական խմբերի կազմակերպիչներին պարտբյուրոն սովորեցնում է պարտիական աշխատանքի ձևերն ու մեթոդները, ժամանակին հրահանգավորում, մասնակից դարձնում պարտբյուրոյի գործունեությանը։ Ամեն մի պարտկազմակերպիչ ունի իր օրագիրը, որտեղ նշումներ են արվում կատարված աշխատանքի մասին։

Հենվելով պարտիական խմբերի վրա, սկզբնական պարտկազմակերպությունը մոբիլիզացնում է աշխատողների ուժերը՝ ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները գործի վերածելու, յոթնամյակի չորրորդ տարում ավելի բարձր արդյունքի հասնելու համար։

Ռ. ՀԱԴԱԹՅԱՆ
ՀԿՊ Ախուրյանի շրջկոմի հրահանգիչ

## ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒՄ ԵՆ ՓԱՐՈՍՆԵՐԻ ՓՈՐՁԸ

Յոթ ամիս առաջ, Նոյեմբերյանի կաթնաանասնապահական սովխոզի պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ ստեղծվեց գյուղատնտեսության առաջավորների՝ փարոսների աշխատանքի փորձն ուսումնասիրող խմբակ, որտեղ ընդգրկված են արտադրության մեջ աշխատող քսան մարդ։

Ուսումնական ծրագրի համաձայն մեր խմբակն ուսումնասիրում էր ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը։ Պարապմունքների ընթացքում առանձնապես մեծ տեղ էինք հատկացնում գյուղատնտեսության զարգացման հարցերին, անասնաբուծության բնագավառի առաջավոր փորձին։ Այսպես, ունկնդիրները հանգամանորեն ծանոթացել են Շահումյանի շրջանի անվանի կթվորուհի Ս. Ավետիսյանի և եգիպտացորենի մշակության փառաբանված վարպետ Ն. Դոլինյուկի աշխատանքային գործունեությանը։

Հանդես գալով խմբակի անդամների

առաջ, մեր սովխոզի առաջավոր կըթվորուհի Մ. Ալավերդյանը պատմել է, թե ինչպես կովերի խնամքն ու կերակրումը լավ կազմակերպելու միջոցով բարձրացրել է կովերի կաթնատվությունը: Անցյալ տարի մեր սովխոզում կատարվեց եգիպտացորենի փորձնական երկրորդ ցանք. արդյունքը գերազանցեց մեր սպասելիքը: Այդ մասին ունկնդիրներին պատմել է գյուղատնտես Լ. Բայրամյանը:

Ինչպես պարտիայի XXII համագումարի որոշումների, այնպես էլ փարոսների աշխատանքի փորձի ուսումնասիրումը մեծապես օգնեց խմբակի անդամներին՝ աշխատելու ավելի լավ, պատվով կատարելու ստանձնած պարտավորությունները:

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
խմբակի ղեկավար

## ԿԵՆԴԱՆԻ ԽՈՍՔԻ ՈՒԺԸ

Հաջող անցավ Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ընկերության Թալինի շրջանային բաժանմունքի կազմակերպած երիտասարդական երեկոն: Վաստակավոր ուսուցիչ Ա. Ղազարյանի հակիրճ ներածական խոսքից հետո ելույթներ ունեցան Թալինի կոլտնտեսության ԼԿԵՄ կոմիտեի քարտուղար Ս. Բարեյանը, զորզագործական ֆաբրիկայի առաջավոր բանվորուհի Կ. Կիրակոսյանը, խառատ Ս. Սարգսյանը և ուրիշներ: Նրանք պատմեցին, թե ինչպես են գործի վերածում ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները, ինչ են խորհում գալիքի մասին: Ապա հանդես եկավ դպրոցի կենդանի լրագիրը, որը երգիծանքի միջոցով խարազանեց այն երիտասարդներին, որոնք իրենց վատ են դրսևորում աշխատանքում, վարում են պարազիտային կյանք և խանգարում հասարակական կարգն ու կանոնը: Երեկոյի վերջում հանդես եկան շրջկենտրոնի երաժշտական դպրոցի սաները:

Վերջերս մեր շրջանի գյուղերում, արտադրական ձեռնարկություններում և ուսումնական հաստատություններում հաճախ են կազմակերպվում նրման թեմատիկ, հարց ու պատասխանի երեկոներ, բովանդակալից դասախոսություններ, գիտա-արտադրական կոնֆերանսներ:

ՍՄԿՊ նոր Ծրագիրը պրոպագանդելու նպատակով Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ընկերության շրջանային բաժանմունքի ուժերով կազմակերպված է հրապարակային դասախոսությունների ցիկլ: Դասախոսական նոր խմբեր են ստեղծվել շրջանի 15 բնակավայրերում. առանձնապես արդյունավետ է աշխատում Մաստարայի գյուղական խումբը:

Շրջանում հասարակական կարգով գործում են երկու համալսարան և չորս լեկտորիում. ընթացիկ տարվա սկզբից կազմակերպվել է երաժշտական լեկտորիում: Ընկերության բաժանմունքը խոշոր գործ է կատարում գիտա-աթեիստական պրոպագանդայի, գյուղատնտեսության առաջավոր փորձի տարածման ուղղությամբ: Պարբերաբար կազմակերպվում են հանդիպումներ փարոսների հետ, լույս են ընծայվում առաջավոր փորձին նվիրված թերթիկներ և այլն:

Բ. ՀԱՐՈՅԱՆ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Պետքաղհրատը հրատարակել է Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ՝ գյուղատնտեսության հարցերի վերաբերյալ զեկուցումների ժողովածուն՝ «Կոմունիստական շինարարության արդի էտապը և պարտիայի խնդիրները գյուղատնտեսության ղեկավարումը բարելավելու ուղղությամբ» խորագրով:

Ժողովածուում զետեղված են Ն. Ս. Խրուշչովի՝ գյուղատնտեսության հարցերին վերաբերող ելույթները՝ ՍՄԿՊ XXII համագումարում, գյուղատնտեսության աշխատողների միջզոնալ խորհրդակցություններում, ինչպես և ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թվականի Մարտյան պլենումում տված զեկուցումն ու եզրափակիչ խոսքը:

Ընկեր Ն. Ս. Խրուշչովի գրքում կա մեր երկրի գյուղատնտեսության այժմյան վիճակը բնութագրող հարուստ նյութ, բացահայտված են նրա զարգացումը խոչընդոտող պատճառները և նշված են գյուղատնտեսական արտադրության բոլոր բնագավառների հզոր վերելքի ուղիները: Այս գիրքը կդառնա ուղեցույց գյուղատնտեսության աշխատողների համար, որոնք այնտեղ կգտնեն գյուղատնտեսության հետագա զարգացման արմատական պրոբլեմների լուծման ուղիները:

❊❊❊

Կոմունիզմ կերտող մեր սերնդի համար խիստ օգտակար գիրք է վերջերս ռուսերեն հրապարակված «Լենին- ընկեր, մարդ» ժողովածուն: Նրանում զետեղված նյութերը ցուցադրում են Վ. Ի. Լենինի անսահման ուշադրությունը, բարի ու սրտացավ վերաբերմունքը մարդու նկատմամբ: Ընթերցողն այս գրքում տեսնում է մեր էպոխայի ամենամարդկային մարդուն, որի բնավորության գծերը երևան են գալիս նույնիսկ այստեղ՝ բանվորներից ստացած նամակների, գրությունների, հեռագրերի վրա կատարած նրա մակագրություններում, Լենինի մասին ժամանակակիցների հիշողություններից բերված հատվածներում:

Հրապարակի վրա է Վ. Տ. ԼՈԳԻՆՈՎԻ «Լենինը և 1912—1914 թվականների «Պրավդան»» գիրքը (ռուսերեն): Նրանում ժամանակակից ընթերցողի առաջ հառնում է այն դժվարին պայքարի ու մաքառումների ուղին, որ անցել է «Պրավդան» երկրում ռևոլյուցիոն շարժման նոր վերելքի պայմաններում: Անլեգալ հրատարակվող բանվորական մասսայական օրաթերթի հրատարակումը, որ մեծ նշանակություն ուներ ռևոլյուցիոն շարժումը ղեկավարելու համար, իրականացնում էին Վ. Ի. Լենինը և պարտիայի Կենտրոնական Կոմիտեն՝ բանվորական շարժման մեջ բուրժուազիայի գործակալների՝ օպորտունիստների դեմ մղած դաժան ու անօրինակ պայքարի պայմաններում: Գիրքը հստակ պատկերացում է տալիս Լենինի ռևոլյուցիոն աշխատանքի այն ձևերի ու մեթոդների մասին, որով նա ղեկավարում էր «Պրավդան»:

❊❊❊

Բեռլինի Հումբոլտի անվան համալսարանի պրոֆեսոր, ֆրանսիական փիլիսոփա-մարքսիստ ՕԳՅՈՒՍՏ ԿՈՐՆՅՈՒԻ «Կ. Մարքս և Ֆ. Էնգելս: Կյանքն ու գործունեությունը» աշխատությունը արժեքավոր ուսումնասիրություն է մարքսիզմի ձևավորման և նրա պատմության մասին: Գրքի առաջին հատորում ընթերցողը մոտիկից ծանոթանում է Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի մանկությանն ու դպրոցական տարիներին, ապա նրանց գործունեության առաջին շրջանին (1835—1844 թթ.), երբ մտավոր աշխարհում տիրակալում էր հեգելյան փիլիսոփայությունն ու պրուսական մոնարխիստական սիստեմի հավիտենականության տեսությունը: Պրոլետարիատի ազատագրության ապագա մարտիկներն այդ շրջանում անցնում են բարդ ու տարընթացություններով լի ուղի: Ուսումնասիրելով նվրոպական զարգացած կապիտալիստական երկրների սուր դասակարգային հակամարտությունները, նրանք ա-

զատվում են Հեգելյան բոլոր հոսանքների ու Ֆոյերբախյան ուղղության ազդեցությունից ու կանգնում դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի ստեղծման, բանվոր դասակարգին կապիտալի շղթաներից ազատագրելու ճիշտ ուղու վրա։

ԳՐՔԻ 2-ՐԴ ՀԱՏՈՐԸ ընդգրկում է Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի կյանքի ու գործունեության 1844—1845 թթ. շրջանը։ Այս կարճ, բայց բեղմնավոր շրջանը մարքսիզմի պատմության մեջ նշանավոր է նրանով, որ այդ թվականներին Մարքսն ու Էնգելսը կոմունիզմի մասին բոլոր թեորիական հարցերում պաշտպանում էին նույն հայացքները։ Այս շրջանում նրանք միասին հրատարակում են «Տնտեսական-փիլիսոփայական ձեռագրեր», «Սուրբ ընտանիք» և ուրիշ այլ աշխատություններ, որոնք կոմունիզմի մասին նրանց ուսմունքի հիմնաքարերն են։ Հատկապես այս աշխատությունների վերլուծմանն է նվիրված գրքի այս հատորը։

Այս երկու հատորով չի սպառվում Կորնյուի ուսումնասիրությունը, ընթերցողներն սպասում են պրոլետարիատի մեծ առաջնորդների կյանքի հետագա տարեգրությանը։

✻✻✻

Փիլիսոփայության հարցերով զբաղվողների համար ուշագրավ գիրք է Մ. ԳԱԼԻՆԻ «Հուսահատության ու սարսափի փիլիսոփայություն» աշխատությունը։ Նրանում մատչելի լեզվով պատմվում է ժամանակակից բուրժուական երկրներում համեմատաբար շատ տարածված հուսահատության ու սարսափի փիլիսոփայության առաջացման պատճառները և նրանց առանձնահատկությունները։ Հեղինակը մարքսիզմի դիրքերից վերլուծում է էկզիստենցիալիզմի ամենաառեակցիոն ներկայացուցիչների խավարամտությունը, վերհանելով իմպերիալիզմին մատուցած նրանց ծառայությունները։ Այս գիրքը առաջին ռուսերեն աշխատությունն է, որում համեմատաբար լրիվ վերլուծվում է Յասպերսի, Հեյդեգերի, Սարտրի և «կյանքի փիլիսոփայության» այլ ներկայացուցիչների «տեսությունները»։

✻✻✻

Կրոնի էության մերկացմանն է նվիրված «Խոսքեր կրոնի մասին» ռուսաց լեզվով վերջերս հրատարակված ժողովածուն։

Կրոնը, եկեղեցին, հոգևորականությունը միշտ եղել են տիրող դասակարգերի հենարանը, միշտ պաշտպանել են ռեակցիան ու տգիտությունը։ Եվ մարդկության առաջադեմ ներկայացուցիչները դարերի ընթացքում պայքարել են աստծո և նրա ծառաների դեմ։

Գրքում զետեղված են ընտիր աֆորիզմներ և հատվածներ նշանավոր մատերիալիստ փիլիսոփաների, գիտնականների, հասարակական գործիչների աշխատություններից։ Այս գիրքը դարերի դատավճիռն է կրոնի նկատմամբ։



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՆՑԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ԱՍՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2—56—92

ՎՖ 09528, Պատվեր 1748 Տիրաժ՝ 9850 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 23/VI 62 թ.։

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

(Սկիզբը շապկի երկրորդ էջում)

նիքներին, հիվանդություններին ու վնասատուներին։

✻✻✻

Չինաստանի Լյուչժա-Լյույշան քաղաքների Գյուղատնտեսության գիտահետազոտական ինստիտուտի աշխատակիցները բադեր են բուծում ծովաջրում և հասել են զգալի հաջողությունների։ Այդ բադերը ավելի մեծ են, ավելի շատ ձու են տալիս և հիվանդությունների նկատմամբ բարձր դիմադրողականություն ունեն։

Որպեսզի բադերին սովորեցնեն աղի ջրին, նրանց լույս աշխարհ գալու չորրորդ օրը լողացնում են ծովաջրի և քաղցրահամ ջրի խառնուրդով։ Մի շաբաթ անց նրանք լրիվ հարմարվում են։

Ինչպես պնդում են չինական մասնագետները, բադերին միրձովյան գոտում պահելով կարելի է խնայել մեծ քանակությամբ կեր։

## ԲԱՄԲԱԿԵ ԷԼԵԿՏՐԱԽՈՆԱՎԱՉԱՓ

Բամբակի ընդունման ժամանակ շատ կարևոր է որոշել նրա խոնավության աստիճանը, որից կախված է նրա տեսակը և պահելու եղանակը։

Չինաստանի Ժողովրդական Ռեսպուբլիկայի տեքստիլ արդյունաբերության աշխատողները նախագծել են հատուկ սարք՝ «էլեկտրախոնավաչափ №583», որն ընդունված է սերիական թողարկման համար։ Այն օգտագործում են մատակարարման-վաճառահանման կոոպերատիվներում։

Սարքն աշխատում է ցանցի կամ մարտկոցի միջոցով, պորտատիվ է և տեղավորվում է ոչ մեծ արկղում։

«Էլեկտրախոնավաչափ №583»-ը արժանացել է մասնագետների բարձր գնահատականին։

## ԼԵՀԱԿԱՆ ԱՍՏՂԱԳԵՏԻ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ

Լեհական աստղագետ Կազիմեժ Կորդիլևսկին տասը տարվա հետազոտություններից հետո միջմոլորակային տարածությունում հայտնագործեց երկու թափառող ամպեր, որոնք երկրի բնական արբանյակներն են և գտնվում են նրանից համեմատաբար ոչ մեծ՝ 400 հազար կմ հեռավորության վրա։ Գիտնականի կարծիքով այդ ամպերը կազմված են միջաստղային փոշուց։ Հավանաբար սրանց բաղադրության մեջ մտնում են նաև խոշոր մետեորիտներ։ Ամպերը շարժվում են նույն օրբիտով, ինչ որ լուսինը, անփոփոխ հեռավորությամբ։

## ԼՈՂԱՑՈՂ ՓՐԿԱԶԳԵՍՏ

Անգլիայում ստեղծվել է նոր փրկազգեստ՝ լողացողների համար։ Այդ զգեստը հագնողը ջուրն ընկնելիս, կարող է նրա վրա մնալ նույնիսկ կապկպված ձեռքերով, մեջքի վրա պառկած։ Զգեստի աստառի վրա կարված մի շերտ պատրաստված է հատուկ թելից, որը ջրի մեջ վայրկենաբար խտանում է և դարձնում այն անջրանցիկ։ Ջրային պայմաններում այդ թելը ազատ անց է կացնում օդը։

## ՊԼԱՍՏՄԱՍՍԱՅԻՑ ԽՈՂՈՎԱԿՆԵՐ ՈՌՈԳՄԱՆ ՀԱՄԱՐ

Ֆրանսիայում ենթահողային ոռոգման համար լայնորեն կիրառվում են պլաստմասսայից խողովակները։ Դրանք բաղկացած են երկու կամ երեք մեկուսացված կանալներից։ Խողովակի առավել խոշոր կանալը մատակարարում է օդ կամ գազ։ Վերին կանալով մատուցվում է ջուր կամ պարարտանյութի լուծույթ։ Երկու կանալներում էլ նախատեսված են անցքեր՝ ենթահողային ոռոգման և հողի աերացիայի (օդով հարստացնելու) համար։ Խողովակի վերևից անց է կացված էլեկտրական կաբել՝ ցածր լարվածության հոսանքի համար։ Այսպիսով միաժամանակ կատարվում է հողի ոռոգում, պարարտացում և աերացիա։ Պարարտանյութի յուրացման ինտենսիֆիկացիայի համար անհրաժեշտ է ցածր լարվածության հոսանք։

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ

«ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը», *Հայպետհրատ, 1962 թ., 612 էջ, տիրաժ՝ 20000, գինը՝ 1 ռ.։*

ԳԱԲՈՒԶՅԱՆ Վ. Մ.— «Անգլիայի էկոնոմիկան տնտեսության համաշխարհային կապիտալիստական սիստեմում *(երկրորդ համաշխարհային պատերազմից հետո)»։ Երևանի Պետական համալսարանի հրատարակչություն, 1962 թ., տիրաժ՝ 1000, 210 էջ, գինը՝ 67 կոպ.։*

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Վ. Ա.— «Ավարայրի ճակատամարտը և հայ ազատագրական պատերազմները պարսկական տիրապետության դեմ V դարում»։ *Հայպետուսմանկհրատ, 1962 թ., տիրաժ՝ 10000, 62 էջ, գինը՝ 9 կոպ.։*

ՀՈՎՍԵՓՅԱՆ Ա. Մ.— «Արտադրության և աշխատանքի կազմակերպումը մեքենաշինության մեջ»։ *Հայպետհրատ, 1962 թ., տիրաժ՝ 1000, 125 էջ, գինը՝ 13 կոպ.։*

ՄԻՆԱՍՅԱՆ Ա. Մ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ. Ե.— «Մեքենաշինական արտադրության ավտոմատացման տնտեսական հարցերը Հայաստանում»։ *Հայպետհրատ, 1962 թ., տիրաժ՝ 1000, 245 էջ, գինը՝ 69 կոպ.։*

«Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի ներարտադրական ռեզերվները»։ *Հայկական ՍՍՌ ԳԱ հրատարակչություն, 1962 թ., տիրաժ՝ 1000, 118 էջ, գինը՝ 11 կոպ.։*

ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ.— «Մի էջ Հայաստանի բանվորական շարժումների պատմությունից (1896—1900 թթ)։ *Հայկական ՍՍՌ ԳԱ հրատարակչություն, 1961 թ., տիրաժ՝ 1500, 117 էջ, գինը՝ 9 կոպ.։*

ԱՃԱՌՅԱՆ ՀՐ.— «Հայոց անձնանունների բառարան» *հատոր Ե։ Երևանի Պետական համալսարանի հրատարակչություն, 1962 թ., տիրաժ՝ 3000, 382 էջ, գինը՝ 1 ռ. 38 կոպ.։*

ՄՈՎՍԻՍՅԱՆ Ս.— «Հայկական ՍՍՌ էկոնոմիկայի զարգացման հեռանկարները ՍՄԿՊ XXII համագումարի որոշումների լույսի տակ»։ *Հայկական ՍՍՌ Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության հրատարակություն, 1962 թ., տիրաժ՝ 3000, 52 էջ, գինը՝ 10 կոպ.։*

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Տ.— «Վրաց գրական միտքը Հայաստանի և հայերի մասին»։ *Հայպետհրատ, 1962 թ., տիրաժ՝ 5000, 163 էջ, գինը՝ 32 կոպ.։*

ԱՎԴԵԵՆԿՈ Ա.— «Տիսայի վրա», *մատենաշար արկածային գրադարան, գիրք 14, թարգմանություն ռուսերենից։ Հայպետհրատ, 683 էջ, տիրաժ՝ 30000, գինը 1 ռ. 17 կոպ.։*

ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Կ.— «Կեցցեն հաղթվածները», *պատմվածքներ։ Հայպետհրատ, 211 էջ, տիրաժ՝ 500, գինը՝ 43 կոպ.։*

ՂԱԶԱՐՅԱՆ Ա.— «Հայոց գրական լեզվի պատմություն», *հատոր Ա։ Հայպետհրատ, 529 էջ, տիրաժ՝ 5000, գինը՝ 1 ռ. 15 կոպ.։*

ԱՆԳԵԼՈՎ Դ.— «Երկիրը կործանման եզրին», *վեպ, թարգմանություն բուլղարերենից։ Հայպետհրատ, տիրաժ՝ 10000, 261 էջ, գինը՝ 45 կոպ.։*

ԱՂԱՅԱՆ Ծ.— «Հայ և ադրբեջանական ժողովուրդների դարավոր բարեկամությունը»։ *Հայպետհրատ, տիրաժ՝ 3000, 468 էջ, գինը՝ 77 կոպ.։*

ԳԱԼՈՅԱՆ Գ.— «Անդրկովկասում սոցիալիստական ռևոլյուցիայի ու կոմունիստական շինարարության պատմության կեղծարարության դեմ»։ *Հայպետհրատ, տիրաժ՝ 3000, 405 էջ, գինը՝ 58 կոպ.։*

«Թուրքական աղբյուրները Հայաստանի, հայերի և Անդրկովկասի մյուս ժողովուրդների մասին», *հատոր Ա, թարգմանություն թուրքերեն բնագրից։ Հայկական ՍՍՌ ԳԱ հրատարակչություն, տիրաժ՝ 3000, 402 էջ ,գինը՝ 1 ռ. 50 կոպ.։*

ՂԱԶԱՐՅԱՆ Ս.— «Արվեստը և կրոնը»։ *Հայպետհրատ տիրաժ՝ 2000, 185 էջ, գինը՝ 19 կոպ.։*